

Shovrean, M.
G. Khalateantsi Hayots..

Գ. ԽԱԼԱԹԵԱՆՑԻ

# "ՀԱՅՈՑ ԱՐՇԱԿՈՒՆԻՔ

## Մ. ԽՈՐԵՆԱՑՈՒ ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ՄԷՋ"

ՄԱՏԵՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ

Մ. ՇՈՎՐԵԱՆԻ







ՎԵՆԵՏԻԿ — Ս. ՂԱԶԱՐ

1904

# ՄԱՏԵՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ

Լազարեան ճեմարանի պրօֆ. Գր. Խալաթեանց նախերգանք լոյս ընծայեց իւր մի ստուար երկասիրութիւնը in 8°. բաղկացած 556 էջերից, որի խորագիրն է՝ «Հայոց Արշակունիք Մ. Խորենացու Հայոց Պատմութեան մէջ: փորձ աղբիւրների քննադատութեան: Մասն I – Հետազօտութիւններ. մ. II – Նիւթեր». Մոսկվա 1903: Հեղինակի յառաջաբանը և նիւթերի ցանկը գրաւում են 12 էջ. բուն հետազօտութիւնները – 397 էջ. նիւթերը 143 էջ:

Երեք էջ յառաջաբանում յարգելի պրօֆեսորը այն միտքն է յայտնում, թէ Խորենացու Հայոց Պատմութեան նուիրեալ քննութիւնները մինչև այժմ ընդգրկում էին միայն առանձին հատուածներ, ուրոյն գլուխներ, առանց շօշափելու նորա պատմական ծուծը, ամբողջութիւնը: Ուստի հեղինակի կէտ նպատակն է այն երկում ուսումնասիրել Խորենացու Պատմութիւնը դորա բոլոր ծաւալով, հետևել նորան քայլ առ քայլ, գտնել, որչափ հնար է, նորա բուն աղբիւրները, բացատրել նորա վարմունքը դոցա վերաբերութեամբ: Այս եղանակով, թւում է նորան, կարելի է ամբողջութեամբ ըմբռնել հայ պատմագրի երկը և հասնել հաստատուն և վճռողական եզրակացութիւններին: Այնուհետև Պ. Գր. Խալաթեանցը կրկնելով իւր առաջին երկում (հրատ. 1896 թ.) յիշուած հինգ եզրակացութիւնները շարունակում է այսպէս. «Ներկայ հետազօտութիւնը նուիրուած է Խորենացու երկի երկրորդ կամ պատմական մասին, վերաբերեալ Հայոց Արշակունեաց. և դա ընդգրկում է Հայոց Պատմութեան մասամբ Երկրորդ և ամբողջովին Երրորդ գիրքը:

Տակաւին Գուտշմիդի և մանաւանդ կառիերի յօդուածների շնորհիւ խախտուեցաւ աւանդական հայեացքը ժամանակի խնդրի մասին, թէ երբ էր ապրում Մ. Խորենացին։ Իմ երկրորդ հետազօտութեանս մէջն եւս նպատակս է, ոչ միայն հաստատել նոր փաստերով յիշեալ քննադատների եզրակացութիւնները, այլ և մանրամասն ուսումնասիրութեամբ ու ուշիմ ստուգութեամբ բացատրել մի կողմից, ըստ չափու կարողութեան, մեր հեղինակի բոլոր աղբիւրները, միւսից, որ, դուցէ, աւելի էական խնդիր է, — Խորենացու երկի արժանահաւատութիւնը, իբրև պատմական յիշատակարանի։ Այս խնդրի ճշգրիտ լուծումից կախուած կ'լինի մեծաւ մասամբ հին Հայոց պատմութեան գիտական մշակումն»։

Թողնենք մի կողմ ցանկը և անցնենք բուն հետազօտութեան, որ ամփոփուած են 17 գլուխների մէջ։ Ապա հետեւում են եզրակացութիւնները։ Առաջին գլխի խորագիրն է «Արշակունեաց մասին», (էջ 1–16)։ Այստեղ աւանդվում է Արշակունեաց երեւելի պատմական ասպարիզում, նոցա պատերազմները և աշխարհակալութիւնները մինչև մեր Մեծն Տիգրանը 94–55[1] և նորա որդի Արտաւազդն՝ ըստ Գուտշմիդի (Geschichte Irans und seiner Nachbarländer von Alexander dem grossen bis zum Untergang der Arsakiden, Fulingen, 1888), Պղուտարքոսի, XXVI, 6[2], և Ստրաբոնի (հատ. Բ) XI, ԺԴ, 5 և 15, (հատ. Գ) XVI, Ա, 19։

Արտաւազդ զոհ է լինում Անտոնիոսի լարած որոգայթներին։ Ապա Հռոմի գերիշխանութեան ներքոյ Հայաստանում կառավարում են ութը թագաւորներ՝ մեծաւ մասամբ Տիգրանի ցեղից — մինչև 16 տարին Քրիստոսից յետոյ, երբ Առաջաւոր Ասիոյ տիրապետութեան համար մղած պատերազմներում Պարթեւացիք մի առ ժամանակ յաղթում են Հռոմայեցւոց։

1. Պ. Գր. Խալաթեանցի մօտ — ԽԶ, 4. որ թիւրիմացութիւն է կամ տպագրական սխալ. ծան. Մ. Շ.։
2. Ըստ Գարդթաուզենի–Տիգրան 86–36. Մ. Շ.։

սիացւոց աշխարհն վկանդեաց, համարին քսան և չորք թագաւորք։ Գ — 329 — «Պիւռոս ընկենու զնա՝ որքայ Եպիրացւոց՝ քանդերորդ երրորդ յԱլէքսանդրեայ որդւոյ Թեռայ. որպէս թէ նմա խակ էր անի իշխանութիւնն յետ Փիլիպեայ ազգին՝ վասն Ողոմպեայ մօր Աղէքսանդրի»։ Դ — 344. Ե — 226 մ. II։ Ե — 345։ Զ — 349 և 350 և այլն։ Աւելորդ է մի առ մի կրկնել բոլոր քաղուածքները, որոնց անմիջապէս նոյն առթիւ հետեւում են երեք ուրիշը Անանունից։ (Տես գրքիս 8, 9, 11 էջերը)։ Ապացոյցներից մինն, թէ Խորենացին ծանօթ էր Անանունին, խորհրդածում է պրօֆեսօրը, այն է, որ նա յիշում է Պարթեւաց ապստամբութեան մասին «յետ վաթսուն[1] ամի մահուանն Աղեքսանդրի»։ Բայց այն է, շարունակում է նա, որ Անտիոքոս Թէոսի 11-դ. (մետասաներորդ) տարին, երբ ըստ Մովսիսի, ապստամբութեան Արշակը, համապատասխանում է երրորդ տարուն 132-րորդ ողիմպիադի կամ 1766-րորդ տարուն Աբրահամից, ըստ Եւսեբիոսի, ուր այդ տեղում, արդարեւ գրուած է «Պարթեւք ի Մակեդոնացւոց ապստամբեցին և զառաջինն թագաւորեաց Արշակ. ուստի և Արշակունիք»։ (Chronicon, II. pp. 130-131 — Παρυσι τῆς Μακεδόνων ἀρχῆς ἀπέστησαν καὶ πρώτος βασιλεύει Αρσάκης, ἀφ' οὗ οἱ Πάρτων βασιλεῖς Αρσακιδαι ἐχρημάτισάν).

Իսկ Աղեքսանդրոսը մեռաւ, ըստ Եւսեբիոսի, առաջին տարին 144-րորդ Ողիմպիադի կամ 1662 թ. Աբրահամից. ուրեմն Արշակ ապստամբութեան ոչ թէ վաթսուն, այլ եօթանասուն տարի Աղեքսանդրոսի մահից յետոյ[2]։ Այսպէս մեր պատմիչը կրկնում է նոյն անճշդութիւնը, ինչ որ նորա աղբիւր Անանունի մօտն է։

1. Անանունը ասում է՝ «Ծառայեցին Պարթեւք Մակեդոնացւոց ամս ԿԱ», որ մի տարով տարբեր է Խորենացուց։ Մ. Շ։

2. Գարագաշեանի մօտ (տե՛ս Մասն առաջին. էջ 221). կարդում ենք՝ գիտելի է, զի ի մէջ վաթսներորդ ամի մահուան Աղեքսանդրի, այն է 263 նախ քան զՔր., և ի մէջ մետասաներորդ ամի թագաւորութեան Անտիոքայ Թէոսի, այն է 250՝ իբր երեքտասան ամաց միջոց կայ» և այլն . . . Մ. Շ։

(Լիմնեի թարգմանութեամբ) Խորենացու II. գր. երրորդ գլուխը, I. գր. VIII. գլուխը. և մնացածը IX-րդի վերջը։
II. գր. գլ. IV, V — մասամբ, VI, VII. մասամբ, VIII — մասամբ, և IX։ (էջ 17–21)։ Դրանցից առաջին գրքի VIII գլուխը, և երկրորդի — III և V գլուխները ընդարձակում են Անանունի կարճ պատմութեամբ Փոքր Արշակի, որդւոյ Մեծին Արշակի մասին, որ հօրից կարգուած էր Հայաստանի վրայ. և նա իւր կողմից իւր եղբօր Վաղարշակին կարգում է թագաւոր Հայոց վրայ։

Այստեղ հետեւում են Անանունից երեք քաղուածքներ Պրօֆ. Ք. Պատկանեանի ռուսերէն թարգմանութեամբ։ (էջ 22–23)։ Խորենացին, ըստ պ. Խալաթեանցի, առնելով Անանունից պատմութեան կմախքը, զարդարում է այն մանրամասնութիւններով. Նա առաջ է քաշում Վաղարշակին, իբրեւ Հայոց Արշակունեաց հիմնադրին և մի կողմ է թողնում Փոքր Արշակին, որին յատկապէս տալիս է այդ պատիւը Անանունը։ Պրոկոպիոսը հաստատում է Անանունի վկայութիւնը, յենլով մի «Հայոց պատմութեան վրայ»։ Հետեւում է 12 տողից բաղկացած մի քաղուածք Պրոկոպիոսից[1] (De Aedif, III, 1)։ Բայց թէ ինչ «Հայոց Պատմութեան» վրայ է ակնարկում Կեսարացի պատմիչը, դժուար է ասել։ Ոմանք կարծում են, թէ դա Փ. Բիւզանդի մեզ չհասած երեք դպրութիւններն են, կամ յայտնի չորս դպրութիւնները, ուստի բառացի կրկնում է Պրոկոպիոսը մի քանի պատմական դէպքեր։ Յայտնի է նոյնպէս, որ Ղ. Փարպեցին Բիւզանդի պատմական երկը նոյնպէս անուանում է Հայոց Պատմութիւն։ Յամենայն դէպս մեզ հետաքրքրող պատմութիւնը Առաջին Արշակի մասին չկայ Փաւստոսի մօտ, եթէ չհամարենք Պապի որդի Արշակին, որի օրերում 384 թ. Հայաստանը՝ բաժանվեցաւ Յունաց և Պարսից մէջ։ Բացի դորանից, Պրոկոպիոսը և նորա աղբիւրը սխալ-

1. Ափսոս պ. Խալաթեանցը չէ տալիս յունարէն քաղուածքի ռուսերէն թարգմանութիւն ընթերցողների թեթեւութեան համար։ Մ. Տ։

ւում են, կարծելով թէ Հայոց Արք-
թիւնը տեւեց 500 տարի. այդ ժամ
է գանէ կիսել։ 25 և 26 էջերում
խօսում է Նինուէի մասին. ապա ա-
ռնացին 3, 4, 5 գլուխները կազմել է
նախնեաց, որից այս սովթիւ մէջ է բեր
քաղուածքները։

Դարձեալ՝ Բաղդասար և Բաղդասարեան այն մասին անգլեկութիւնները Խորենացին քաղում է Անանունից։ Էջ 28 պ. Խաչաթեանը լիրաւացի նկատում է. «տար-օրինակ է տեսնել Խորենացու մէջ, որ այն երկիրները, որոց առաջ տիրել էր Մեծն Արշակը և վեհանձնու-թեամբ տուել իւր եղբայր Վաղարշակին, այսինքն Փռիւգիա, Կապադովկիա, Պոնտոս, Ղալիկա, վերջինս նորից պիտի նուաճէր[1]։ Էլ չենք ասում, որ դժուար է ենթադրել Պարթեւաց կողմից որ և իցէ նուաճում-ներ Փոքր Ասիայում այդ ժամանակ, որի մասին ոչինչ չեն յիշում դասական հեղինակները, ինչպէս Հռով-մայեցիք եւն, որոնց հովանաւորութեան ներքոյ էին Փոքր Ասիայի տէրութիւնները 189 տարուց դենի, ան-պատիժ չէին թողլ տալ այդպիսի բաներ[2]։ Վերջապէս

1. Գարագաշեանը գրում է՝ զարմանալի է արդա-րեւ, զի Խորենացին, յետ ասելոյ թէ Արշակ տիրեց «երրորդ մասին աշխարհիս», այն է բոլոր Ասիոյ՝ տակաւին կանգուն կ'ենթադրէ Փոքուն Ասիոյ տէրու-թիւնները և զՄակեդոնացիս, այսինքն Ասորւոց կամ Սելեւկեանց տէրութիւնը. քանզի ասէ թէ «Պոնտոս, Մաժաք ոչ գիտէին զամ պատերազմին Արշակայ .... նորէն նոյն Վաղարշակայ կու տայ ... նուաճել Փոքուն Ասիոյ տէրութիւնները ծանր պատերազմաւ (տե՛ս քն. Պատ. Հայ. մասն Ա. էջ 236–7. ծան.)։ Մ. Տ։

2. Պատերազմ Փոքուն Ասիոյ տէրութեանց դէմ և նուաճումն յառաջ քան զՄիհրդատ մեծ՝ յիշուած չէ ուրեք ի ժամանակակից պատմութեան, և ոչ Հռոմայե-ցիք լուռ կը կենային որ և իցէ յարձակման դէմ ի վերայ Թագաւորութեանց Փոքուն Ասիոյ, որոց չէզո-քութիւնն կարեւոր էր յապահովութիւն նոր ստացուա-ծոց նոցա ի Միջերկրականին և յԱսիա։ Գարագա-շեան. մասն Ա. էջ 237–238։ Մ. Տ։

…վ է այդ անյայտ Մորփիւղիկէս[1], որ չորս յիշեալ երկիրների զօրքի գլուխ անցած պատերազմ է ելնում Վաղարշակի դէմ։ Շատ ուսումնականներ գլուխ էին կոտրում այս անունը բացատրելու համար (Gutschmidt. Kleine Schriften, S. 319), Blau. Numisn. Zeit., 1877, Marquart)։ Ոմանք կամենում են նոյնացնել նորան Ծոփաց Միհրբարզան թագաւորի հետ, որին յիշում է Դիոդորոս Սիկիլիացին։ Պատերազմը Մորփիւղիկէսի հետ Խորենացուն Անանունն է ներշնչել, յիշելով Միջագետքում հաւաքուած հեծեալներին Արշակի դէմ (?)։ Հետաքրքիր է նկատել, շարունակում է պ. Խալաթեանցը, որ Վաղարշակին պատերազմի ժամանակ շրջապատում են, բացի Բագրատունեաց, այն նախարարական ցեղերը, որոնք շատ մօտ էին Բագրատունի իշխաններին և թագաւորներին VIII–IX դարերում, այն է՝ իշխան Գեղարքունի, իշխանք «ի Քանանացւոց», այսինքն Գնթունի, ծնունդք Շարայի և Գուշարայ — այսինքն իշխանք Շիրակայ և Գուգարաց և ազգականք Բագրատունեաց — «Սիսական և Կադմեան» — այսինքն Սիւնեաց և Գարդմանեաց։ Այստեղ մենք ունենք նոր օրինակ յիշատակութիւն Բագրատունեաց ազգի յետին յարաբերութեանց՝ վերագրուած Արշակունեաց հարստութեան հիմնադրին։

Գալով «Կորոնիա» ամրոցին, կարելի է նկատել, որ Խորենացին դորա մասին խօսում է Պրոկոպիոսի դարձուածներով[2]։

«Հինգերորդ գլուխը, ասում է պ. պրոֆեսորը, ամբողջութեամբ պատկանում է Խորենացու գրչին և կարող է ծառայել իբրև կաղապար նորա ճարտասանական ոճի[3]»։

1. Գարագաշեանն եւս նոյն հարցն է դնում, ո՞վ էր այն Մորփիւղիկէս. ոմանք զՄորփիւղիկէս համարին լինել Միհրբարզան, յիշեալն ի Դիոդորոսէ Սիկիլիացւոյ իբրև թագաւոր Ծոփաց. (տե՛ս էջ 238)։ Մ. Շ։

2. Վաղարշակի պատերազմի նոյն մանրամասնութիւնների վրայ ուշադրութիւն է դարձրել նաև Գարագաշեանը. տես էջ 206, մ. Ա։ Մ. Շ։

3. Այս և հետագայ գլուխները հերքուած են արդէն Գարագաշեանէ, իբրև ոչ պատմականք։ Մ. Շ։

Խորենացին օգտուել է նաեւ Հայոց Արշակունեաց ցուցակից, որ բերուած է Անանունի մօտ, փոփոխելով այն ըստ իւր քմաց. այդ ցուցակից (24-ից 21) նա առանձնացրել է Արտաւանից եւ Արշաւրին, բայց իւր կողմից մտցրել է Արգաւորու որդի՝ Անանունին. բացի դրանից Երուանդին տեղափոխել է առաջին դարն Քրիստոսի:

Առանձին ուշադրութեան արժանի է վերջերորդ գլուխը, ուր հեղինակը (Խորենացին) հաղորդում է բուլղարաց գաղթականութեան մասին Հայաստանում երկրորդ դարում նախ քան զՔրիստոս: Բուլղարաց մասին առաջին անգամ յիշում է V դարու վերջում Եննոդիոս եպիսկոպոսը մօտ իբր թափառական ցեղերի Դանուբ գետի ափերին: Դոքա բազմաթիւ թիւրք ցեղեր էին, որ ապրում էին (Ռուսիոյ) Վոլգա գետի միջին հոսանքով (Թէոփանէսեայ ἡ παλαιὰ βουλγαρία ἡ Μεγάλη): 502 Թ. նոցա հրոսակները երեւեցան միջեւ անգամ Կ. Պօլսոյ մօտ. 538 Թ. նոքա մեծ պարտութիւն կրեցին Յոյներից եւ գերիներին Յուստինիանոս կայսրը գաղթեցրեց Լազիկայում եւ Հայաստանում (Lebeau, hist. du Bas-Empire, տ. VIII. p. 415). 680 Թ. Բուլղարքը Բուլղարիայում հզօր թագաւորութիւն կանգնեցին: Նոյն Բուլղարաց մասին յիշում է եւ Անանիա Շիրակացին իւր Աշխարհագրութեան մէջ, ուստի քաղած պիտի լինի եւ Խորենացին:

VII եւ VIII գլուխների մասին պ. Խալաթեանցը չէ խօսում, վասն զի դոքա արդէն հետազօտուած են Գարագաշեանի, IX գլխում Արշակի եւ Բագրատունեաց մասին զրոյցը ոչինչ պատմական նշանակութիւն չունի [1]:

Գլուխ Գ. Արտաշէս Ա. էջ 36–55.

Այս գլուխը սկսվում է տասն տող յառաջաբանով կամ նկատողութեամբ, որին անմիջապէս հետեւում են Մ. Էմինի թարգմանութեամբ՝ Խորենացու Բ գրքի այս գլուխները՝ Ժ, ԺԱ, ԺԲ, ԺԳ. (էջ 36–40 մէջ բերուած):

1. Նաեւ ըստ Գարագաշեանի: Մ. Տ:

Սպասելով Մար-Աբասը, գրում է պ. Խալաթեանցը, խորենացին Արտաշէս Առաջինի պատմութեան համար մինչեւ Աբգարը դիմում է Ափրիկանոսի Ե—դ գրքին։ Վերջինս գրել է մի ժամանակագրութիւն հինգ գիրք, սկսեալ աշխարհիս ստեղծագործութիւնից մինչեւ երրորդ տարին Հեղիոգաբաղի (221 Թ)․ բայց դա ամբողջութեամբ մեր ձեռքը չէ հասած․ նորանից մնացել են միայն քանի մի քաղուածքներ Եւսեբիոսի եւ միւս ժամանակագիրների մօտ մինչեւ Միքայէլ Ասորին (ԺԲ—դ), որ, ի միջի այլ աղբիւրների, օգտուել է նաեւ, ինչպէս այժմ յայտնի է, եւ Մար Աբասից (Կառիէր․ Հանդ․ Ամս․ Յուն․ 1897 Թ)։

Այստեղ նախ եւ յառաջ պէտք է նկատել, որ, հակառակ խորենացուն, Ափրիկանոսի մասին չէր կարող վկայել Յովսէփ Փլաբիոսը, որ նորանից 200 տարի առաջ էր ապրում։ Բացի Ափրիկանոսից՝ խորենացին ակնարկում է նաեւ Հիպողիտոսի վրայ։ Եթէ դա յայտնի հռովմայեցի եպիսկոպոսն է (+ 235–236 Թ), նա, արդարեւ, Ափրիկանոսի ժամանակակիցն է․ եւ կարող էր օգտուել նորա ժամանակագրութիւնից․ սակայն գոյան վերագրեալ երկասիրութիւնների մէջ ակնարկներ չկան ոչ Հայոց, ոչ էլ Արտաշիսի մասին։ Նոյն բանի մասին չկայ ոչինչ նաեւ իմ նոր գտած Հիպողիտոսի մի ժամանակագրական երկի հայերէն թարգմանութեան մէջ։ Կասկածելի է թւում եւ մի այլ վկայութիւն, որ խորենացին վերագրում է Եւսեբիոսին (եկեղ․ պատ․ Ա, 13), իբրեւ թէ Ափրիկանոսը իւր Քրոնիկոնի Ե գրքում աւանդում էր, քաղելով Եդեսիոյ դիւանից, Հայոց առաջին թագաւորների գործոց մասին մինչեւ Աբգար եւ Աբգարից յետոյ մինչեւ Երուանդ[1] (sic!)։

1․ Վերոյիշեալ երեք Պարագայից առթիւ Գարագաշեանը ասում է՝ ա․ «Ափրիկանոս գրեց յԱդամայ մինչեւ ցՀեղիոգաբաղոս, այսինքն մինչեւ 217, համառօտ ժամանակագրութիւն մը, որոյ հատակոտորք միայն կան առ Եւսեբեայ եւ առ այլս ոմանս ի հարց եկեղեցւոյ»։ … բ․ «Ինչպէս կրնայ վկայել Յովսեպոս Ափրիկանոսի, որ իբր երկերիւր ամօք յետոյ (Ա-

Եդեսիայ դիւանի վրայ պ. Խալաթեանցը կանգ չէ առնում, քանի որ դա էլ Ներսէսի նման կասկածելի է. բայց Խորենացուն անպատճառ գրքեր հարկաւոր էին, ինչպէս և մեհենական մատեաններ. ոչ թէ նոցանից որ և իցէ քաղուածքներ անելու համար, այլ իւր մտացածին պատմութիւնները պաշտպանելու համար: Պ. Խալաթեանցը, հետեւելով Գուտշմիդին, Կարագաշեանին և Գելցերին, հակառակ Բաումգարտների, կարծում է, թէ Խորենացին չէր ճանաչում անմիջապէս Ափրիկանոսին: Վերջապէս եթէ Աբգարի և ուրիշ թագաւորների գործոց մասին Խորենացին գիտէր Ափրիկանոսից և Հիպպոլիտոսից, ինչո՞ւ նոցանից քաղուածքներ չէ բերում, այլ դիմում է ասկաւասարս Պոլիկրատեսին, Եւագարոսին, Կամադրոսին և Փղեգոնտիոսին, որոնք այդքան կարևոր կերպով պատուապել են Հերոդոտի յայտնի պատմութիւնը Կիւրոսի և Կրիւսոսի մասին: Հետեւում են Գուտշմիդի կարծիքը այս հեղինակների մասին[1]: Բայց ինչն է առիթ տուել Խորենացուն Հայոց աշխարհակալութիւնները փոքր Ասիայում և Եգիպտոսում կապել Աբգարի անուան հետ: Պատասխան Անանիա Շիրակացու Աշխարհագրութիւնը, որ Եգիպտոսի նկարագրութեան մէջ յիշում է 44 կղզիների թւում Աստալանս կղզեակը . . . « ասում են, այնտեղ մեռել է Աբգարեան թագաւորը »: Այդ կցկտուր և մութ աւանդութիւնը Հայոց մի Աբգարեան թագաւորի մասին չէ գոհացնում է Խորենացուն և նա միջոց է յղանում

de lui et le guérît. Le Christ répondit qu'il lui fallait faire son devoir sur la terre des Juifs, parce qu'ils sont ses enfants. L'envoyé d'Abgar était peintre; il prit le portrait de Christ; après son crucifiement, Thaddée, l'un des 72 (disciples), vint (á Édesse) et guérit Abgar. (Տե՛ս նոյն J. As. էջ 540): Դա է Խորենացու Բ գրքի 31, 32 և 33 գլուխների աղբիւրը: Ուրեմն, մեր ծերունի պատմագիրը այնքան էլ ստախօս չէ, որքան հաչակում են նորան խիստ քննադատները:

Մ. Շ:

1. Տե՛ս նաև Կարագաշեան. էջ 263. մ. Ա:

մշակել այն, այսինքն բնորոշել այս Թագաւորի անձնաւորութիւնը, նորա ժամանակը, աշխարհակալութիւնները, օգտուելով Յով. Փլաւիոսի հետեւեալ խօսքերից. «Քսերքսէսի մահից յետոյ, (Պարսից) թագաւորութիւնը անցաւ նորա որդու Կիւրոսին, որին Յոյնք կոչում են Արտաքսերքսէս (Արտաշէս)» (A. I. ԺԱ, 6, 1)։ Դորանից յետոյ Պ. Խալաթեանցը որոշում է Խորենացու բուն աղբիւրները, որոնք են՝ Փաւստոս Բիւզանդ, Կղեմէս Աղեքսանդրացի, Ագաթանգեղոս, Ա. Շիրակացի, Եւագարոս (Աղեքսանդրի և Դարեհի պատերազմի նկարագիրը), գուցէ Գրիգոր Նիւսացի, Մալալայի ժամանակագրութիւնը, Աստուածաշնչի — Սիրաքայ գիրքը, գուցէ Մակաբայեցւոց Բ. գր., Եպիփանոս։ Ապա խօսում է Հիպոլիտի հայերէն բնագրի մասին,՝ որ պ. Խալաթեանցը գտել է Վիեննայի Մխիթարեանց մատենադարանում, որի խորագիրն է, ըստ Վիեննականի, «Մովսիսի Խորենացւոյ և Անդրէասայ, և ըստ էջմիածնականի — Մ. Խորենացւոյ, Անդրէասայ և Անանիայ Շիրակացւոյ։ Նկարագրելով այդ գըրչագիրները յարգելի պրօֆեսորը երկրորդ անգամ խոստանում է լոյս ածել այն ի գիտութիւն բանասիրաց։

## ԳԼՈՒԽ Դ

### Տիգրան Բ եւ Արտաւազդ Ա

(էջ 56–68)։

Արտաշիսի որդի Տիգրան, որ իրօք մեծ աշխարհակալ էր և որի շնորհիւ Հայաստանը դարձաւ հզօրագոյն պետութիւն, Խորենացի պատմութեան մէջ (գլ. 14–22) շատ համեստ դեր է կատարում. (Աղբիւրն է Յ. Փլաւիոս)։ Հետեւում են քաղուածքներ Խորենացու Բ. գրքի հետեւեալ գլուխներից՝ ԺԴ, ԺԵ, ԺԶ, ԺԷ, ԺԸ, ԺԹ, Ի, ԻԱ, ԻԲ, ԻԳ (էջ 56–61)։ Տիգրանի առաջին գործը լինում է մեհեաններ շինել և նոցա մէջ կանգնել հօր բերած չաստուածների պատկերները, որոնք

նոյն են, ինչ որ Ագաթանգեղոսի մօտն են. ապա ուրեմն աղբիւրն այս հեղինակն է: Տեսութիւն Տիգրանի գործունէութեան: Արեւմտեան պատմաբանները, ինչպէս յայտնի է, շատ հետաքրքիր տեղեկութիւններ են հաղորդում Տիգրանի անձնաւորութեան, նորա կնոջ Կղէոպատրայի, Պոնտոսի թագաւորի, Միհրդատի դըստեր, նոցա որդւոց և մանաւանդ թշուառ արքայորդի փոքր Տիգրանի մասին, որ հօր վտանգաւոր մրցակիցն էր, թագաւորի եղբօր Գուրասի և այլոց մասին (Th. Reinach, Mithridate Eupator, Paris, 1890): Ոչինչ նմանը չկայ Մ. Խորենացու մօտ, բացի այն տեղեկութիւնից, թէ ոչ թէ Տիգրանն էր փեսայ Միհրդատի, այլ ընդհակառակն, վերջինս ամուսնացած էր առաջնի քրոջ հետ: Միհրդատի մահը փառնակի որդու ձեռքից է, ինչպէս աւանդում է Յովսէպոսը, ոչ թէ Պոնտացի Պիղատոսի հօրից, ըստ Խորենացու: Պատանի Միհրդատի մասին պատմուածը յերիւրուած Պերգամ Միհրդատի աւանդութիւններից եւս և Կապադովկիացւոց Արքեղայոսի, որ նորոգելով Կապադովկիոյ մայրաքաղաք Մաժակը, կոչեց այն Կեսարիա ի պատիւ Տիբերիոս կայսեր. այն ինչ այդ իրողութիւնը մեր պատմիչը վերագրում է պատանի Միհրդատին: Նոյնը կարելի է նկատել Հրէից դշխոյ Աղեքսանդրիայի, Աղեքսանդրի կնոջ մասին, որի խնդիրքով Տիգրանը ազատեց Պտղոմայիդը պաշարումից: Նորան Խորենացին, յայտնի չէ ինչո՞ւ անուանում է Մեսաղինայ, շփոթելով Հրէից մի այլ թագուհի Աղեքսանդրայի՝ Արիստաբուղոսի կնոջ հետ, որին Հրեայք, ըստ վկայութեան Յովսէպոսի, կոչում էին Սաղոմէ:

Դարձեալ՝ Տիգրանի պատերազմների պատմութեան միջոցին, Խորենացու աւանդութեամբ, մենք տեսնում ենք մի շարք Հռովմայեցւոց զօրավարներ, ուղարկուած Արեւելք՝ Պոնտոսի, Հայաստանի, Պարթեւաց դէմ կռուելու և Ասորոց ու Հրէից գործերը կարգի բերելու համար (գլ. 15, 16, 17): Դոքա բոլորը յիշւում են Յովսէպոսի մօտ, բայց այլ դրութեան և պայմանների մէջ, քան հայ պատմչի մօտին: Այսպէս, Գաբինոս և Սկաւրոս Պոմպէոսից (որ այն ժամանակ զբաղուած էր Տիգրանի դէմ պատերազմներով) ուղար-

կուած գոլով Հռէից գործերը կարգաւորելու, կաշառուած մեծքանակ գումարներով, երկու մրցակից եղբարց՝ Հիւրկանոսի և Արիստաբուղոսի պայքարում, բանեցին կրտսերի կողմը։ Բայց Խորենացին Գաբինոսի կաշառակերութիւնը կապում է Տիգրանի հետ. և՝ «գաղտնի հաշտութիւն խօսեցեալ ընդ Տիգրանայ, տայ դքեռորդին նորա զպատանին Միհրդատ», թէև Գաբինոսը արձակել էր գերութիւնից Պարսից թագաւոր Որոդի եղբօր՝ Միհրդատին։

Ցայտնի է նաև, որ մօտաւորապէս 40 տարի նախ քան զՔրիստոս Անտոնիոս զօրք ուղարկեց Արեւելք առաջնորդութեամբ Բենդիդիոսի Բասսոսի, որին յանձնուած էր Ասիոյ և Ասորոց սպարապետութիւնը։ Այդ միջոցին Ասորոց և փոքր Ասիոյ մեծագոյն մասանց տիրում էին Պարթեւք և հանրապետական կայսրին Ղաբիանոս, որ իբր փախստական ապրելով Պարսից թագաւոր դրանը, Պարթեւաց հետ գործում էր Հռոմի դէմ։ Բենդիդիոսը ոչ միայն հալածեց Ղաբիանոսին փոքր Ասիայից բանեց և սպանեց. այլ և Ասորիքում չարաչար յաղթեց Պարթեւաց, որոնք օգնութեան էին եկել իւրեանց դաշնակցին և արտաքսեց Եփրատի միւս կողմը։ Դորա մասին յիշում է նաև Յովսէպոսը (տես և Mommsen, Röm. Gesch III. Kap. 4)։ Խորենացին վերոյիշեալ պարագաների մասին ոչինչ չէ ասում, միայն հարեւանցի յիշում է՝ «որոյ (Բենդիդեայ) հանեալ յԱսորիս, փախստական առնէ զզօրս Հայոց»։

Բաց ի դորանից հայ պատմչի մօտ կան ակներեւ անաքրոնիզմներ. օր. Կրասսոս, Անտոնինոս, Բենդիդիոս, Սոսիոս գալիս են Արեւելք Տիգրանի կենդանութեան ժամանակ, որ միանգամայն անհնարին է։ Հայոց թագաւորը մեռաւ ոչ ուշ քան 55 թ. վասն զի հետեւեալ 54 տարին, երբ Կրասսոսը պարտութիւն կրեց, Հայաստանում, Պլուտարքոսի վկայութեամբ, արդէն թագաւորում էր նորա որդի Արտաւազդը[1]. Անտոնինոս, Բենդիդիոս և Սոսիոս առաջին անգամ եկան Արեւելք Կրասսոսի պարտութիւնից տասն տարի յետոյ,

1. Mommsen, III. kap. 9.

ուրեմն, ոչինչ յարաբերութիւն չէին կարող ունենալ Տիգրանի հետ։ Միւս կողմից բոլոր հռովմայեցւոց զօրավարներից, որոնք արդարեւ Տիգրանի ժամանակակիցներն էին և գործ ունէին նորա հետ, Խորենացին յիշում է միայն Պոմպէոսին, այն էլ հարեւանցի. իսկ Սուլլայի և մանաւանդ Լուկուլլոսի մասին բոլորովին լռում է։ Բացի գորանից Ցովսէպոսի Լուկուլլոսին, որի յարձակումն Հայաստանի վրայ հարկադրում է վերադառնալ հայրենի Տիգրանին, Խորենացին փոխարինում է Վայկուն աւազակով, որ իբր թէ «խռովէ զերկիրն Հայոց»։ Պարզ է, որ հայ պատմիչը խորշում է Լուկուլլոսին յիշելուց։ Պոմպէոսի և Տիգրանի յարաբերութեանց վերաբերեալ տեղեկութիւններն եւս խառն ի խուռն են։ Հռովմայեցւոց զօրավարը, հակառակ ժամանակակից պատմիչների ճիշդ աւանդութեանց, ոչ միանգամ չէ հանդիպում Հայոց թագաւորին և Խորենացին աշխատում է հեռացնել նորան Արեւելքից անմիջապէս Միհրդատի մահից յետոյ։ Բարզափրանի և Հրէից քահանայապետ Հիւրկանոսի գերութեան պատմութիւնքը Խորենացին քաղել է Ցովսէպոսից և վերագրել Տիգրանի ժամանակին, վասն զի այդ մասին մի աւանդութիւն կայ Փ. Բիւզանդի Պատմութեան էջերում. այն ինչ Մեծն Տիգրանը գորանից 15 տարի առաջ արդէն մեռած էր։

Արտաւազդին Խորենացին նկարագրում է անհամակրելի գծերով. «զիմաստութենէ և զքաջութենէ անփոյթ արարեալ, ուտելեաց և ըմպելեաց պարապեալ» և այլ խօսքերով մեր պատմիչը, կարծես, գուշակում է պատանի թագաւորի ապագայ պարտութիւնը և ամօթալի գերութիւնը։ Բայց այս իշխանը միանգամայն հակապատկերն էր այն անիմաստասէր Հայոց թագաւորների տիպարի, որոնց առթիւ գանգատում է մեր հեղինակը իւր Պատմութեան առաջին գրքի երրորդ գլխում։ Պլուտարքոսի վկայութեամբ, Արտաւազդը ստացել է գեղեցիկ այն ժամանակի համար յունական կրթութիւն և մինչեւ անգամ գիտէր գրիչ շարժել, թողնելով մի շարք գրուածքներ յունարէն լեզուաւ բանաստեղծութեան զանազան տեսակից[1]։ Ոչ պակաս

1. Պլուտարքոս, Crassus.

գերազանց էր հանդիսանում նաև իւր փառաւոր զինուորական յաղթութիւններով, և միայն շնորհիւ Անտոնիոսի դաւաճանութեան, որ աշխատում էր Պարթևաց դէմ մղած անյաջող արշաւանքի վրէժը թափել մէկի վրայ, — Հռովմայեցւոց հաւատարիմ դաշնակից Արտաւազդը գերի դարձաւ Հռովմայեցւոց զօրավարի նորա յաղթանակը զարդարելու համար Եգիպտոս մըտնելու ժամանակ. Ակցիումի ճակատամարտից յետոյ Կղէոպատրայի հրամանով գլխատուեցաւ[1]: Այսպէս էր այս թագաւորի վիճակը, որ Խորենացին գիտէր Յովսէպոսի մի քանի խօսքերից:

Անհիմն է նաև Կղէոպատրա թագուհու քէնը Արտաւազդի վերաբերութեամբ:

## ԳԼՈՒԽ Ե.

### Արշամ եւ Աբգար (էջ 69–86):

Վեց տող յառաջաբանից երեւում է, որ այս երկու «Հայոց» թագաւորներից առաջնի մասին սակաւ պիտի խօսուի, իսկ նորա որդու Աբգարի մասին — մանրամասնօրէն: Այնուհետեւ Խորենացու Բ գրքից Մ. Էմինի թարգմանութեամբ մէջ են բերուած հետեւեալ գլուխները՝ ԻԴ, ԻԵ, ԻԶ, ԻԷ, ԻԸ, ԻԹ, Լ, ԼԳ և ԼԵ. (էջ 60–74):

Հարկ է նկատել, ասում է պրօֆ. Խալաթեանցը, որ ոչ միայն Արշամ թագաւորը առեղծուածական անձն է, այլ և նորա անունը ծագում է թիւրիմացութիւնից: Խորենացին, յայտնի բան է, ունէր իւր առաջեւ Հայոց թագաւորների պատրաստի ցուցակը, ուր Աբգարի հայրը կոչւում էր Արշամ: Եւ մեր պատմիչը, հետեւելով այդ ցուցակին, Աբգարի հօր նոյնպէս կոչում է

1. Mommsen, V. kap. 9.

Արշամ, յարելով իւր կողմից «որ և Արշամ [1]»: Բանն այն է, որ Եւսեբիոս Եկեղ. Պատմութեան մէջ Եդեսիայ Թագաւորը, որ նամակագրութիւն ունէր Քրիստոսի հետ, անուանուած է Աբգար Ուհամայ. իսկ Ասորոց յիշատակարանում Եդեսացւոց դարձի մասին կամ «ի քարոզութեան Թադէոս առաքելոյ» — Աբգար Ուքամայ, որ նշանակում է «սեաւ»: Երկու գրուածոց հայերէն թարգմանութիւնները ասորերէնից. որ, հաւանական է կարծել, կատարուած են Ե—Զ դարում, սխալ ընթերցանութեան շնորհիւ արգեօք, թէ չկամենալով, որ ինքն Թագաւորը Փրկչին գրած նամակում կոչէ իրան «սեաւ» բորոտութեան պատճառով, աւանդում են այսպէս՝ «Աբգար Արջամայ» (Եկեղ. պատմ.) և «Աբգար Արշամայ» (Եդես. դարձ): Թէ դա genitivi patronimici չէ՛, երևում է այն իրողութիւնից, որ երկրորդ յիշատակարանը կոչում է Աբգարին որդի արքային Մաանու (Մանովայ): Բայց Հայոց թագաւորների ցուցակի յօրինողը երկու դէպքումն էլ տեսնում էր սեռական հոլովներ, ոչ առանց ազդեցութեան յոյն թարգմանութեանց, մանաւանդ Եւսեբիոսի Քրոնիկոնի: (Gutschmidt, Untersuch, über die Ge:chichte des Königreichs Osroene. էջ 10 և A. Carrière, La légende d'Abgar): Այս տեղից ահա գոյացաւ յատուկ անունս Արշամ, հայր Աբգարի, իսկ Խորենացու մօտ — Արշամ և Արջամ, որ Աբգարի մականունն է:

Խորենացուց չէր կարող խուսափել այն իրողութիւնը, թէ Եդեսացւոց Դարձի պատմութեան մէջ Աբգարը կոչւում է Մաանուի որդի: Կամենալով հարթել այդ հակառակութիւնը, նա իւր կողմից յարում է՝ «զսա ոմանք յԱսորւոց կոչեցին Մանովայ, ըստ յօլովից սովորութեան կրկին ունելով անուանս».. (գլ. ԻԴ.), որ բնաւ չէ ճշդւում բուն Ասորոց պատմութիւնից: (Gutschmidt, l. c.)[2]:

1. Խորենացու ԻԴ գլ. կարդում ենք՝ Թագաւորեցուցին ի վերայ ինքեանց զԱրջամ, որ և Արշամ:

Մ. Հ:

2. Բայց այժմ ճշդւում է Մար Աբասի Նորագիւտ

Արշամի առեղծուածական անուան մասին արտայայտած խորհրդածութիւններից յետոյ, պէտք է ասել, որ Խորենացու աղբիւր Յովսէպոսը, ուստի նա բազմաթիւ քաղուածքներ է բերում, ճշդութեամբ որոշում է Հայոց հէքն Արտաւազդ թագաւորի ժառանգի անունը. դա նորա երէց որդի Արտաշիասն է, որին շուտով Հռովմայեցիք մերժեցին նորա ատելութեան համար դէպի Հռովմը, տեղը կարգելով նորա փոքր եղբօր Տիգրանին (Bel. Ind. I. 21, II.)[1]: Խորենացին չհետեւեց Յովսէպոսի ցուցումներին, որովհետեւ ձեռքի տակ ունէր Հայոց թագաւորների այլ ցուցակը, ուր յիշուած էր և Աբգարը և միտք ունէր հաշտեցնել այդ հակասութիւնը իւր աղբիւրի, Արտաւազդի ժառանգ Արշամին կոչելով որդի Արտաշիսի, եղբօր Տիգրանի: Նոյն պատճառով մեր պատմիչը մի կողմ է թողնում Յովսէպոսի հետաքրքիր տեղեկութիւնները Հայոց ուրիշ երկու թագաւոր Տիգրանների մասին, յորոց մէկն որդի էր Աղեքսանդրի, որդւոյ Հերովդեսի Մեծի, — Կապադովկիոյ թագաւոր Արքեղայոսի դստեր — Գլափիրեից, միւսը նորա եղբօր որդին: (Հերովդեսի որդի Աղեքսանդրը ունէր երկու որդի՝ Աղեքսանդր և Տիգրան, որ ստացաւ Հայոց թագաւորութիւնը. այս վերջինիս որդին նոյնպէս Տիգրան էր, որին Ներոն կայսրը կարգեց Հայաստանի թագաւոր. And. Ind. XVIII, 5, 4). Դորանից յետոյ Խորենացին յերիւրում է անճահ կերպով Հերովդեսի և Արշամի ընդհարումը օգտուելով Յովսէպոսից իւր տեսակէտից միայն: Այնուհետեւ պրոֆ. Խալաթեանցը աւանդում է Աբգարի և արաբական հարստութեան պատմութիւնը, որի հիմնադիրն Ուռհայում, երկրորդ դարում նախ քան գՔրիստոս, էր Orhâi ben hewja (137 թ.) դորան հետեւում էին թագաւորներ սեմիտական անուններով Մա-

արաբական քաղուածքից, կը նկատենք մեր կողմից:

Մ. Շ.

1. Յովսէպոսի քաղուածքի այս կտորը Խորենացին սխալ է աւանդում, ինչպէս նկատել է A. Carrière-ը, l. c.

անու, Աբգար, որոնց թագաւորութիւնը տեւեց 352 տարի, 137-ից մինչեւ 216 թ. Քրիստոսի: Յիշեալ հարստութեան վերջին թագաւորն էր Մաանու Թ, որդի Աբգար Թ-դի: Բուն Աբգարի պատմութիւնը Խորենացին պատմում է ութը գլուխներում (26–33), աղբիւր ունենալով Եւսեբիոսից, Ղերուբնային և Յովսէպոսին, յորոց տեղեկութիւններ քաղելով, յարմարացնում է իւր ցանկացած անձանց, փոփոխում է իրողութիւնները, Հերովդեսին և Հրէից վերաբերեալն վերագրում է Աբգարին, միով բանիւ յօրինում է պատմութիւնը: Պրոֆեսոր[illegible] խօսում է Ղերուբնայի գրուածքի մասին, որ լուսաբանել են հետեւեալ բանասէրները Cureton, Wright, Հ. Ալիշան, Փիլլիպս (Հ. Տաշեանի «Zur Abgar-Sage»), Տիքսերոն, որը կարծում է, թէ Աբգարի աւանդութիւնը յօրինուած է երրորդ դարում Յիսուսի:

Դարձեալ պատրիացւոց արքայ Արետի և Հերովդէս չորրորդապետի մէջ Խորենացին խառնում է նաեւ մեր Աբգարին. և Ադիաբենի թագաւոր Իզատի դերը Պարթեւաց վերաբերութեամբ՝ Խորենացու մօտ նոյն Աբգարն է կատարում, երթալով յարեւելս և թագաւորեցուցանելով Պարսից զԱրտաշէս և այլն: Ըստ Յովսէպոսի բացի դորանից, յիշեալ Իզատ թագաւորի մայրը Հեղինէն, Մոնոբազի այրին՝ ճանապարհորդում է դէպ ի Երուսաղէմ և շատ բարեգործութիւններ է անում այնտեղ. Աբգարի այրին Հեղինէ նոյն նպատակով գնում է Երուսաղէմ, ըստ Խորենացու: Աբգարի երկրորդ նամակը Տիբերիոս կայսեր, յետոյ թղթերն — Ներսեհին և Արտաշիսին, անվաւերական են: Աբգարի հայացումն Խորենացուն չէ պատկանում, ինչպէս կարծում է Կառիերը. այս մասին աւանդութիւնը աւելի հին է (Մար-Աբաս ոչ յառաջ քան Է դարն Քրիստոսի):

# ԳԼՈՒԽ Զ·

## Սանատրուկ Կ· (էջ 87-98)։

Որտեղի՞ց է քաղել Խորենացին տեղեկութիւնները Սանատրուկի մասին, քանի որ ոչինչ չկայ նորա վերաբերութեամբ Ղերուբնայի գրուածքում։ Ցառաջ քան այդ հարցին պատասխանելը պրոֆ. Խալաթեանցը, ըստ իւր սովորութեան, ամբողջութեամբ մէջ է բերում Խորենացու Բ գրքի, 34, 35, 36 գլուխները։

Սանատրուկի պատմութիւնը գրելու միջոցին Խորենացին ունէր ձեռքի տակ երկու աղբիւրներ, յորոց մէկն յիշում է. իսկ միւսերի մասին, թէեւ կցկտուր, բայց նշանաւորների մասին՝ նա զգուշութեամբ լռում է։ Առաջին աղբիւրը պէտք է համարել անվաւերական աւանդութիւնը Թադէոս առաքելոյ Սոփերք Հայկականքի Ը հատորում (Վենետիկ 1854 թ.) երեք խմբագրութեամբ. առաջինը – հնագոյնն է և ամենից ընդարձակը (1–59 էջ) երկրորդը յօրինուած է առաջնից, ոչ առանց Խորենացու ազդեցութեան. այնտեղ Սանատրուկը կոչուած է քեռորդի Աբգարի, իսկ սա – թագաւոր Հայոց և Ասորոց (էջ 59–76). երրորդը (էջ 77–83) համառօտագոյնը՝ բովանդակում է իւր մէջ, համաձայն առաջին խմբագրութեան, միայն Սանդուխտ օրիորդի (արքայադստեր) վկայաբանութիւնը։ Յիշեալ երեքին հարկ է յարել մի կարճ աւանդութիւն «գիւտ նշխարաց Թադէոս առաքելոյ և Սուրբ Կոյս Սանդխտոյ» (էջ 87–97), որ, ըստ երեւութին, նոյնպէս հին պիտի լինի։ Հետաքրքիր է նկատել, որ այս աւանդութեան մէջ խօսք անգամ չկայ Աբգարի մասին, իսկ Սանատրուկ անուամբ կոչւում են լակ դաշտն ու բլուրը, ուր հանգչում են սուրբ Սանդխտոյ նշխարքը. վերջինս միանգամ միայն կոչուած է «Կոյս թագաւորական զարմից», առանց յիշատակելու նորա հօր անունը [1]։

1. Այս տողերիս թարգմանելու միջոցին ձեռքիս տակ չունէի Սոփերքը։ Մ· Շ։

Առաջին խմբագրութիւնը ազատ է Խորենացու ազդեցութիւնից, որ երեւում է այն հանգամանքից, որ նորա մէջ յիշուած Աբգարը, համաձայն Եւսեբիոսի և Ղերուբնայի, Միջագետաց թագաւոր է միայն և Հայոցը դեռ չէ. Տուբիայ իշխանը, որի տունը իջաւ Թադէոս առաքեալը, հրեայ է Պաղեստինից, համաձայն Ղերուբնայի, բայց ոչ Բագրատունեաց ազգից. Սանատրուկը կոչուած է Հայաստանի թագաւոր, բայց ոչ ազգական Աբգարի: Նոյնպէս ոչինչ չէ յիշւում նորա հաւատալոյն և ուրացութեան մասին. նա մնում է միշտ խստերախ և անօրէն թագաւոր: Եւ Խորենացին օգտուած է առաջին խմբագրութիւնից:

Մեծ պատմչի երկրորդ աղբիւրն է Փաւստոս Բուզանդացին, որ, ըստ երեւութին, ձեռքի տակ ունէր աւանդութեանս հնագոյն խմբագրութիւնը, ուր տակաւին յիշուած չէր արքայադուստր Սանդուխտը: Խորենացին Փաւստոսից գիտէր Թադէոս առաքելոյ քարոզութեան, նորա մահուան, առաքելասպան Սանատրկի մասին և այլն: Բացի դորանից՝ Խորենացին սխալ է հասկացել կամ դիտմամբ աղաւաղել Փաւստոսի բնագիրը (Գ, 1) և եզրակացրել է, թէ Սանատրուկը ակամայ հաւատացել է, յետոյ ուրացել իւր հաւատը: Ահա այդ տեղն. «ի քարոզութենէն Թադէոսի Առաքելոյ և նորուն յելից և ի մարտիրոսութենէն մինչեւ ի կատարումն վարդապետութեանն Գրիգորի և իւրոյ հանգստեանն, և յառաքելասպան Սանատրկոյ Մինչեւ յակամայ հնազանդելն հաւատոց եւ ի նորուն հանգստեան արքային Տրդատայ .... այն ամենայն ի ձեռն այլոցն գրեցան»: Պրոֆ. Խալաթեանցը այս տողերը ռուսերէն թարգմանելով, բացատրում է, թէ, «մինչեւ յակամայ հնազանդելն հաւատոց» բառերը վերաբերում են Տրդատին և ոչ թէ Սանատրուկին. ուստի Փաւստոսի ֆրանսերէն թարգմանիչն (իմա Մ. Էմին) և Գարագաշեանը սխալ են հասկացել յիշեալ դարձուածը: Խորենացին օգտուել է նաև Ղերուբնայից, ուստի մի քաղուածք է բերում պ. պրոֆ. իւր թարգմանութեամբ ռուսերէն՝ Ադդէի մահուան մասին Աբգարի որդու ձեռքից: Հեղինէի մասին խօսելիս՝ մեր պատմիչը Եւսեբիոսին է ունեցել աչքի առաջ: Ահա այն մատենա-

դրական նիւթերն, որոնց վրայից յօրինել է Խորենացին Սանատրուկի պատմութիւնը, իւր կողմից յարելով ստան և մէկ յաւելուածներ, ըստ կարծեաց պրոֆ. Խալաթեանցի.

ա. — Աբգարից յետոյ Հայոց թագաւորութիւնը բաժանւում է յերկուս. Անանունը Եդեսիայում, Սանատրուկը բուն Հայաստանում են թագաւորում: Անանունը որին Խորենացին Աբգարի յաջորդ է կարգում, ասորական բնագրում և հայ թարգմանութեան մէջ կոչւում է Մաանու:

բ. — Սանատրուկը Աբգարի քեռորդի է դարձրած:

գ. — Սանատրուկը առաջ ընդունում է Թադէոսի քարոզութիւնը, ապա ուրանում հաւատը

դ. — Սանատրուկը զօրք է հաւաքում Աբգարի որդւոց դէմ պատերազմելու բոլոր թագաւորութեան տիրելու դիտաւորութեամբ: Գլխաւոր նպատակն իրագործուած է. Հայերը առաջին քրիստոնեայ ազգի պատիւն են վայելում, Եդեսիոյ թագաւորութիւնը այլ եւս աւելորդ էր, պէտք էր նորան միացնել Հայաստանին, թէ և Եդեսիոյ թագաւորութիւնը (հակառակ Խորենացւոյն) յարատեւեց իւր գոյութիւնը մինչեւ Գ. դարու կէսը:

ե. — «Աստուածային իմն ակնարկութեամբ խնդրեցաւ վրէժ մահուան Ադդէի յորդւոյն Աբգարու: Քանզի սիւն կճեայ .... զերծեալ յանողացն, անկաւ ի վերայ նորա և խորտակեաց զոտսն», թէեւ այդպիսի մահուան մասին չեն յիշում ոչ Ղերուբնան, ոչ էլ Ասորոց կամ Հայոց անվաւերական աւանդութիւնները:

զ. — Սանատրուկը առաջ ընդունում է Եդեսիոյ բնակիչների պայմանը, յետոյ ստում է: Յուլիանոս Ուրացողի նման, Սանատրուկը «մեռաւ յորսի. նետի ուրուք դիպեալ փորոտեացն:

է. — Աբգարի կնոջ Հեղինէին ուղարկում է Խառան:

ը. — Սանատրուկը նորոգում է Մծբինը:

թ. — Սանատրուկը Մծբնում «զինքն անդրի ի մէջին հաստատեաց, մի դրամ ի ձեռին ունելով և այլն:

ժ. — Սանատրուկ անուան անյաջող ստուգաբանութիւնը «որպէս թէ տուրք Սանոտայ»:

ժա. — Հայացումն Դերուբնայի խօսքեն իշխանի, որին Խորենացին դարձրել է Արծրունեաց իշխան, որով դայթակղեցրել է Թովմա Արծրունի պատմիչին (Թ դարու)։

## ԳԼՈՒԽ Է.

Արտաշէս Բ-ի սերունդք — Տիրան Ա, Տիրան Բ, եւ Վաղարշ. (էջ 99-111)։

Երուանդի, Արտաշէս Բ և նորա որդու Արտաւազդ Բ պատմութիւնը ամփոփուած 24 գլուխներում մինչև 61 գլ. Բ գրքի, արդէն հետազօտուած են պրոֆ. Խալաթեանցի առաջին երկասիրութեան էջերում (տես «Հայկական վէպ» էջ 209-314)։ Եդեսիոյ դիւանին, այժմ իբր աղբիւր, փոխարինում է Ուղիւպ քուրմը Հանւոյ, գրող մեհենական պատմութեանց, ինչպէս աւանդում է Բարդածանը (Խոր. գր. Բ. գլ. ԿԶ)։ Դորանից յետոյ մէջ են բերուած Խորենացու Բ գրքի հետեւեալ գլուխները. 62, 63, 64 և 65։ (էջ 100-103)։ Ուղիւպին և Բարդածանին Խորենացին ճանաչում է միայն Եւսեբիոսից։

Տիրանի երկու ձիոց և Բզնունեաց իշխան Դատաքէի մասին աւանդութիւնը Խորենացին քաղած պիտի լինի Փաւստոսից. կամ գոնէ ազդուած է նորանից։ Դարձեալ կասկածելի է թւում պրոֆ. Խալաթեանցին, որ Վաղարշակը օրէնք հաստատած լինէր, որ Այրարատում կարող էր բնակուիլ միայն արքայանմիջական ժառանգը. իսկ միւս զաւակները և Արշակունեաց ազգի անդամները պարտական էին մնալ Հաշտենից գաւառում։ Տիրանն էլ հրամայում է իւր ազգականներին բնակուիլ Աղիովիտ և Առբերանի գաւառներում. և թէ այդ սովորութեան հետեւում էին մեր թագաւորները մինչև Արշակ Բ-ը, որ Գնէլ եղբօրորդուն մինչև անգամ հրամայեց սպաննել՝ Այրարատեան նահանգում բնակուելու համար։ Ե և Զ դարե,

րի հայ հեղինակները Հաշտեանքը դնում էին Ծոփաց աշխարհում, Յունաց և Հռովմայեցւոց [illegible], որ մի ժամանակ առանձին թագաւորութիւն էր կազմում։ Բ—դ նախ քան Քրիստոս Սելեւկիացւոց իշխանութեան հպատակ Հայաստանը բաժանուած էր կրկին թագաւորութեան՝ Ծոփաց և Մեծ Հայոց, որոնց Տիգրան Մեծն միացրեց։ Բուզանդացին, գուցէ, գիտէր, որ Ծոփաց աշխարհում մի ժամանակ թագաւորութիւն կար. այս պատճառով Խորենացին, որ միշտ օգտւում էր Փաւստոսից, կարծում է, թէ Հաշտեանք Արշակունեաց թագաւորների սեպհական կալուածքն էին։ Նոյնպիսի եզրակացութիւն անում է մեր պատմիչը Աղիովտի և Առբերանու մասին։ Բագրատունեաց Հրէից ծագումից դուրս բերելն դարձեալ անհիմն է Խորենացու կողմից։ Տիգրանի պատմութեան համար աղբիւրն — Եւսեբիոսն է. Ռոփի կոյսից Ռոփսեան նախարարութիւնը մտացածին է։ Բարդածանի պատմութիւնը Վաղարշի, նորա քաղաքների շինութեան մասին յիշեցնում են Սեբէոսի պատմութիւնը։ Խորենացու հետեւեալ խօսքերը «ի գաւառին բասեան, ի տեղւոջ ուր խառնին Մուրց և Երասխ .. շինեաց (Վաղարշ) աւան և կոչեաց Վաղարշաւան» գլ. ԿԵ։ Յիշեցնում են մեզ Սեբէոսի այս տողերը. «եկն Տամ Խոսրով, և արար երկու կաթիս, մի՝ ի բասեան ի բոլորապահակի, ուր Մուրց և Երասխ խառնին» տես Սեբ. Ս. Պ. բուրգ. էջ 34)։

Եթէ, արդարեւ, այստեղ էր Վաղարշաւանը, ինչո՞ւ Սեբէոսը կոչում է դորան բոլորապահակ, որ մինչեւ Թ դարը ոչ ոքին յայտնի չէ։ Եւ պ. Խալաթեանցը կարծում է, թէ Խորենացին հնարել է Վաղարշաւանը և Երուանդաւանը։ Նոյն խորհրդածութիւններից դըրդուած հայ պատմիչը Հայոց մայրաքաղաք Վաղարշապատի կամ Նոր—քաղաքի համար հնարել է հնագոյն անուն, կոչելով այն աւան Վարդգեսի։ Խազրաց և Բասլաց մասին յիշելն երկրորդ դարում Քրիստոսի դարձեալ կասկած է յարուցանում։ Վասն զի այս ազգերը պատմութեան մէջ առաջին անգամ յիշւում են միայն Զ դարում։ Վաղարշի պատմութիւնը, հաւանական է կարծել, որ Խորենացին մշակել է Ղեւոնդի աւանդութիւնից, որ ի միջի այլոց գրում է՝ տիրեցին

ի վերայ աշխարհին Հայոց հիւսիսային ազգն, որ՝ ասին խազերք, և սպանին ի պատերազմին զիշխանն Գրիգոր (Մամիկոնեան) և զբազումս ի նախարարացն և զիշխանսն Վրաց և Աղուանից (տե՛ս Պատմ. Ղեւոնդեայ մեծի վարդապետի Ս. Պետերբուրգ 1887. էջ 16)։

Ուրեմն բանից երեւում է, որ խորենացին չունէր և չէր կարող ունենալ ձեռքի տակ ոչ Ողիւմպի մեհենական պատմութիւնքը, ոչ էլ նորա շարունակող Բարդածանի գրուածքը։ Այլ նորա բուն աղբիւրներն էին մի կողմից Հայոց պատմիչներն Ե–Ը դարերի՝ Փաւստոս, Սեբէոս, Ղեւոնդ, իսկ միւսից հայերէն թարգմանութիւններն՝ Աստուածաշունչ գրոց, Եւսեբիոսի Քրոնիկոնի, Եկեղ. Պատմութեան, Գրիգորի Նազիանզացու և Կալլիսթենի։

Մեր կողմից պէտք է նկատենք, որ այս Է գլուխը հարուստ է ենթադրութիւններով։

## ԳԼՈՒԽ Ը

### Խոսրով Առաջին (էջ 112–132)։

Ութը տող յառաջաբանից իմանում ենք, որ Խոսրով Ա–նի պատմութեան համար Խորենացին օգտուելու է՝ բացի Ագաթանգեղոսից, Բարսումայի և Խոռոհբուտի գրուածքներից։ Այս հետեւում են ամբողջութեամբ Բ գրքի այս գլուխները՝ 68, 69, 70, 71, 72, 73, 75, 76, 77. էջ 112–117։

Յետոյ 117–ից մինչեւ 127 էջը պ. Խալաթեանցը հերքում է Խորենացու պատմածները, մանաւանդ Գրիգորի Լուսաւորչի ազգական Կամսարականաց մասին, որոնք երեք ցեղի էին բաժանւում – Սուրէն Պահլաւ, Կարէն – Պահլաւ և Ասպահապետի Պահլաւ. յայտնի բան է, այստեղ Խոռոհպուտը և Բարսուման ոչինչ մեղք չունին և Խորենացու աղբիւրներն հայ մատենագիրներն են միշտ այսինքն Ագաթանգեղոս, Փաւստոս Ղ. Փարպեցի, Անանիա Շիրակացի, Գրիգոր Արշա-

բունեաց եպիսկոպոսը. իսկ միւս յոյն հեղինակներին, որոնց վրայ մեր պատմիչը ակնարկում է, նա, անշուշտ գիտէր Եւսեբիոսից: (Իսկ Պ. Խալաթեանցի աղբիւրներն են՝ Gutschmidt – Geschichte des Artaschir i Papakan. Թարգ. Nöldeke, de la Garde, Պլուտարքոս, Hübschmann և մեր հին հեղինակները: Թերեւս մոռացուած է Գասպարաշեանը, որ յաճախակի առաջնորդում է մեր յարգելի և անխոնջ պրոֆեսորին, նորա երկու ստուար երկերում, Նուիրեալ Խորենացու Պատմութեան): «Բացի Եւսեբիոսից Խորենացին ձեռքի տակ ունէր մի ժամանակագրութիւն, որ յիշեցնում է Մալալայի և Զատկական Քրոնիկոնը. այսպէս 75-դ գլխում տեղեկութիւնները Անտոնինոս Կարակալլայի պատերազմի Պարսից դէմ և նորա մահուան մասին քաղուած են մի կցկտուր աղբիւրից, որ նման է Զատկական Քրոնիկոնին: Բայց եթէ Խորենացին ունենայ յատուկ աղբիւր, նուիրեալ Հայոց այդ ժամանակի պատմութեան, նա մեզ կպատմէր այն հետաքրքիր անցքերի մասին, որ աւանդում է Դիոն Կասսիոսը (Lib. XX\II, 12), «ասում է պ. Խալաթեանցը և շարունակում է այսպէս». Դիոնից երեւում է, որ այդ միջոցին, երբ Անտոնինոսը խաղաց Արեւելք Պարսից դէմ պատերազմելու և նենգութեամբ բռնելով Միջագետաց Թագաւորին, նորա երկիրը հռովմայեցւոց նահանգ դարձրեց, Հայաստանում Թագաւորում էր Սանատրուկի որդի Վաղարշը: Նոյն կերպով Հռովմայեցւոց կայսրը կամեցաւ վարուել նաեւ Հայոց Թագաւորի հետ. հաշտեցնելու պատրուակով Վաղարշին նորա որդւոց հետ նա, կանչեց նորան Միջագետք և զրկեց ազատութիւնից՝ բայց Հայերը իմանալով այդ, դիմեցին ի զէն և չարաչար ջարդեցին Հռովմայեցւոց»: (Էջ 127–128):

(Սակայն պէտք է յարենք մեր կողմից, որ Դիոնի յիշեալ հատուածի վրայ Գասպարաշեանը առաջ էր ակնարկել իւր Քննական Պատմութեան. մասն Բ-դ էջ 264–265. ուր կարդում ենք հետեւեալը. «Տեսցուք այժմ, թէ զի՛արդ գնայր նա (Անտոնինոս Կարակալլա) ի պատերազմի: Ցետ նենգաւ հաւանեցուցանելոյ զԱբգարոս արքայ Ուռհայաստանի գալ տեսանել զնա իբրեւ

բարեկամ՝ կալեալ կապէր զնա շղթայիւք, և այնպէս տիրէր երկրին որ մնացեալ էր անտէրունչ։ Իսկ զԹագաւորն Հայոց (Վաղարշ), որ էր գժտութեամբ ընդ իւր որդիս՝ կոչէր նոյնպէս առ ինքն գրով բարեկամութեան, պատճառանօք համոզելոյ զնոսա ի հաշտութիւն, և գնայր ընդ նմա որպէս գնացն ընդ Աբգարու։ Սակայն Հայք փութանակ յարելոյ ի նա՝ ընթացան ի զէնս, և ոչ ոք այնուհետև հաւատայր նմա, մինչև ի միտ առնուլ նմա ի փորձոյ, թէ քանի վնասակար է առն Թագաւորի վարել նենգութեամբ ընդ բարեկամս։ .... Թէոկրիտոս զոր առաքեաց նա զօրօք ի վերայ Հայոց՝ մատնէր չարաչար ի պարտութիւն (Դիոն. Հէ. 12, 21)։ Դորանից յետոյ պ. Խալաթեանցը անհաւատալի է համարում Խոսրովի սպանութիւնը Արտաշրի թելադրութեամբ, Հայաստանի նուաճումը նորանից, Հայոց Թագաւորական տոհմի կոտորումը, Տրդատի փրկութիւնը՝ Արտաւազդ Մանդակունու ձեռքով և Խոսրովիդուխտ–Օտա Ամատունու միջնորդութեամբ, Օտայի սպանումը Սլկունի Նախարարից և այլն։ Վերջապէս Տակիտոս կայսեր պատերազմը Արտաշրի դէմ Հայաստանի պատճառով, որ անհնարին էր, քանի որ Արտաշիրը մեռաւ 241 Թ. իսկ Տակիտոսը կայսերական գահ բարձրացաւ միայն 276 Թ.[1]։

1. Ըստ Գարագաշեանի, Տակիտոս 275–276 ժ. թագաւորեց։ Մ. Շ։

# ԳԼՈՒԽ Թ.

## Մեծն Տրդատ. (էջ 133–153)։

Խորենացու երկրորդ գրքից ամբողջութեամբ բերուած են հետեւեալ գլուխները. 79, 82, 85. 74, 80, 78, 81, 84։ Այստ՝ մի առ մի ջրում են Տրդատի բոլոր քաջագործութիւնները թագաւորելուց յառաջ և յետոյ. Խորենացին կամեցել է իւր դիւցազնին նմանեցնել Մեծին Աղեքսանդրին (աղբիւրներն են՝ Ագաթանգեղոս, Եւսեբիոս, Մալալա)։ Կոռնակ անունը աղաւաղումն է κεραυνός (շանթ) բառի և Κορνάκος յատուկ անուն է դարձել Եւսեբիոսի բնագրի սխալ թարգմանութիւնից. (ըստ Langlois-ի)։ Հիւսիսային ազգերի դաշնակցութեամբ Տրդատի արշաւելն Պարսկաստան – Ագաթանգեղոսինն է։ Հայոց զօրքերի չորս գնդերի բաժանելն չորս ուրոյն զօրավարների հրամանատարութեամբ – Փաւստոսի հետեւողութեամբն է. Գ. Լուսաւորչի ծննդեան և վարուց պատմութիւնը վերագրուած է մի անյայտ Արտիթէս եպիսկոպոսին։ 80-դ գլխում պատահում է « ի կողմանս Գամրաց » դարձուածը, մինչդեռ այլուր նոյն Խորենացին գործ է ածում « Կապադովկիա ». այստեղից պ. Խալաթեանցը եզրակացնում է, թէ, մեր պատմիչը, բացի Ագաթանգեղոսից, ձեռքի տակ ունեցել է և մի այլ աղբիւր, որից օգտուել է նաև Զենոբ Գլակը։ Նոյն գլխում երկիցս հանդիպում ենք Գրիգոր Նազիանզեցու ճառերին. « կամք են իմոյս ասել բանի » և « ոչ զպատիւն զինքեանս ձգէր (ս. Բարսեղ) այլ զպատիւն զհետ նորա ընթացաւ »։ Դա արդէն, ըստ մեզ, բծախնդրութիւն է պ. պրոֆեսորի կողմից. Խորենացին քաջ ոճաբան է և ընտիր ոճեր գործածելով նա միայն դորանով ապացուցանում է մատենագրի նուրբ ճաշակը։ Մամիկոնեան իշխանների ծագման մասին խօսելիս՝ Խորենացին օգտուել է Փաւստոսից և Սեբէոսից, փոփո-

խելով տոհմական աւանդութիւնները ոչ յօգուտ Մամիկոնեանց: Սլկունեաց ցեղի ջնջումը Մամիկոնեանց նահապետի ձեռքով Խորենացու հնարածը պիտի լինի: Հին հեղինակներից միայն Եղիշէն է յիշում աննշան Սլկունեաց տոհմի մասին:

## ԳԼՈՒԽ Ժ.

### Մեծն Տրդատ (էջ 154–182):

### II.

Խորենացու Բ. գրքից բերուած են հետեւեալ գլուխները՝ 73, 86, 87, 88, 89, 90, 91, 92: Գ. Խալաթեանցը հերքում է Մեսրոպ Վ. Տէր-Մովսիսեանի կարծիքը, թէ Խորենացին չէր ճանաչում Սոկրատի եկեղեցական պատմութիւնը և թէ բացի մեզ չհասած Սեղբեստրոսի վարուց խմբագրութիւնից, հայ պատմիչը օգտուել է Ագաթանգեղոսի մեր ձեռքը չհասած մասերից[1]: Հետեւում են համեմատութիւններ Սեղբեստրոսի ընդարձակ և համառօտ վարուց խմբագրութիւնների: Այստեղից երեւում է երկու խմբագրութիւնների նմանութիւնը մի և նոյն խօսքերի կրկնութեամբ: «Մի այլ դէպք, ուր Խորենացին ակնարկում է Ագաթանգեղոսի վկայութեան վրայ, նկատում է պ. Խալաթեանցը, իմ կարծիքով թիւրիմացութեան արդասիք է»: Ապա բերում է Խորենացու 86 գլխի այս խօսքերը — «համարձակիմք ասել, առաքելուհի եղեալ (Նունէ) քարոզեաց ի Կղարջաց սկսեալ առ դրամբք Ալանաց և Կասբից մինչեւ ի սահմանս Մասքթաց,

1. Հայր Մեսրոպը, իրաւ որ մարգարէացել է Ագաթանգեղոսի մասին. վասն զի Խորենացու կրկին ակնարկներն Ագաթանգեղոսի վրայ՝ Մեծին Կոստանդիանոսի և Ս. Կոյս Նունէի մասին այժմ արդարացաւ. (տե՛ս Պրոֆ. Մառի հաշիւը ճանապարհորդութեան ի Սինայ և Երուսաղէմ): Մ. Շ:

որպէս ուսուցանէ քեզ Ագաթանգեղոս»։ Վերջինս իւր պատմութեան 120 գլխում քարոզութեան նոյն սահմանները վիճակեցնում է Գրիգոր Լուսաւորչին. մինչդեռ խորենացին տալիս է Ներսէսին։ Ուրեմն, անկասկած խորենացին քաղած պիտի լինի Փոքր Սոկրատից, քանի որ այդպիսի մի բան չկայ նաև Վրաց Քրոնիկոնում։ Հետևում է մի քաղուածք Փ. Սոկրատից։ 87 և 88 գլուխները կրում են իւրեանց վրայ Մովսէսի կնիքը. նաև Փ. Սոկրատի, Եփրակացու և Ագ. Գրոց 89 գլխում յիշեալ եպիսկոպոսների անունները խորենացին կարող էր քաղել մի պատրաստ ցուցակից, որի նմանը հրատարակել է պրոֆ. Գելցերը (Patrum Nicaenorum nomina latine, graece և այլն Lipsiae, 1898 թ. էջ 186, 188, 192, 194, 196) 90 գլուխը առնուած է բուն Ագաթանգեղոսի խմբ 91 գլ. հիւսուած է Ագաթանգեղոսից, Փաւստոսից, Գրիգոր Նազիանզացուց, Յայսմաւուրքից և Մեծին Ներսիսի վարուց։ 92 գլ. — Փիլոնից, Սոզոմ. — Կալիսթենից, Գր. Նազիանզացուց, Ագաթանգեղոսից։ Տրդատի մահուան և թաղման վերաբերեալ տեղեկութիւնները քաղուած են յետին ժամանակի անվաւերական գրուածքներից։

## ԳԼՈՒԽ ԺԱ.

### Խոսրով Փոքր (էջ 183–204)։

Երրորդ գրքի առաջին գլխի բովանդակութիւնը պատմելուց յետոյ, պ. Խալաթեանցը նկատում է «Հայաստանում հնախօսութիւն չլինելու վերաբերութեամբ», թէ խորենացու գանգատը տարօրինակ է, քանի որ Դ և Ե դարերի պատմութեան համար, մօտաւորապէս հարիւր տարուայ շրջանի, նա ունէր իւր ձեռքի տակ Փաւստոսի, Կորիւնի և Ղ. Փարպեցու պատմութիւնը, էլ չենք յիշում Ագաթանգեղոսին, որի վրայ յաճախ ինքն խորենացին էլ ակնարկում է։ Առաջին երեք հեղինակների վկայութիւնները ոչ միայն համաձայն են

միմեանց, մինը միւսին հաստատելով, այլ և ճշգւում են արտաքին, օտար պատմիչներից. մանաւանդ Փ. Բուզանդը Ամմիանոս–Մարկելլինից, յորոց Խորենացին տարբերւում է Արշակի, Յոբիանոս կայսեր, Պապի պատմութեան վերաբերութեամբ և այլուր: Փաւստոսին ճանաչում է բիւզանդական պատմիչ Պրոկոպիոս Կեսարացին, որ նորանից քաղուածքներ է մէջ բերում: Ղ. Փարպեցու պատմածը Պարսից Պերոզ և Վաղարշ թագաւորների մասին հաստատւում է Յունաց ստոյգ աղբիւրներից, զոր. Ագաթիասից: Վերջապէս ի նկատի պէտք է առնել դարձեալ մի հանգամանք. Խորենացին, ակնարկելով իւր աղբիւրների վրայ զոր օր. Եւսեբիոսի, Յովսեպոսի, Լաբուբնայի (Ղերուբնայի) Ագաթանգեղոսի, ճշգութեամբ չէ հետեւում նոցա և շատ անգամ վերագրում է նոցա այնպիսի մանրամասնութիւններ, որ բնաւ չկան այնտեղ. ուրեմն, թոյլ է տալիս իրան կատարեալ քմահաճութիւն: Ուրանալով և ժխտելով հնախօսութիւնը հին Հայոց մօտ, նա մի և նոյն ժամանակ առատօրէն օգտւում է վերը յիշուած հայ հեղինակներից և իւր Հայոց Պատմութեան 68 գլուխները յօրինում է Փաւստոսի, Կորիւնի. Ղ. Փարպեցու գրքերից, քանի մի այլ մեր հեղինակներից, որոնք ապրել են Ե դարուց յետոյ և յունաց մատենագիրների հայերէն թարգմանութիւններից: Ապա բերւում են Գ գրքի հետեւեալ գլուխները Մ. Էմինի ռուսերէն թարգմանութեամբ. 1, 2, 3, 4. 5 (մասամբ), 6, 7, 8. (էջ 189–192) Խոսրով Բ-դի և առհասարակ Դ դարու պատմութիւնը Խորենացին քաղում է Փաւստոսից, որ շատ մանրամասնօրէն խօսում է այդ ժամանակի մասին: Խորենացու Գ գրքի ինը գլուխները քաղուած են Փաւստոսի Գ դպրութեան ինը գլուխներից (3–11): Հետեւում են եօթն հերքումներ համաձայն Փաւստոսի. (էջ 192–196):

Սուրբ Յակոբայ Մծբնայ հայրապետի Պատմութիւնը Խորենացին գիտէր Փաւստոսից, բայց, ինչպէս երեւում է, նա ունեցել է և մի այլ աղբիւր, որ է «Պատմութիւն վարուց Ս. Յակոբայ», ուր մանրամասնութիւնները բաւականին տարբեր են միմեանց (Սոփերք) (էջ 196–199): Խոսրովի մասին մեր պատմիչը վատ է

խօսում (իսկ ապա, այսինքն Խորենացու, զքաջութենէ և զքարի յիշատակաց անփոյթ արարեալ, զբօսանաց հաւորաութեանց և այլոց որոց պարապեալ), որովհետև փաւստոսը նորան կոչում է «Կոտակ» մի մականուն, որ Խորենացին մեկնում է իբր Թոյլ, անզօր, մինչդեռ այդ բառը նշանակում է «փոքր», «մատաղաշ»: Միով բանիւ, յարում է պ. Խալաթեանցը, այս մականունը ապացոյց չէ Թագաւորի հոգեւոր և բարոյական յատկութեանց պակասութեան: Նոյն գոյներով Խորենացին նկարագրում էր նաև Մեծին Տիգրանի որդի Արտաւազդին: Խոսրովի պատկերը այլ է փաւստոսի Պատմութեան մէջ: Արտաշատից դէպի հիւսիս եղած բլուրը Դուին կոչելով և մայրաքաղաքը այնտեղ փոխադրելով, Խորենացին մեծ սխալ է անում: Վասն զի վերջին Արշակունեաց, գոնէ Տրդատից յետոյ մինչեւ հարստութեան անկումն (428 թ.) մայրաքաղաքն Վաղարշապատ կամ Նոր-քաղաքն էր. Արտաշատը իբր մայրաքաղաք այդ միջոցին ոչ ոք չէր ճանաչում, բացի Խորենացուց և միայն Ե դարու կիսից Դուինը աթոռանիստ է դառնում Պարսից մարզպաններին և Հայոց կաթողիկոսներին: Մազքթաց թագաւոր Սանեսանի դէմ մղած պատերազմում Խորենացին Հայոց զօրավար է շինում Բագարատ Բագրատունուն, միանգամայն մոռացութեան տալով Վաչէ Մամիկոնեանին, որ Խոսրովից կարգուած զօրավար էր ամենայն Հայոց Մեծաց. իսկ «նիզակակիցք նորա էին Բագարատ Բագրատունի, Մեհունդակ և Գարեգին Ռշտունիք, Վահան նահապետն Ամատունեաց տոհմին և Վարազ Կամսարական», որոնք չարաչար ջարդեցին Մազքթաց զօրքը Օշականի ճակատամարտում, ըստ փաւստոսի. ուրեմն Խորենացին կեղծում է: Արշակունեաց թագաւորների և այդ թւում Խոսրովի ժամանակագրութիւնը Խորենացու մօտ խառնաշփոթ է:

# ԳԼՈՒԽ ԺԲ.

## Տիգրան Բ. (էջ 205–226)։

Բերուած են նախ Գ. գրքի հետեւեալ գլուխները. 9, 10, 11, 12, 13, 14, 15, 16, 17։ Քննելով այդ գլուխները պ. Խալաթեանցը նկատում է, թէ Փաւստոսից չէ երեւում, որ Տիրանը թագաւորելուց առաջ կարէր զգար Վրթանիսի հետ գնալ Կ. Պօլիս. (թագ առնելու)։ Դորա նման մի բան տեղի է ունեցած ուշ ժամանակով, Արշակի թագաւորելուց առաջ, երբ Պարսիկները կուրացրին Տիրանին (Փաւստոս. Դպր. Գ. գլ. 21) և Հայոց կողմից երկու աւագ նախարարներ Անդովկ Սիւնին և Արշաւիր Կամսարականը ճանապարհորդեցին Բիւզանդիոն Պարսից դէմ օգնութիւն խնդրելու համար. ուրեմն Վրթանէսը վաղուց արդէն մեռած էր այդ միջոցին։ Բացի դորանից Կամսարական իշխանի դիտմամբ մեծացուցանելն Խորենացու կողմից քաղուած է Փաւստոսից։ Նոյն աղբիւրից է առնուած և պատերազմի նկարագրութիւնը, ուր մեր պատմիչը (Խորենացին) ուրանում է Հայոց սպարապետ Վաչէ Մամիկոնեանի գործունէութիւնը, ըստ իւր սովորութեան, խօսելով Հայոց Արշակունեաց թագաւորների թուականների մասին, գոնէ մինչեւ Վաղարշապատը, հին հեղինակները ճշգիւ չեն որոշում նոցա թագաւորութեան տարիքը. ուստի նոցա ընծայուած թուականները, պ. Խալաթեանցի կարծիքով, յօրինուած են Է–Ը դարերի անվաւերական աղբիւրներից։ Այդոց թուին դասելու է նաեւ Վարք Սր. Ներսէսի Մեծի, որ մեծամասամբ համաձայն է Փաւստոսի հետ. բայց նորա մէջ կան և տարբեր բաներ և ի միջի այլոց Ներսէսի մարգարէութիւնը, կազմուած ոչ առանց ազդման յայտնի անվաւերական «Տեսլեան սրբոյն Մեթոդեայ» (տես Հ. Բարս. Սարգիսեանի յօդ. Բազմավէպ Դեկ. 1893. և Յունվ. 1894 թ.)։ Այս վարքը չպէտք է շփոթել

ժ—դ. Մեսրոպ երեցու կազմածի հետ (տպ. Մադրասում 1775 թ. «Պատմութիւն Յաջորդաց Հայոց և Վրաց» էջ 55–136), որ յօրինուած է Փաւստոսից: Խորենացուն յայտնի պիտի լինէր այն Վարուց հնագոյն խմբագրութիւնը, ուստի նա շատ քաղուածքներ է անում:

Հիւսիսային ազգերի արշաւանքը Հայաստան Տիրանի օրերում չէ ճշդւում Փաւստոսից. որ ասում է, թէ այդ իրողութիւնը տեղի ունեցաւ Խոսրովի ժամանակ: Կոստանդոս կայսեր, նորա պատերազմի Պարսից դէմ և մահուան մասին տեղեկութիւնները քաղուած են Մալալայից, ինչպէս նկատել են իր ժամանակին եղբարք Վիստոնեանք և Կարիերը: Լուսեղէն Խաչի մասին Խորենացին կարող էր իմանալ Կիւրղի Երուսաղէմացու, և Գրիգորի Նազիանզացու հայ թարգմանութիւնից. վերջինից նա գիտէր և Յուլիանոսի ուրացութեան մասին: Յուլիանոսի պատկերի կանգնումը Ծոփաց գաւառի արքունական եկեղեցում Խորենացու հնարածն է: Դարձեալ՝ նոյն Յուլիանոսի դաշնակիցը Պարսից պատերազմի միջոցին ոչ թէ Տիրանն էր, այլ նորա որդի Արշակը, ինչպէս վկայում է Ամմիանոսը, որ յայտնի էր նաև Փաւստոսից: 12 և 13 գլուխները յօրինուած են Մալալայի ժամանակագրութիւնից: Յուլիանի մահուան շարժառիթը կայսեր պատկերի խորտակումը չէր, այլ ընտանեկան պատճառներից էր, ըստ Փաւստոսի: Դանիէլի սպանումն էլ սերտ կապուած էր Յուլիանի մահուան հետ: 14 և 15 գլուխները կազմուած են Փաւստոսի հետևողութեամբ և զանազան փոփոխութեամբ, դիտմամբ մոռանալով Մամիկոնեան տոհմի հռչակաւոր իշխաններին: Տեղ տեղ Խորենացին աշխատում է չնմանել իւր աղբիւրներին — Փաւստոսին և Վարուց մեծին Ներսիսի: Առաջինը համառօտ կերպով յիշում է, թէ Ներսէսը մանկութիւնից ապրում էր Կեսարիայում, ուր և ամուսնացաւ, երկրորդը ընդարձակ կերպով պատմում է նորա ընտանեկան կենաց մասին, թէ նա ամուսնացաւ Վարդան Մամիկոնեանի դստեր Սանդխտի հետ, ունեցաւ մի զաւակ Սահակ անուամբ, կինը երեք տարուց յետոյ մեռաւ, մինչդեռ Խորենացին Ներսիսին ամուսնացնում է Ապիոն իշխանի դստեր հետ:

# ԳԼՈՒԽ ԺԳ․

## Արշակ Բ․ (էջ 227–260)։

Արշակի թագաւորութեանը Խորենացու պատմութեան մէջ նուիրուած են 18 գլուխներ, Գ. գրքի 13–36 գլուխն։ Այս հանգամանքի պատճառը Խորենացու գլխաւոր աղբիւրի ընդարձակութիւնն է, այսինքն Փաւստոս Բուզանդը, որ Արշակի մասին խօսում է 59 գլուխներում։ Խորենացին քայլ առ քայլ հետեւում է սորան։ Երկրորդական աղբիւրներն են՝ Վարք սբ. Ներսիսի. Սուտ–Կալիսթեն, Մալալա և այլն, որոնք ծառայում են մեր պատմչին Փաւստոսի պատմածները յեղաշրջելու և փոփոխելու համար։

Հետեւում են այս գլուխները Գ. գրքի. 18, 19, 20, 21, 22, 23, 24, 26, 27, 28, 29. 30, 31, 33, 34, 35. (էջ 227–235)։ Ձեռնամուխ լինելով իւրաքանչիւր գլխի քննութեան, պ. Խալաթեանցը ընդգծում է այն ամենայն դէպքերը, ուր Խորենացին հեռանում է իւր բուն աղբիւր Փաւստոսից։ 18–դ գլուխը բոլորովին յեղաշրջուած է. ա. Շապուհ Արշակին թագաւորեցնում է ոչ իւր կամքով, այլ Հռովմայեցւոց կայսեր ստիպմամբ։ բ. Արշակ Հայոց սպարապետ է կարգում իւր դայեակ Վասակ Մամիկոնեանին, որի տոհմի մէջ սպարապետութիւնը ժառանգական էր. և ոչ թէ Սիւնեաց իշխան Վաղինակին (տե՛ս Փաւստոս, Ղ. Փարպ. Եղիշէ, Սեբէոս. Վարք սբ. Ներսիսի). գ. Շապուհ չէր կարող հասնել այս միջոցին մինչեւ Բիւթանիայ, ուր Պարսք հասան միայն Խոսրով Բ. Պարուիզի ժամանակ, 608 թ։ Դա Խորենացու խոշոր ժամանակագրական սխալներից մէկն, որ ապացուցանում է, ըստ Գուտշմիդի, թէ Խորենացու Պատմութիւնը չէր կարող յօրինուած լինել նախ քան Է դարն։ Վաղենտինիանոսի յարաբերութեան մասին Պարսից հետ Խորենացին կարող էր իմանալ Սոկրատից կամ Մալալայից։ Արշակի

արհամարհանքը բիւզանդական կայսեր վերաբերութեամբ, ինչպէս վկայում է մեր պատմիչը, հիմնաւոր չէ, քանի որ, ըստ Փաւստոսի և Ամմիանոսի, Արշակը հաւատարիմ դաշնակից էր կայսերց: Վաղենտիանոսի թղթի գոյութիւնն էլ առ Արշակ կասկածելի է, վասն զի արեւելեան կայսրութեան գլուխն Վաղէնն[1] էր, իսկ Վաղենտիանոսը արեւմուտքում էր: 20, 21, 22, 24, 25 գլուխների բովանդակութիւնը քաղուած են Փաւըստոսից և Ս. Ներսէսի վարքից զանազան փոփոխութիւններով և յաւելուածներով, զոր օր. ըստ Փաւստոսի Շահակը կաթողիկոս էր Ներսէսից առաջ. իսկ այստեղ յետոյ էր. Խադը եպիսկոպոս է Փաւստոսի մօտ. իսկ Խորենացու Պատմութեան մէջ միայն սարկաւագ է և յետոյ ձեռնադրւում է եպիսկոպոս: Ոռդանոս ներքինապետի և ուրիշ անիրաւների պատժումը Վաղենտիանոսի հրամանաւ քաղուած է Մալալայից: Նոյն կայսեր ցասումը Արշակի մօտ ուղարկուած դեսպանների վրայ – Սոկրատից և Սուտ – Կալլիսթենից է: Գնէլի հօր Տրդատի, Գնէլի, պատմութիւնը Թէոդոսի արշաւանքը Հայաստան, Ներսէսի դեսպանութիւնը և այլն բոլորը յօրինուած են Փաւստոսից: Տիրանի մահը իբր թէ Արշակի հրամանաւ՝ հնարած է: 26 և 28 գլուխներում Տիգրանակերտի պաշարման նկարագրութիւնը և առումը քաղուած են Սուտ – Կալլիսթենից, որ աւանդել է Տիւրոս և Թեբայ փիւնիկեցւոց քաղաքների պաշարումը Մեծին Աղեքսանդրից: 27, 29, 31, 32. 34, 35 գլուխներում աւանդուած Արշակի և նորա նախարարների մէջ ծագած պատերազմի նկարագրութիւն (Արշակաւանի պատճառով) Փաւստոսից է: Բաւական մանրամասն աւանդւում է յիշեալ գլուխների բովանդակութիւնը մանր ու մունր նկատողութիւններով պ. Խալաթեանցի կողմից, որ աւելորդ եմ համարում երկրորդել այստեղ, քանի որ դա շատ հեռու կտանէր մեզ. մենք դիտաւորութիւն չունինք ամբողջ գիրքը թարգմանելու. այսքանը միայն կասենք, որ Խորենացու աղբիւրներն են բացի Փաւստոսից Վարք Ս. Ներսէսի, Մալալա և այլն:

1. 364–379 թ.:

## ԳԼՈՒԽ ԺԴ

### Պապ. եւ Վարազդատ (էջ 261–274)

Պապին Խորենացին նուիրում է 3–4 կարճ գլուխներ (36–39)․ իսկ Փաւստոսը 35 գլուխ․ Վարազդատին — միայն 40֊րդ գլուխը, իսկ Փաւստոսը երեք ամբողջ գլուխներ։ Բերուած են ամբողջութեամբ հետեւեալ գլուխները Գ. գրքի․ 35, 37, 38, 39, 40։

Բիւզանդիոյ կայսեր Վաղէսի օրերում Հայաստանում յիշւում է մի թագաւոր, որին բոլոր պատմիչները, առանց բացառութեան, կոչում են Պապ, ասում է Պ. Խալաթեանցը։ Նոյն թագաւորի մասին մանրամասնօրէն խօսում է և հռովմայեցի պատմիչ Ամմիանոսը, անուանելով Պապին Para, որ ծագել է ձեռագիրներում p և r գրերի նմանութիւնից․ բայց Վատիկանի Թ դարու գրչագրում – Papa. է գրուած. (Gardt. hausen. vol. I–II, Lipsiae, 1874 և այլն)։

Դառնալով Խորենացու բնագրի քննութեան՝ յարգելի պրոֆեսորը նկատում է, թէ, ոչ միայն Պապը, այլ և նորա յաջորդ՝ եղբօրորդին Վարազդատը չէին կարող թագաւոր կարգուել Մեծին Թէոդոսից, որովհետեւ Պապը դաւաճանութեամբ սպանուեցաւ Վաղեսի ժամանակ 374 թ, իսկ Վարազդատը գահընկէց եղաւ թագաւորութիւնից երեք տարի դորանից յետոյ, այն ինչ Թէոդոսը գահ բարձրացաւ 379 թ։ Յունաց Ադդէ կոմսը և Տէրէնդ զօրավարը չէին կարող ուղարկուել Թէոդոսից Հայաստան, վասն զի նոքա երկուսն էլ ընկած էին Ադրիանապօլու ճակատամարտում 368 թուին, երբ ընկաւ ինքն Վաղէսն էլ։ Փաւստոսից յայտնի է, որ Պարսից Շապուհը իւր քոյր Որմզդուխտին ի կնութիւն տուեց Վահան Մամիկոնեանին. իսկ Խորենացին միշտ արհամարհելով Մամիկոնեան տոհմը, Շապուհի փեսայ է չինում Մերուժան ուրացողին։ Դարձեալ՝ Փաւստոսի երեք պատերազմները, որոնք տեղի ունեցան Մու-

չեղ Մամիկոնեանի սպարապետութեամբ Դարանաղեաց գաւառում, Աշտիշատականում և Բագրեւանդում, խորենացին միացնում է Ջիրաւ դաշտում և Մուշեղից յաղթանակը կապելով ընծայում է իւր սիրեցեալ Բագրատունեաց Սմբատին: Պատերազմի նկարագրութիւնն էլ, ուր «հողմ սաստիկ ի մէջոցն կուռէ ընդդէմ պարսկականին փչեալ»ը յիշեցնում է Մովսէսի աւանդութիւնը՝ Նուիրեալ Մեծին Թէոդոսի և Եւգենեայ պատերազմին: Դարձեալ՝ այս դարձուածները «զվիշապացն մնացուածս անհաղին բերանբացութեամբ» քաղուած են Գրիգոր Նազիանզուց: «Յորոց յոլովք ի ջղեայ և ի կաշեայ պահպանակաց զզգեստուն զկարծրութեան վիմաց բերէին երեւոյթս» — Մակաբայեցւոց Ա գրքից է: Վերջապէս. «չեռուցեալ ... և յոյժ արտաշէկ արարեալ» երեւի Փիլոնից են առնուած: 38 և 39 գլուխները համառօտուած են և փոփոխուած Փաւստոսից և չափազանց կցկտուր: Այստեղ, ի միջի այլոց, Պապ. «դեղ մահու դաղտնի արբուցեալ սրբոյն Ներսեսի՝ եղեալ ի կենցաղոյս»: Այս առթիւ Գ. խալաթեանցը ասում է. «եթէ Փաւստոսի վկայութիւնը հաւատարիմ եւս համարենք, թէ նա թունաւորեց Ներսիսին, դարա պատճառը հայրապետի կշտամբանքը չէր Պապին՝ նորա ամօթալի ախտերի համար: Այստեղ կար աւելի ծանրակշիռ, քաղաքական պատճառ. այն է ընդհարումն մարմնաւոր և հոգեւոր իշխանութեան հետ: Բանն այն է, որ Պապը, ինչպէս մասամբ և նորա հայրը Արշակը հոգեւորական դասին Մեծին Տրդատից ընծայուած ընդարձակ հողային կալուածքները անհամապատասխան էին համարում դոցա նպատակին: Ինչպէս յայտնի է, լաւագոյն և բերրի հողերը[1] երկրում պատկանում էին հոգեւորականութեան: Արդարեւ դպրոցների, հիւանդանոցների և այլ աստուածահաճոյ հաս-

1. Տեսանէր (Հայր մարդպետ) զգեղեցկութիւն վայրացն, զնիստ շքեղութեան ի բարձրաւանդակ տեղեացն և զհայեացն ի խոնարհ, զի կարի վայելուչ էր տեղին. և չարակնեաց. Փ. Բուզ. դպ. Դ գլ. 15):

Մ. Շ:

տատութեանց չինութիւնը հոգեւորականութեան պարտականութիւնն էր, որ ծախսում էր դոյա վրայ յիշեալ կալուածներից ստացած արդիւնքը. սակայն հոգեւորութեան կողմից թոյլ տուած նկատելի զեղծումնե՞րն էին արդիւնքների բաշխման մէջ և նորանոր հողաբաժինների գրաւումն, կամ ինքեանք թագաւորները, մեծամեծ դրամական աղբիւրների կարիք ունենալով, իւրեանց անդադար պատերազմների համար, նախանձոտ աչքով էին նայում եկեղեցական հարուստ և չէն կալուածքների վրայ, ինչ և իցէ, բայց արդէն Արշակի ժամանակ խնդիր էր արծարծուած յարքունիս դարձնել յիշեալ կալուածքներից մի քանիսը[2]: Առաջին փորձը անյաջող էր. Հայր մարդպետը սպանուեցաւ, գուցէ ոչ առանց մասնակցութեան հոգեւորականութեան. և Արշակը թողեց այդ բարենորոգման միտքը: Պապը գահ բարձրանալով, նոյն խնդրի առթիւ՝ սկսեց մեծ վէճ Ներսիսի հետ, որին, ինչպէս ասում է Փաւստոսը, նա թունաւորեց: Ներսիսի մահից յետոյ, Պապը առանց դժուարութեան իրագործեց յիշեալ բարենորոգումը, գրաւելով յարքունիս եկեղեցական կալուածքների 5/7 մասն, և թողնելով յօգուտ եկեղեցու 2/7. (յեւթն հողոյն զհինգն հատանէր յարքունիս, և զերկուսն միայն թողոյր երկուս հողս Փ. Բուզ. դպ. Ե. գլ. 31): Ահա այսպիսի պետական կարգադրութիւնների պատճառաւ Պապը գրգռեց իւր դէմ Հայոց հեղինակների և ի մասնաւորի Փաւստոսի թշնամութիւնը այն ինչ Ամմիանոսի վկայութեամբ այս երիտասարդ թագաւորը համեստ, առաքինի և հայրենասէր տէր էր իւր երկրի և զոհ դարձաւ միայն Տերենտիոսի քսութեան: 40դ գլխում Խորենացին Փաւստոսի Բ էջում պատմածը Վարազդատի մասին՝ համառօտել է, համարեա, մէկ իջում, մտցնելով այնտեղ զանազան քաղուածքներ Սուրբ գրքից, Սուտ Կալիսթենից, Եւսեբիոսից: Վարազդատին Պարսից բարեկամ լինելով ապա ուրեմն, թշնամի կայսեր, Խորենացին աշխատում

2. Այս խնդրի մասին տե՛ս Գարագաշեան ՔՆ. Պատ. Մ. Գ. էջ 146–150: Մ. Շ:

է խորշել Մանուէլ Մամիկոնեանի անունը տալուց, որի երեսից Վարազդատը փախաւ, իբրեւ Մուշեղի սպանիչ:

## ԳԼՈՒԽ ԺԵ

Արշակ Գ եւ բաժանումն Հայաստանի Խոսրով Գ եւ Վռամշապուհ. (էջ 274–305).

Այս բաժնում բացի Փաւստոսից, Խորենացին օգտւում է Ղ. Փարպեցու Պատմութիւնից:

Բերուած են հետեւեալ գլուխները Գ գրքի. 41, 42, 43, 44, 45, 46, 48, 50, 51, 55, 56, 59:

Դիմենք նախ 41 և 42 գլուխներին, որոնց հիմքն է նոյն Փաւստոսն, այստեղ էլ մեր հեղինակը իրան հաւատարիմ է մնում և հակառակ իւր աղբիւրին, Արշակին և Վաղարշակին կապում է Թէոդոս կայսեր հետ, որպէս զի չյիշէ Մանուէլ Մամիկոնեանի մասին. իսկ նոցա մօրը ուղարկում է Կ. Պօլիս, իբրեւ պատանդ, թէեւ ըստ Փաւստոսի, նա մնում է Հայաստանում: Արշակին ամուսնացնում է Սիւնեաց իշխանուհուն և ոչ Մամիկոնեանց, ինչպէս Փաւստոսն է վկայում: Յառաջ քան դիմելն իւր միւս աղբիւր Ղ. Փարպեցուն, Խորենացին 42–46 գլուխներում պատմում է Յունաց և Պարսից բաժնի հայ թագաւորների այն է՝ Արշակի և Խոսրովի երեւակայական և չեղած պատերազմները, ուր ի միջի այլոց, յառաջ է քաշում Գազաւոն Կամսարականին: Վերջապէս մեր պատմիչը դիմում է Ղ. Փարպեցուն և Կորիւնին, յորոց երկերից նա յօրինում է իւր Հայոց Պատմութեան երրորդ և վերջին գիրքը: Անդադար քաղելով այս հեղինակներից, նա աշխատում է ծածկել նոցա անունները, պատմել իրողութիւնները իբրեւ ժամանակակից Սահակայ և Մեսրոպայ. իսկ հնարամտութեան կողմից նա շատ շահւում է Սոկրատից, Սեղբեստրոսի վարքից, մանաւանդ սուտ – Կալիսթենից, Փիլոնից, Գրիգոր Նազիանզացու:

Ընդհանուր պատմութեան վրայ յենլով, Պ. Խալաթեանցը հերքում է, առանց դժուարութեան Խորենացու երկի պատմական մասն, նորա տգիտութիւնը և անտեղեակ լինելն մեր տոհմական պատմութեան. զոր օր. Սահակ Պարթեւին Խորենացին հարկադրում է գնալ Պարսկաստան, իւր դստեր խնդիրքով, իւր փեսայ Համազասպ Մամիկոնեանի համար բարեխօսելու: Միթէ Խորենացին չգիտէր, որ ասպետութիւնը Բագրատունեաց ցեղում և սպարապետութիւնը Մամիկոնեանց տոհմի մէջ ի հնուց ժառանգական էին Հայաստանում և կարիք չկար հաստատելու Պարսից Թագաւորի կողմից: Դարձեալ՝ Ղ. Փարպեցուց մեզ յայտնի է, որ Սահակը գնաց Պարսկաստան Վռամի (420–428ի) ժամանակ մանուկ Արտաշրի մասին վկայութիւն տալու, այն ինչ Խորենացին Սահակին չորս անգամ գնալ է տալիս Պարսից դուռն. Ա. Արտաշիր Բ. օրերում (379-383). Բ. Յազկերտ Ա (399–420). Գ. Վռամի և վերջապէս Սահակը Պարսկաստան է գնում չորրորդ անգամ, յայտնի չէ, թէ ինչ պատճառներից դրդուած: Այս խօսվում է գահնամակի մասին, ուր գրուած են Հայոց նախարարական և իշխանական տոհմերի անունները: Պարսից Թագաւորների ժամանակագրութեան մէջ, Խորենացին տեղ տեղ տարբերւում է Ղ. Փարպեցուց:

## ԳԼՈՒԽ ԺԶ

### Վռամշապուհ. Սահակ Պարթեւ եւ Մ. Մաշտոց
### (էջ 306–335)

Բերուած են Գ գրքի հետեւեալ գլուխները, 47, 49, 52, 53, 54, 57, 58, 60, 61, 62: Նախ պրոֆեսորը խօսում է Մաշտոցի վարուց կրկին խմբագրութեանց մասին, որ լոյս տեսան ի Վենետիկ 1838 Թ. և 1854 Թ. յետոյ ուշադրութիւն է դարձնում այն հանգամանքի վրայ, որ մինչեւ Ը դարը Հայոց նշանագրերի հնարողին կոչում են միայն Մաշտոց. (մեր և օտար պատ-

միչները)։ Խորենացին լոկ միանգամ տալիս է նորան այս անունը, իսկ 30 դէպքերում անուանում է Մեսրոպ, և այս անունը այնուհետև կրկնում են Խորենացուց յետոյ միւս մեր հեղինակները։ Ապա հետեւում է Մաշտոց բառի ստուգաբանութիւնը, որ, ըստ պ. Խալաթեանցի, ծագում է մաշտել — մաշտ բայից, նշան. մազերը թափել։ Ինչ և իցէ Մեսրոպի բուն անունն էր Մաշտոց։ Ապա գալիս են Սահակին և Մաշտոցի, մեր բանասիրաց քաջ յայտնի, պանծալի գործերը, նշանագրերի գիւտը, Սուրբ Գրոց թարգմանութիւնը, Խորենացու առանձին դարձուածների ու ոճերի վերլուծումն, քաղուածքները Փիլոնից, (գլ. 12), Գրիգոր Նազիանզնուց, Անանիա Շիրակացուց, մանաւանդ ճանապարհորդութեան նկարագրութիւնը։

## ԳԼՈՒԽ ԺԷ

Արտաշիր եւ Հայոց Արշակունեաց անկումն

(էջ 336–368)։

Այս վերջին գլխի բովանդակութեան նիւթ են Խորենացու Գ. գրքի վեց գլուխներն, որոց աղբիւրներն բացի Ղ. Փարպեցուց և Կորիւնից, կազմում են՝ Գրիգոր Նազիանզին, Փիլոն Եբրայեցին, Վարք ս. Սեղբեստրոսի հայ. թարգմանութեամբ Է դարու և այլն։

Բերուած են այս գլուխները՝ 63, 64, 65, 66, 67, 68 (էջ 336–345)։ Խորենացու աւանդածը ստուգելու դիտաւորութեամբ, յարգելի պրօֆեսորը՝ յենլով Ղ. Փարպեցու պատմութեան վրայ, համառօտ ակնարկ է նուիրում Հայաստանի այն ժամանակուայ քաղաքական դրութեանը, որ նորութիւն չէ կարող լինել հայ և օտար բանասիրաց համար։ Ապա մի առանձին, թերեւս աւելորդ ջանասիրութեամբ և մանրազնին քննութեամբ բացատրում է ու որոշում, թէ Խորենացին ո՞ր բառը, ոճը կամ դարձուածը ո՞ր տեղից և ի՞նչ հեղինակներից փոխ է առել կամ քաղել։ Օրինակի համար իւր ողբի

բնաբանը մեր պատմիչը առել է Գ. Նաձիանձու Ներբողից, նուիրեալ Անտիոքի եպիսկոպոս Մելետիոսի յիշատակին: Ինչ որ խօսում է այդ ճառում Մելետիոսի և Անտիոքի եկեղեցու մասին, Խորենացին վերագրում է Սահակին, Մաշտոցին և Հայոց եկեղեցուն քանի մի բան էլ յարում է իւր կողմից: Բացի Ներբողից, Խորենացին օգտուել է նաև նոյն Նաձիանձու այլ ճառերից, Փիլոնից, Սուրբ Գրքից, Ղեւոնդից (Ըդ): Իւր եզրակացութիւնների մէջ (էջ 369–378), մեր անխոնջ պրօֆեսորը մատնացոյց է լինում Խորենացու մտացածին և իրական աղբիւրների վրայ, որոնք արդէն յիշուած են իւրեանց տեղում, հերքում է նորա երկարամեայ պատմական հեղինակութիւնը մեր հին մատենագրութեան մէջ, ասելով թէ՝ այնուհետև յառաջ պէտք է մղել մեր միւս պատմիչներին, որոնք Խորենացու. շնորհիւ մինչև ցայժմ ըստ արժանւոյն չէին գնահատուած: Դորանից յետոյ Խորենացին դրուատւում է, իւր լեզուի վսեմութեան, ոճերի ու դարձուածների գեղեցկութեան կողմից, իբրև առաջնակարգ հիանալի մատենագիր, որ առաջին անգամ փորձ փորձեց տալ մեզ սիստեմատիք և գեղարուեստական կերպով աւանդուած սկզբնական Հայոց Պատմութիւն, տոգորուած զուտ ազգային ոգւով – մի հանգամանք, որ չէր կարող մնալ՝ առանց խոր ազդեցութիւն գործելու իւր հայրենակիցների վրայ թէ հոգևոր և քաղաքական տեսակէտից: Գրքիս երկրորդ մասն կազմում են նիւթերը (էջ 1–143). բաղկացած դարձեալ 17 գլուխներից:

Կնքելով այստեղ մեր ընդարձակ գրախօսութիւնը, մեր կողմից կը նկատենք. թէև գիտնական պրօֆեսորի քննութեան կէտերից մի քանիսը, գուցէ, վիճելի են, սակայն չէ կարելի չգնահատել գործի ընդարձակութեան առաջև, որի վրայ Պ. Խալաթեանցը տասնեակ երկար տարիներ է աշխատել և նա իրաւունք ունի ասելու՝ quod potui, feci, faciant meliora potentes.

[illegible]

ÉTUDES DE DIALECTOLOGIE ARMÉNIENNE

# ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆՆԵՐ

## ՀԱՅԿԱԿԱՆ

## ԳԱՒԱՌԱԲԱՆՈՒԹԵԱՆ

ÉTUDES DE DIALECTOLOGIE ARMÉNIENNE

# ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆՆԵՐ

## ՀԱՅԿԱԿԱՆ

## ԳԱՒԱՌԱԲԱՆՈՒԹԵԱՆ

ԳՐԵՑ

ՀՐԱՉԵԱՅ Յ. ԱՃԱՌԵԱՆ

*(Հանուած Բազմավէպի ԾԶ տարիէն)*




ՎԵՆԵՏԻԿ Ս. ՂԱԶԱՐ

1898

# ՁՕՆ

**ԱՌ ԳԵՐԱՊԱՏԻՒ**

**Հ. ԳԱՐԵԳԻՆ Վ. ԶԱՐԲՀԱՆԱԼԵԱՆ**



*Ի ՏՕՆԻ ՅԻՍՆԱՄԵԱՅ ՅՈԲԵԼԻՆԻԴ*

**ԸՆԿԱԼ**

**ԶԴՈՅԶՆ ԶԱՅՍ ԵՐԿ**

**ԻԲՐ ՈՉ ԵԹԷ ՓՈԽԱՐԷՆ ԻՆՉ**

**ՄԵԾԱՎԱՍՏԱԿ ՎԱՍՏԱԿՈՑ ՔՈՑ**

**ԱՅԼ՝ Ի ՆՇԱՆ ՀԱՒԱՏԱՐԻՄ**

*ՍԻՐՈՅ ԵՒ ՄԵԾԱՐԱՆԱՑ*

**ՀԵՂԻՆԱԿԻՆ**

---

յ30 *Յունուարի* 1898 *Պարիս*



# ՔՆՆՈՒԹԻՒՆ

## ԱՍԼԱՆԲԷԳԻ ԲԱՐԲԱՌԻՆ

Ասլանբէգ կը գտնուի Փոքր—Ասիոյ ծայրը, հետիոտն երեք ժամ ճանապարհ հեռու Նիկոմիդիա կամ Իզնիմիտ քաղաքէն։ Գիւղն ամբողջ հայաբնակ է և ունի 4000 բնակիչ, որոնց զբաղումն է գլխաւորաբար շերամաբուծութիւն, այգեգործութիւն, ածխագործութիւն և երկրագործութիւն. վերջերս սկսած է նաև ծխախոտի մշակութիւն։

Ասլանբէգ շրջապատուած է բազմաթիւ թուրք, լազ և չէրքէզ գիւղերով. բոլորն ալ գաղթականներ, որոնք այնտեղ բերուած են մասնաւոր նպատակով. այսպէս ալ անոնք՝ իրենց ջանքերը չեն խնայեր նեղելու աշխատասէր և գործունեայ Ասլանբէգցին։

Կռիւն անպակաս է Ասլանբէգի և այդ այլազգի գիւղերուն մէջ, ուր սակայն քաջ Ասլանբէգցին միշտ յաղթող կը հանդիսանայ.

իր անունը հաւասարապէս կը դողացնէ յի֊շեալ դրակից ազգերը։

Այսպիսի կուրի մը փոքրիկ իրական պատ֊կերն է հետեւեալը՝ որուն անցնելէ առաջ՝ հար֊կաւոր է ընել քննութիւն մը Ասլանբէգի բար֊բառին ձայնական կազմութեան և քերակա֊նական օրէնքներուն մասին ։

---

## ԳՐԵՐՆ ԵՒ ԱՆՈՆՑ ԱՐՏԱՍԱՆՈՒԹԻՒՆԸ

Ասլանբէգի այբուբենը կը բաղկանայ 43 տառերէ, որոնց 11ը ձայնաւոր և 32ը բա֊ղաձայն են։

Ձայնաւոր տառերն են.

ա, ա̃, եա, ըա, ըա̃.

ե, ը, ի .

օ, եօ, իւ ։

ա̃ կը ներկայացնէ ռնգային ա, ինչպէս ֆրանսերէն en, pan. օրինակ՝ ձա̃մփա̃ն, կիշ գա̃մ, վէացը մէկա̃նց՝ ձա̃մփա կ'էլ'լ'ա̃ ։

Եա կը ներկայացնէ հաւասարապէս գոց ա կամ բաց է. ինչպէս՝ ճիէարը, էանըկիշկ ։

Ըա կը ներկայացնէ աւելի գոց ա. քան եա. միջին ճամբայ է ա, ե և ը գրերուն. ընթերցողն այս գրին ձայնին վրայ գաղափար

կրնայ կազմել արագապէս կարդալով ըս վանկը։ Ըս շատ գործածական չէ. օրինակ՝ ռնոնկ եա նըա (պոլսական բարբառով նէ՝ եթէ), Ըռնննիւկ՝ Օննիկ։

Ըա ռնգական է ըսի, նոյնպէս քիչ գոր-ծածուած. օրինակ՝ հըմըա (թուրք ամա՝ բայց)։

Էօ կը հնչուի աւելի ճիշտ եօա, իսկ իւ՝ աւելի իւեօ, արագ արտասանուած։

Միւս ձայները՝ ա, ե, ը, ի, օ, կը պահեն հայերէնի սովորական հնչումը, բայց քիչ մ՚աւելի թաւ երեւոյթ ունին, ինչպէս կը պա-հանջէ Ալանբէգցիններուն արտասանութիւնը՝ թաւ և ծանր։

Բաղաձայններն են.

բ, գ, դ, զ, թ, ժ, լ, լ՚, խ, ծ, կ, հ, ձ, ղ, ճ, մ, յ, ն, շ, չ, պ, ջ, ռ, ս, վ, տ, ր, ց, փ, ք, ֆ, *։

Ասոնց մէջ առանձին մտադրութեան ար-ժանի են լ՚, յ և * ։

Լ՚ը պարզ լէն աւելի թաւ ու հաստ հըն-չում ունի. կը պատահի միայն երբ երկու լ կայ. այսպէս, կ՚ըլ՚լ՚ա, կ՚ել՚լ՚ա, պլ՚լ՚ած, կլ՚լ՚եւ։

Ց միշտ կը հնչուի ֆրանսական y կամ գերմաններէն j. օրինակ՝ յե*կը (եօքը = յետոյ), ձերմայ (= ճերմակ)։

Առանձին հետաքրքրութեան արժանի է *՝ որ միայն Ալանբէգի բարբառին յատուկ ձայն մըն է. չկայ մեզ ծանօթ լեզուներու մէջ, բայց կը մօտենայ հնդկերէն վիսարգա (:) գրին։

*ը տեսակ մը ապաթարց կամ մակակէտ է, որ ջնջուած գրի մը տեղ կը գրուի. այն տարբերութեամբ միայն՝ որ ապաթարցը ձայն չունի և լոկ գրաւոր նշան է, իսկ աս ունի իրեն յատուկ հնչումը։

Մերձաւոր գաղափար մը կազմելու համար այս գրին արտասանութեան վրայ, պէտք է առնել՝ զոր օրինակ՝ շատ բան խօսքը, և հնչելէ վերջ շա մասը՝ յանկարծակի ղադրեցնել արտասանութիւնը, սեղմել կոկորդը և արգիլել թոքերէն դուրս մեկնած օդին հոսանքը. յետոյ իսկոյն անցնիլ յաջորդ ք գրին։

Միւս բաղաձայններուն արտասանութիւնը պոլսականին կը մօտենայ. փ, ք, թ, չ, ց տառերուն հնչումն արեւելեանին հետ նոյն է. բ, գ, դ, ջ, ձ կը հնչուին իբրեւ փ, ք, թ, չ, ց. տարբերութիւնը շատ չնչին է. բայց արեւելեան հայերէնի՝ պ, կ, տ, ճ, ծ գրերէն աւելի խուլ և հետեւաբար աւելի զօրաւոր են։ Կրնան նաեւ հնչուիլ արեւելեան արտասանութեամբ։ Իսկ պ, կ, տ, ճ, ծ կը դառնուին

*արեւելեան արտասանութեան բ, գ, դ, ջ, ճ և պ, կ, տ, ձ, ծ խումբերուն մէջտեղ։*

*Առհասարակ բոլոր տառերուն ալ արտասանութիւնը ծանր է, ինչպէս ձայնաւորներունը։*

*Այս այբուբենին մէջ չեն առնուած ե, ւ, ո տառերը. անոնց տեղ դրուած է՝ յէ, վ, օ՝ Ալանդէգի արտասանութեան համեմատ։ Ու ձայնը Ալանդէգի մէջ գոյութիւն չունի։*

---

## ՁԱՅՆԱԿԱՆ ՓՈՓՈԽՈՒԹԻՒՆՆԵՐ

*Հայերէնի տառերն Ալանդէգի բարբառին մէջ կը կրեն հետեւեալ ձայնական փոփոխութիւնները։*

### Ա. ՁԱՅՆԱՒՈՐՆԵՐՈՒ ՓՈՓՈԽՈՒԹԻՒՆԸ

*1°. աը առհասարակ կը մնայ անփոփոխ. զոր օրինակ՝ մանիշ, խանք (երթանք), բարի, ծրար, և այլն։*

*Ըի կը վերածուի հետեւեալ բառերուն մէջ. ըպը (հապա), քընի, ըմնէն, ըձըպ (Թրք. աձապ՝ արդեօք), մընչիկ՝ բայց նաեւ մանչիկ։*

*Յաջորդական երեք այբերու երկրորդը,*

կամ նաեւ որ և իցէ եռավանկ բառի մը երկրորդ վանկին ալ կ'իյնայ, կամ ըի կը վերածուի. զոր օր. Կարըպետ, Հայրըպետ, մարըպետ, վարժըպետ, վարդըպետ, պարտըկան, Համըզասպ, Պաղտըսար, սարկըւագ, և այլն։ Բայց նաեւ հարսնիք, խաչտուր (խաչատուր)։

Ուսումնական բառերը (պատարագ, քահանա, սատանա, ևն) փոփոխութիւն չեն կրեր։

Ա եղած է ե՝ կեօշնաւ (ճանչնալ) բառին մէջ. իսկ թեօրզը բառին մասին տես վարը։

Ա կը հնչուի ըա՝ կիւզըլա բառին մէջ։

Շատ քիչ անգամ ալ գոց կը հնչուի՝ իբրեւ եա կամ իբրեւ ե. զոր օր. Ղեազեար, Ղեզեր. եանիկիւշ, ենիկիւշ. եաւչի, եաւճիւն (թրք. անուան՝ Հօրեղբայր), դեօնօնք, կ'ենին, յեարթ (յարդ)։

Ընդհանուր օրէնքով ա ռնգական օւ կը վերածուի ն և մ գրերուն քով. զոր օր. մօչ մը կիւզըլա (մանչ). օնօնկ ա (այսպէս ալ). ձօմփօն, կիւզօ (կուզան)։

Այսպէս ալ ըա կը դառնայ ըօ՝ գնըօ (գնա) բառին մէջ։

Ամ, ան խումբը բառին սկիզբը կ'ըլլայ եմ, են՝ ու և օ գրերուն քով. զոր օր. ենիւշ, ենիւն, ենեօր, ենենք, ենենց, ենեօրի, եմիւր։

Բայց ուրիշ գրի առջեւ անփոփոխ կը մնայ. ինչպէս՝ անձարայ, անարայ կամ օնձարայ, օնարայ (անտառակ)։

Ցանձ բառն եղած է տօս։

Շեշտեալ անր խումբը կ'ըլլայ օ́րյը, օ́յրը, kó րյը (երկար և շեշտեալ օով). զոր օր. մó րյը, ծó րյը, ծó յրը, ծkó րյը (մանր, ծանր)։

Սանտր բառն եղած է սó րյը՝ նախ սանր ձեւն առնելէ ետք։

Թանձր՝ դարձած է թkօրզը. այս տեղ ան-կանոն kօ ծագած է նkօրսը (նօսր) բառին կանոնաւոր kօին նմանութեամբ։

Բոլոր ատոնք խօսքի կամ բարդութեան մէջ ալ, երբ իրենց շեշտը կորսնցնեն, նոյն ձեւը կը պահեն. մó րյ k (մանր է). մօյրḱ (մանրḱ). ծօյրkւթին (ծանրութիւն). սօրյել կամ սkօրյել (սանտրել)։

Այ կ'ըլլայ k կամ ա։

Շեշտեալ այ կ'ըլլայ ա. զոր օր. լան, ձան, ած, աս, ծար։

Անշեշտ այ կը դառնայ k. ինչպէս՝ նkյիլ, kգի, kրիկ, kրkլ։

Սակայն ի բնէ շեշտեալ այը՝ երբ բառի մէջ իր շեշտը կորսնցնէ, k չ'ըլլար. զոր օր. ածիւ (այծու), ասkօր (այսօր)։ Այսպէս նաեւ կածայ (կայծակ), քաշkլ։

Պայծառ իբրեւ յատուկ անուն ուսումնական բառ է. վայլէլ կուգայ վայելել ձեւէն, ուստի և մնացած են այսով։

2⁰. Ե գրին փոփոխութիւններն են.

Բառին սկիզբը կամ գոց վանկի մէջ կը մնայ անփոփոխ. ինչպէս՝ երեյ, Ետեօ (Պետրոս), ձերմայ, ևն։

Վանկի ծայրը՝ մանաւանդ երբ այդ վանկը երկարել պէտք ըլլայ, կը վերածուի շատ բաց եաի, որ պարզ աի կը մօտենայ. զոր օր. խեօ-բարեալեան, վեացը, դեաղին, վերն եա։

Այսպէս են բոլոր յոգնակինները՝ երբ ձայնաւորի քով պատահին. ինչպէս՝ ձիեարը, շազեարիշն, քարեարեն։

Նոյնպէս նաեւ անցեալ ընդունելութիւնները՝ երբ յաջորդ բառը ձայնաւորով սկսի. զոր օր. կեօտրտեար ին. բայց կեօտրտեր գացեար ին։

Է գեռ աւելի բաց հնչուելով կ՚ըլլայ ա՝ ձառք (ձեռք) բառին մէջ, ինչպէս է նաեւ ի Պոլիս։ Եւ առոր համեմատ ալ Ե գրին քով կ՚ըլլայ ա, դիաՆ (դիէն) բառին մէջ։

Ը կ՚ըլլայ թըմերնին, տը (թրք. տէ) բառերուն մէջ։

Նէ (նէթէ) բառին մէջ կը հնչուի ըա։

Է կը դառնայ ի՝ բոլոր առաջին լծորդութեան բայերուն ներկայ եզակի առաջին և

յոգնակի առաջին ու երրորդ դէմքերուն մէջ. կը սիրիմ, կ'իշտին, կը բեարին, պիտի ըսիմ, կ'իշտինք։

3°. ի գիրը սովորաբար կը մնայ անփոփոխ. զոր օր. իրկիշն, բարի, կը խեօսիմ, գինի։

Ը կ'ըլլայ ընծի (ինձ), ըզըրքնց (իրենց), հըվա* (հիւանդ), հըվը*ծա (հիւանդացայ) ընչեօք (մինչեւ) բառերուն մէջ։

Ըա կը հնչուի մըա (մի, մէկ) բառին մէջ։

4°. օ կամ ո ամէն պարագայի մէջ կը դառնայ եօ. զոր օր. ենեօր, գեօղ, եկեօ (եկօ́ = եկ, արի), եօր (որ կամ օր), նեօ́րսը (նօսր) և առոր հետեւողութեամբ բեօ́րզը (թանձր)։

Երբ շեշտեալ չէ, դարձեալ եօի կը փոխուի. բայց կրնայ մնալ նաեւ օ։ Այսպէս խօզայ, դօրը (Թրք. անտառ), Օվակեմ, Պօղեօս, կօտրտեա́ր ին։

Ծամկախօսութիւններու մէջ օ մնացած է, թերեւս սա լինելով նոր և ուսումնական բան. զոր օր. ծօխեօ (ծօ́), չօխեօր (չոր)։ Քիչ անգամ և դիտմամբ նաեւ եօ. զոր օր. բեօկձեօղ (Թւ'ղ)։

Ծօ բառը կու տայ ծեօ և ծիւ։

Օ՝ անգականի քով ալ մօտ՝ձայն մը կը ստանայ. զոր օր. Ըաննիշկ, Իաննիշկ (Օննիկ, Յովհաննէս), եամիշզ (Թրք. = ուս)։ Յայտնի ա եղած է գամէշ (գոմէշ) և ղանձա (Թրք. ղօնչա = կոկոն) բառերուն մէջ։

$5^0$. ու տառանց բացառութեան իշ կ՚ըլլայ. զոր օր. ֆիշաա (այս տեղ), ածիշ (այծի), մարքիշ, իշնի, տիշն, և այլն։

Ուստի և Ասլանբէգի բարբառին մէջ ու ձայնը գոյութիւն չունի։

$6^0$. իշ կը մնայ իշ՝ ամէն բառի մէջ. ինչպէս՝ արիշն, փիսկիշղ (Թրք. = ծոպ), քիշֆէ (Թրք. = կողով), աղիշր, ձիշղեարք։

—ուշթիշն մասնիկին մէջ կը վերածուի ի. խենթիշթին, պարսիշթին (բարձրութիւն)։

Ասլանբէգի բարբառը չունի Թուրքերէնի յատուկ «ձայնաւորներու ներդաշնակութեան օրէնք»ը։ Հետեւաբար և խենթիշթին, պարսիշթին, իրկիշն, իսիշն, և նոյն իսկ Թուրքերէն փիսկիշղ և այլն, կը մնան անփոփոխ. փոխանակ ըլլալու խենթիշթիշն, պարսիշթիշն, իշրկիշն, իշսիշն, փիշսկիշղ. ինչպէս Պոլիս և ուրիշ տեղեր՝ ճիշսիշս, ո՛շքուշ, պուշտուշղ,

թուշաչ՛ուշնուշ և այլն, նոյն իսկ գրական կո֊չուած արտասանութեան մէջ։

## Բ. ԲԱՂԱՁԱՅՆՆԵՐՈՒ ՓՈՓՈԽՈՒԹԻՒՆԸ

Առհասարակ խօսելով՝ Ասլանբէգի բար֊բառին համար բաղաձայններու խումբ մը տանելի չէ։

Երբ այսպիսի խումբեր գտնուին բառերու մէջ ի բնէ (ինչպէս՝ ոտք, ձեռք, մարդ, կոծ֊կեղ, մեծնալ, կանգնիլ, ծնկվըներ) կամ պա֊տահաբար խօսքի մէջ երկու գան բաղաձայ֊նով վերջացող բառի մը և բաղաձայնով սկսող բառի մը միութեան ժամանակ (ինչպէս հաց տուր, դուրս գացէք, մենք քեզի ըսինք, կրակ վառէ. ուր՝ ցտ, քգ, քք, կվ խումբերը երեւան եկած են), այդ պարագային խումբերը կը պարզուին ընջելով այս կամ այն բաղաձայ֊նը, կամ բոլորովին անհետ և կամ հետք մը թողելով անկէ։

Բաղաձայններու այս փոփոխութիւնը ճիշտ կը համաձայնի ֆրանսերէնի արտասանու֊թեան օրէնքներուն. այսպէս՝

*les hommes* լէ զ օմ

*c'est une...* ս'էտ իւն...

քէօրգը (Թանձր), պարթը (բարձր)։

Երբեմն այս շ, գ, ս, ժ կը համաձայնին յաջորդ բաղաձայնին տեսակին. ինչպէս կարշ գիր՝ փոխանակ ըսելու կարժ գիր. ժ փոխուած է շի՝ յաջորդ քին յարմարելով. ըստասս տ (փխ. ըսազս տ = ըսածս ալ)։

Ձայնաւորի կամ հի քով, ինչպէս նաեւ բառն առանձին եղած ժամանակ՝ կրկնակ տառն անփոփոխ կը մնայ. զոր օր. վեաց հատ, քիչ եա, կարձ էնիչն։

Դիտ. — Միջակ գրերը (գ, դ, բ, ձ, ջ) չունենալով իրենց համար որոշ և յատուկ ձայն, կը հետեւին կ, տ, պ, ծ, ճ գրերու օրէնքին՝ եթէ արտասանուին կ, տ, պ, ծ, ճ։ Իսկ եթէ արտասանուին ք, թ, փ, ց, չ, կը հետեւին այս գրերու օրէնքին։

Ուստի և հիյ տառը կամ հի* տառը, տօս մը (տանձ մը), քէօրգը (Թանձր)։

Չորրորդ. — Ն գրով կազմուած բաղաձայնի խումբերուն մէջ Ն կը ջնջուի, իսկ մնացեալը կը պարզուի վերի օրէնքներուն համեմատ։

1°. Նչ, Նջ, Նճ, Նձ, Նց, Նժ կ'ըլլան պարզապէս շ, ժ, ս, զ. զոր օր. ձաժ մը (ճանճ մը), ժօրյը տօս մը (ծանր տանձ մը), կեօշնաղ

(ճանչնալ), ատնիլ (անցնիլ), բայց՝ անցայ, ձանձիշ, տանծիշ, և այլն։

2⁰. նկ կուտայ պարզապէս յ. օր. նիյ տառք մարթ, իյնայ, կ'իյնա, կայնիլ, ծըյվընիլ, բայց՝ ինկայ, ինկած։

3⁰. նռ և այլն, կը վերածուին լռկ*ի. օր. հվա* կա (հիւանդ կայ), թա* կացի (բանտ գացի), Ցե՛րվա*, մարըդ հ՞ըր եա, ըռի* մը (լաւ մը) հըվը*ծա (հիւանդացայ)։

Բաղաձայններու մասին մինչև հիմա տըրուած օրէնքները գիր մը ջնջելու եղանակի մասին էին։ Բայց այս ընդհանուր օրէնքներէն զատ բաղաձայնները կրնան կրել նաև մասնակի փոփոխութիւններ, հետևեալ կերպով. Առաջին՝

1⁰. հ գիրը կը փոխուի ֆի, ֆէն, ֆէօն, ֆէս, ֆէօս, ֆէդ, ֆէօդ (հոն, հոս, հոդ) ձևերուն մէջ։

2⁰. անհետ կը ջնջուի հապա = ըպը բառին մէջ։

3⁰. առ հասարակ թեթև անզգալի հնչում ունի. այս պատճառով և արգելք կ'ըլլայ բաղաձայններու ջնջուելուն. ինչպէս՝ կրակ հանես, մարդ հո* (հոդ) չընէար. Ցե՛րոշանդ, հեռու կիշգան։

4⁰. ր գրին հետ միացած եր խումբը եր

Յոքնակիններն առ հասարակ 1° հոլո-վումին հետ նոյն են։

Մասնաւոր ձեւ ունին էրկըտիք, կնվը-տիք, ախպրտւնք, քըրվըտւնք, կը*տաք, ախպրտիք, տիրվըտիք, շընվըտիք. սեռ. էրկըտէօց, կըյվըտէօց, կը*վըտէօց. բաց. կը*վըտէօսմէն, կը*տէօսմէն։

Թուական ածականներն են.

1. մէկ (մէյ).
2. էրկիւ (էրկիւք, էրկիւ*).
3. իրէաք (իրէա*).
4. չէօրս.
5. հինք (հիյ, հի*).
6. վէաց (վէաս).
7. էօխտը.
8. իւթը.
9. ինըւ, վինըւ.
10. տասը.
11. տասնըմէյ.
12. տասվէրկիւք (տասվէրկիւ*)
20. քսւ.
30. էառսիւն.
40. քառսիւն.
50. իսիւն.
60. վա*ծիւն.
70. յէ*միշ (Թրք.).

80. սէ*սէան (Թրք.).
90. տօխսան (Թրք.).
100. հէարիւր.
1000. հէազար։

Դասականները Թուրքերէն են։ Բաշխականները սովորականին համեմատ՝ չէօրսակը, էրկէրկիւ, և այլն։

Դերանունները կը հոլովին հետեւեալ կերպով.

| | | |
|---|---|---|
| 1°. | էսս | մէանք |
| | իմ | մէար |
| | ըանծի | մէազի |
| | ըանծիս | մէազ |
| | ըանծիմէն | մէազիմէն, մէրմէն։ |
| | ըանծիմէօվ | մէազիմէօվ։ |
| 2°. | դիշն | դիշք |
| | քիշ | ձէար |
| | քէազի | ձէազի |
| | քէազ | ձէազ |
| | քիշմէն, քէազիմէն | ձէրմէն, ձէազիմէն |
| | քէազիմէօվ | ձէազիմէօվ։ |

3°. Եզ. ուղղ. հյց. ան, ընիկա, ընիկ, սեռ. տր. ընէօր, բաց. ընէօրմէն, անկէ, գրծ. ընէօրմէօվ։

Յոք. ուղղ. հյց. ընընք, սեռ. տր. անընց, բաց. անըրմէն, գործ. անըրմէօվ։

Քիշիդ, քիշիիդ, քիշիէդ, քիշիեօվդ. քիշ-իկէարդ, քիշիկէարիդ, քիշկէարեօվդ:

Իրը, իրեանը, իրեանինե, իրեանենէ, իրեա-նեօվ. իրեանց, իրէանցեօվ, իրըանեարը, ի-րենցինեինե, իրենցինեօվ, և այլն:

Մեարը, մեարինն, մեարեն, մերեարը, մերեարինն, մերեարեն, և այլն:

Պարզեալ բաղադրեալ ձեւերով. մերեա-րինմեն, մերինեերինմեն, մերեանք, մերըա-մեն, ձերենք, ձերըամեն, և այլն:

Բոլոր առանց կը համաձայնին ձայնական օրէնքներուն. այսպէս՝ ըզըրը* կերան; ըզի* կերաւ, ըզըրըեց կեինեը—, ըզըրըենք ըզըրըս բանը գիտին. ես ա ըզըրըեց հետն էի. անըս մարդիքը:

Ստացական մասնիկներով կազմութեան օրինակ.

Գըլեօխս, գլխիցս, գըլխէս, գըլխեօվս, գըլ-խըներարըս, գըլխըներարիցս, գըլխըներէսս, գըլխըներեօվըս. — Գըլխընիս, գըլխընիցս, նէս, գըլխընեօվնիս. գըլխըներարնիս, գըլխը-ներարնիցս, գըլխըներարնիցամեն, գըլխըներեօվ-նիս:

Էրիյնիս, էրիյնիցս, շընվըտեօսնիցս, շըն-վըտեօսնիցամեն, էրկը*տեօսնիցամեն, կըյվը-տեօսնիցամեն, կընիյներարնիցս, կը*տեօսնիցս, և այլն:

Ցարաբերական կօր չի հոլովիր․ պէտք եղած տեղն կրնայ սակայն ըսուիլ․ —ն մարդը կօր անկէ...։ Սովորական ձեւը —ած ով է։

Բայերուն լծորդութիւնն ու խոնարհումը, համաձայն է Պոլսականին։ Սակայն

1°․ Բոլոր Ա․ լծորդութեան եմը կը փոխուի իմ եզ․ առաջին, և յոգ․ առաջին և երրորդ դէմքերուն մէջ․ այսինքն ուր որ եր ռնգական գիր մը կը հանդիպի։

2°․ Շարունակականները կը շինուին եւյէ մասնիկով։

3°․ Անկատար և կատարեալ յոգ․ առաջին դէմքերը, կ'առնեն —անք մասնիկը։

Ահաւասիկ երեք լծորդութիւններուն պատկերը․

## Ներկայ

| | | |
|---|---|---|
| կը սիրիմ | կը խեօսիմ | կ'իմ |
| կը սիրեաս | կը խեօսիս | կ'իաս |
| կը սիրեա | կը խեօսի | կ'իա |
| կը սիրինք | կը խեօսինք | կ'իոք |
| կը սիրեաք | կը խեօսիք | կ'իաք |
| կը սիրին | կը խեօսին | կ'իոն |

## Ներկայ շարունական

*կը սիրէ՛մ հայէ, կը խէօսի՛մ հայէ, կիա՛մ հայէ, կը տիրէ՛ս հայէ, և այլն։*

## Անկատար

| | | |
|---|---|---|
| *կը սիրէի* | *կը խէօսէի* | *կ՝իայի* |
| *կը սիրէիր* | *կը խէօսէիր* | *կ՚իայիր* |
| *կը սիրէր* | *կը խէօսէր* | *կ՚իան* |
| *կը սիրէունք* | *կը խէօսէունք* | *կ՚իայունք* |
| *կը սիրէիք* | *կը խէօսէիք* | *կ՚իայիք* |
| *կէ սինէին* | *կը խէօսէին* | *կ՚իային* |

## Անկատար շարունական

*կը սիրէի՛ հայէ, կը խէօսէի՛ հայէ, և այլն։*

## Կատարեալ

| | | |
|---|---|---|
| *սիրէցի* | *խէօսէցայ* | *հազացի* |
| *սիրէցիր* | *խէօսէցար* | *հազացիր* |
| *սիրէաց* | *խէօսէցաւ* | *հազաց* |
| *սիրէցունք* | *խէօսէցունք* | *հազացունք* |
| *սիրէցիք* | *խէօսէցաք* | *հազացիք* |
| *սիրէցին* | *խէօսէցուն* | *հազացին* |

## Ներկայ ապառնի

պիտի սիրիմ, պիտի խօսիմ, պիտի իւմ, պիտի սիրես, պիտի, և այլն.

## Անցեալ ապառնի

պիտի էիրէի, պիտի խօսէի, և այլն։

## Հրամայական

| | | |
|---|---|---|
| սիրէա | խօսէա | հազա |
| մի սիրեար | մի խօսիր | մի հազար |
| սիրեցէաք | խօսեցէաք | հազացէաք |
| մի սիրեաք | մի խօսիք | մի հազեաք |
| թող սիրեա | թող խօսի | թող իա |
| թող սիրեար | թող խօսեար | թող իար, են։ |

## Ստորադասական ներկայ

սիրիմ Երա, խօսիմ Երա, իւմ Երա, սիրես Երա, և այլն։
եթէ սիրիմ Երա, եթէ խօսիմ Երա, և այլն։
սիրիմ, խօսիմ, իւմ, և այլն

## Անցեալ

սիրէի Երա, եթէ սիրէի Եև., սիրէի, և այլն։

## Դերբայ

| | | |
|---|---|---|
| սիրել | խեօսիլ | հալ |
| սիրած | սիրեար | սիրեալիք են: |

Նել, Եիլ, Եալ վերջացող բայերը կը հոլովին այս սկզբունքով և համեմատ գրական լեզուին. տարի, պագի, առի, ըսի, և այլն կ'ըսուին նաև տարեց, պագեց, առեց, ըսեց:

Բացասական ձևերը կը կազմուին հետևեալ կերպով:

## Ներկայ

չիմ սիրեար, չիմ խեօսիր, չիմ հար,
չես սիրեար, չես խեօսիր, չես հար,
չի սիրեար, չի խեօսիր, այլն:
չի* սիրեար, չի* խեօսիր,
չե* սիրեար, չե* խեօսիր,
չին սիրեար, չին խեօսիր,

## Անցեալ անկատար

չէի սիրեար, չէի խեօսիմ, չէի հար,
չէիր սիրեար, և այլն. և այլն:
չէր սիրեար,

*չէա* սիրէար ,*
*չէի* սիրէար ,*
*չէին սիրէար ,*

Կատարեալ

*չի սիրեցի*
*չի սիրեցիր , և այլն ։*

Ներկայ ապառնի

*չի սիրիմ պիտի ,*
*չի սիրես պիտի ,*
*չի սիրէ պիտի ,*
*չի սիրի* պիտի ,*
*չի սիրէ* պիտի ,*
*չի սիրին պիտի ,*

*չի խօսիմ պիտի ,*
*չի խօսիս պիտի ,*
*և այլն ։*

Անցեալ ապառնի

*չի սիրէի պիտի ,*
*չի սիրէիր պիտի ,*
*չի սիրէր պիտի*
*չի սիրէա* պիտի ,*
*չի սիրէի* պիտի ,*
*չի սիրէին պիտի ,*

*չի խօսէի պիտի ,*
*և այլն ։*

## Հրամայական

*չի սիրես ըլլա, չի խեօսիճ ըլլա, չ՚իաս ըլլա, թեօղ չի սիրեա, թեօղ չի սիրեար, և այլն։*

## Ստորադասական Ներկայ

*չի սիրիմ ըլլա,* *չի խեօսիմ ըլլա,*
*չի սիրես ըլլա,* *և այլն։*
*չի սիրի* ըլլա,*
*եօր չի սիրիմ ըլլա, եօր չի սիրի* ըլլա, և այլն.*
*չի սիրիմ, չը խեօսիմ և այլն։*

## Անցեալ

*չի սիրեի ըլլա, եօր չի սիրեի ըլլա, չի սի-րեի. չի սիրեա* ըլլա, եօր չի սիրեա* ըլլա, և այլն։*

## Դերբայ

*չի սիրել,* *չի խեօսիլ,* *չ՚իաղ*
*չի սիրած,* *չի սիրեալիս,* *և այլն։*

*Դիտելի է թէ բացասական բայերու մէջ ապառնիի պիտի մասնիկը բայէն վերջը միայն կրնայ գրուիլ։*

Անցողական և անկանոն բայերը համաձայն են Պոլսականին, միայն կրած են պիտանի ձայնական փոփոխութիւնները. այսպէս՝ կէօշցա (ճանչցայ), էկէօ, կ'ասնիմ (կ'անցնիմ), սիրցընէալ, բայց՝ գացի, գացիր, գացավ, գացօնք, գացիք, գացին, գնըօ, իօնք, մ'իար, գացէք, և այլն։

Անփոփոխելի մասն—բանիններուն մէջ նկատելի են՝

տիշնն ի բօ, դէպի տուն.

քիշ հէտ, իմ հէտ և այլն։

դաս էկէօ, հոս եկուր.

ֆէս, ֆէօս, ֆէսէն, ֆէօսէն, ֆիշաա, (հոս).

ֆէր, ֆէօր, ֆէրէն, ֆէօրէն, ֆիշտա, (հոդ).

ֆէն, ֆէօն, ֆէնէն, ֆէօնէն, ֆիշնա, (հոն).

մարի (տե՛ս).

նէրքին (տակ)․ ժառին նէրքին նստէցա.

ընչէօք (մինչեւ).

քընի, էօր (եթէ), մէյտէղ, և այլն, և այլն.

Համաձայնական կանոնները լիովին կըր-նան տեսնուիլ յաջորդ հատուածին մէջ։

# ԼԱԶԷԱՐԻՒՆ ԳԷՕՂԻՒԹԻՆԸ

(Ընէօղա* քը*նէօղա*)

Մանիւյ. — Բար'իրկիւն խաշտիւր ախպար։
Խաշտիւր. — Խէր ը'լլա։
Մ. — Օվակէմ պապային քլխիւն էկածը իմացա՞ր, էգիին մաւշաճարը (խնդիր)։
Խ. — Իրաւ էօր էրէկ իրկիւն աստայ լաֆ մը կար հըմը (բայց), ըռի* մը չիյաիմ։
Մ. — Էգին գէօղ էկէար էա տը ճիւղէա-րը էանըկիւյ կէօարտէ՛ար ին։
Խ. — Ծիւ ըպը ի՞չ կայնէար էաք. ձիէարը քաշէցէք տը իգը (հետք) իւնք (երթանք). աս բանը ընէօղը Լազէարը ըլլալիւ ին, էառ-ջի էօրն Վարդ էամճիւն էգին ըրէար ին։ Դիւն գնը Կարըպէաին իշէն (և) Մի-նանին (Միհրան) կանչէա. էս ա էրկիւ հա* պէկիրձի (ձիապան) ճարիմ։
Մանիւկը կ'իա Կարըպէաին տիւնը.
— Բարի. լիյս, Պա՛յծառ. Կարըպէտը վէ՞րն էա։
— Խէր ը'լլա, խաշտիւր ախպար. վէրն էա։

— Թէօղ չիւֆտեկան (հրացան) առնէա տը գա։

Պայծառը վէր կ'իա.

— Մար*, կ'ըռէա, էլի չիւֆտեկան առ տը վար գնը...։

Կարըպէտը կը ցա*կէ, չիւֆտեկան եամիւզը (ուս) կը զարնէա, կեանէ (դարձեալ) ճ՞շ կա ըձըպ (արդեօք), կ'ըսէա, վար կ'իշնա։

Կարըպէտ.— Բարի լիւյս Մանիւկ ախպար։

— Աս*ծիւ բարին, քընի՞ սահարքէն (ժամ) վար կ'իշնաս. Ինչիկը ղայֆեան (սրճարան) ին. Լազէարիւն պիտի յունք։

— Ծա* գիյանիւթին (վնաս) ըրէ՞ար ին։

— Ախպար, հաւէօղնէարը իւռէլնին, եաւռէ (լաւ) զարար (վնաս) չիւնի ըսինք. կէօճէրն ա էանըկիւ* կէօարտէմր ին։

— Անունկ էա նը... քընի մը հատ ա ձի առնելիւ էա։

— Ջիէարը հազըր (պատրաստ) էա, ախպար, քալէա։

Կարըպէ*ն իւ Մանիւկը կ'իւն ղայֆեան. ճամփու Մինանը թըմէրնին կ'էլ'լ'ա. կը նէյին էօր ծրար մը ցառքը կ'իա. Կարըպէտը կը հարցընէա.

— Հազը՞ր էս. ֆիշէ՞կ (փամփուշտ) է ցառքիննէարըդ։

— Ֆիշէկի գէօրզ կա՛ յա (միթէ)։

— Տահա (դեռ) խապա՞ր (լուր) չիւնիս. Լազէարին պիտի իյնք. Մնչիկը ղայֆեան ին. հազըրլէօրէա (պատրաստուէ) տէ էկէօ։

— Հիմա կու գամ։

Մինանը տուն կ'իյա. Կարըպէ*ն ու Մանիւկը ղայֆէն կ'իյան։

Մինանը տուն կու գայ.

— Պէշինճի (հինգերորդ[1]), տախըմը (կազմած) վար բէր։

— Մար* նէճէ վե՞ր պիտի իյաս։

Մինանին մարը տախըմնէարը բէր ըսէալը կ'իմանայ։

— Ճամբում էօղիւշ (հոգիս, զաւակս) չիւշանաս, կ'ըսէա։

Մինանը ղըրսլանմիշ (բարկանալ) կ'ըլ՛լ՛ա։

— Շա* մի տաատա*, կ'ըսէա, Թիւրս կ'էլ՛լ՛ա, ղայֆեան կ'իա։ Պայ մը յէ*կը Կարըպէ*ն ու Մանիւկը կուգա, կը նէյին էօր Մինանը ֆէօն էա.

— Ծիւ յէա՞ր էկար։

Մինանը ճիւղէա* (պատասխան) չիտար. գլէօխ կը նէտէա։

Վէացը մէկաս ճամփա կ'էլլ. քէֆիանէա-

1. Բազմաթիւ ամուսնացեալ եղբայրներու մէջ իւրաքանչիւրին կինը կը կոչուի ըստ կարգին. ուրեմն. պէշինճի, հինգերորդ եղբօր կինը։

րը գլխընին պ՚լ՚լած, սըրմայը (ոսկեթել) ձամատոննէարը հաքած, ճէրմայ զփղանէարը քաշած, չամրուղիշխնէարը ճիվէրնին, Ջէրքէշի յեմենինէարը հաքած, չիշփռեանէարը եամիշգնին զարկած, դամպիշրնէարն (կեռ զանակ՝ բերանը դուրսի կողմէն) իւ քեօրեօղլիշնէարը (բիր) մէշկէրնին կախած։

Քեֆիա ըսածըս իփէ*ղիշ (մետաքսահիւս) ռեսքըլմեալ (Թաշկինակ) մըն էա, չիւրքը օյալը (ժանեկաւոր)՝ կանաշ, կարմիր, մեօռ (մութ կապոյտ), դէաղին ըռեայնէարէօվ (գոյն). ֆեասին փիսկիշլը (գլխարկի ծոպ) քէօվէրնին կախված՝ քեֆիան անոյ մը կը կապին էօր, ծարէարը փիսկիշլին կիւ գըա ոը եամիզը կը ծէծէա։

Ճամառտանը մեօր չիւխայէօվ էա՝ ընչէօք էօր կէս մէաշկը սըխիշ (ամուր) կէօժկած, թէւէրն ա սըխիշ, դեօշէարը (զգեստի թեւ) էրկիւ դիհէան կախված, կեօ*սէարը (կուրծք) սըրմա փռնված, անանկ ա արմիւնէարնին. եամիշգէն մէաշկը ֆիշէյլիխնէարը (փամփշտակալ) կը կապին. մէշկէրնին ա քռապեօղիշս կէօտի (գոտի)։

Զփղա ըսածս տինէ գէօրծագ ճէրմայ կտավ մըն էա. ընչէօք էօր ծըյլընին, Լազէարիւն հաքածին պէս. հըմը էտէֆին կտէօր

մըռ պէօղ (լայն) էա. Լաղէարիմը հավիւ աղիի պէս էա, հըմըռ մէարը խէօրէօղի (աքաղաղ) պէս տընկըված էա։ Աս գփողանէարը ղըյէ* (խիստ) ճէրմայ պիտի ըլ՚լ՚ռ. ըմմէն շափթիւ կը վլ՚ռն. էօր կիտէօր մըռ աղտէօա ը՛լ՛լռ նըռ, ռն մարդը ռձա*շամիշ (այպանել) կ՚ը-նին։

Ջամըռուլիւխս ըստաս ա հարմնընցիւ ախ-չընէարը կը շինին։ Ջէրքէշի յէմէճին ածիւ կաշիէօվ շինված էա, տակը ճէշ (բնաւ) կար չիւնի. էրկիւ դիռն թէօ* (ժողվել) կ՚էնին էօ*կին էրէասը կը կարին. էրկիւ ծարէրն ա քիթէօվ. էրկիւ հատ ա սըրըմ (կաշիէ թել) կա, ճիվէրնին կը պ՚լ՚լին։

Ճամփռն խէօրարէալէան (խօսելով) իալն իքէան (ժամանակ), Միւսթաֆա աղան կը տէսնռն. էօր կիւ մէօտէնռն նըռ, Մինռնը Մանիւկ ախպէօրը կ՚ըսէա.

— Ծօ՛լը Մանիւկ՛լը ախպա՛րիլը. մա՛լը մարղ՛լը մաղ՛լը ծակ՛լը էլ՛լը, խօսք՛լը փոխէ՛րիլը[1]։

Միւսթաֆա աղային բարէվը կիւտռն կ՚աս-նին։

1. Ծածկաբանութեան եղանակ մը. կը կազմուի իւրաքանչիւր բառի ծայրն աւելցնելով Էլը մասնիկը։

Վէրի–կալէարէան[1] անցաղ վախտը (ժամանակ) պղտիկ մանչիկը ֆէօն kօյիճ (խաղ) կը խաղային. իւր ատըս գալը կը տէսնան նըա մէջէրնիւն մէակը կ՚ըսէա.

— Իւր էաս մէգնամ նըա Խաչաւիւր ախպէօրը պէս պիտի ըլ՚լամ։

— Էս ա Կարըպէտին։

— Ըպը Մինանը, չէա՞ս ըսէար.

— Ի՞շ Մինան, Մինանը քընի՞ յարա (վէրք) իւնի։

— Էօխտը։

— Խաչաւիւրինըա տասվիրէք հատ էա։

— Աս կիրակի էօր թիւձարնէարը (վաճառական) գան նըա, էրկիւ քիլա* (չափ մը) խօզա (բժոժ) պիտի ծախիմ. քէօր Ամմէտին (կոյր Ահմէտ) քէօվ վէս նէտէօղ (վեցհարուածեան) մը կա, էօխտը ճէրմակի (20 ղահեկան) կիւտա էաղէար. Ֆիշէյղիւխն ա հէ*ն էա։

Վէրի–կալէարէան ասնէլէն յէ*կը Մանիւկ ախպարը միալնէարիւն կ՚ըսէա.

— Ծիւ ախպար խաղ մը չկանչէաք։

Ասէօր վիրա ըմմէնքը մէյտէղ կը պաշլային (սկսիլ).

1. Տեղի անուն։

Ալլահպէկ իշխաքլարը
Մըջը պաղլար քիւշաղը.
Ծաքա մաքա ոիյեամազ,
Ջեքեր վիշրիշր պիշչաղը, և այլն.

(Ալլահբէգի կտրիճը
Գոտին ամուր կը կապէ.
Կապակ մապակ չգիտէ,
Կը քաշէ դանակը կը զարնէ)։

Ասանկըրֆ Ղուլլըխըս ձէօրը կիւգան, Քարտակին[1] քէօվ թէօ* կ՚ը՚լ՚լոն. Խաշտիւր ախպարը կ՚ըսէա.

— Դիւ* խրատի պէ*կը չիւնիւք հըմըս, Էտէօ (Պետրոս) ախպէօրն իլէան (և) Մէնէքէրիմին էրկիւ շաֆ (խօսք) ընիմ։ Դիւ* դարաղաձին ծառէարիւն տակը պիտի կայնիք. էօրթիշֆեակը էրկիւ հէաղ փաթէանըս, ձիէարը կ՚առնէ* կիւգաք. էօր մէյ մը փաթէանըս, ձիէարը կը հեզնա* կ՚իաք։

Էտէօն իւ Մէնէքէրիմը ձիէարը կ՚առնին Ղարաղաժնէարիւն տակը կ՚իոն. ձիէարը

1. Գիւղէն կէս ժամ հեռու բարձր քար մը։

չայիրը (արօտ) Թէօղ կիւտան, իրէանք ա յաՃ (ընկողմանիլ) կիւգա, կ'էրկննան։

Միալնէարը ճամփա կ'էլլ'ան․ էփէյի (բաւական) տէղ իալէն յէ*կը, Խաշտիւրը կ'ըսէա.

— Կը քնանաք, ի՞շ կ'ընէաք․ իգը (հետք) էրկիւքի փէօխվէցավ․ էաս Մինանը աճնիմ ասկէ իամ տը՝ գիւք էրկիւքըդ միալ ճամփան բռնէցէաք։

Մանիւյ․ — Իրկիւնը իրար ի՞ւր պէտի գը*նանք։

— Քէստըճէյին (շագանակ) ախփիւրը իրարիւ կը պէ*ղէյինք (սպասել)։

Մանիւյն իւ Կարըպէտը հէյ—տասը ատիւմ (քայլ) իալէն յէ*կը իգը ղայի* (կորսուիլ) կ'ը՛լլա։

Մանիւյ․ — Մարդէօցը աշկը բաավէար էա, ա՛րխատաշ (ընկեր)․ վարպէտիւթին ըրէար ին։

Կարըպէտ․ — Է ի՞շ կ'ըսէաս․ յէ* դէռնանք։.

— Ջէա․ էկէօ փիւսա նստինք։

Ջիւֆտէնէարը էօ*կէրնիւն մէշ խէօԹէցին, իրէանք ա անտէղ յաՃ էկան. Մանիւկը Կարըպէտին ըսավ.

— Մէյմը անկաճդ հէօղին դիր․ ղօրըին (անասուն) մէջէն ճիվիւ ձան մը կիւքըլա։

Կարըպէտը մտիկ կ'ընէա.

— Հա՛ (այո՛), ձոն մը կիւքըա ընկըճիս. մէ՛ր դիէան ը՛լ՛լալը պէյլիշ (յայտնի) չէա. ձոնէ՛արը կիւ խէօշըրնոն. Լազին աղա*ն ին. ձէօրին դիէան էա։

— Կէցի նէյիմ ախպար։

Ընկածը հէօզին կը դնէա.

— Ա՛խպար քէօմէրնիս էկէար ին, ուանա (տակաւին) ի՞շ կայնէար ինք. չիշֆտէա* ձէառք առ։

Չիշֆտէանէարը կ՚առնին, ձէօրն ի վար կ՚իջնոն. Լազէրն իւր կը տէսնոն նըօ, կարըպէտը թէթիկը (հրացանի ըլթակ) կը քաշէա։

— Թէսլիմին օլօ (անձնատուր եղէք)։

— Քիմէօ քիմէօ (որո՞ւ, որո՞ւ)։

— Էսլէնպէկլի. տիր (Ասլանբէգցի է)։

— Տէսլիմ տէօր սիզին (չըսէ՛ք բարեկամ էք)։

— Իշի պիլիր (գործը գիտէ)։

Ա՛ս լաֆէարէան (խօսք) յէ*կը, Լազէարը ադէյ մը էօրթոն (մէջտեղ) կ՚ել՛լ՛ոն, քիշֆէնէարը (կօզօլ) շալկընին։

Մանուկը մէօտը կ՚իա,

— Վայ Ճին-օղլին, սէ՞ն սին, կ՚ըսէա։
(Վա՛յ, Ճին—օղլան, դո՞ւ ես)։

Քիչ մը ճա* (ճաթ. եղիպտացորենէ շի-

նուած հաց) կ'իւզէա, էօր ուն ա չիւնիմ. կ'ը-սէա Նըո, ջիւֆէյին խափախը (կաղովին կա-փարիչը) կը բոնո, կը նէյի էօր հաւէօղ էա։

— Ծիւ Կարըպէտ. էս քէզի չըսի՞. ըռինա էօր չի գացոնք. մարդիկը աշկէրնին բացէար ին ըսի. գիտէա՞ս. ասընք Իւսլակէմ. էամճիւն հաւէօղնէարն էա, կիւզէրէն (ողկոյզ) կը կէօշնամ. գիտին իւր իզը կ'իոնք, էօրմոճին (անտառ) մէշ պահէար ին. հիմայ ա էկէր կը տոնին։

Կարըպէտը չիւֆեան իրարիւ էտըմէ էր-կիւ*ն ա կը նէտէա. Լազէարը դէօղալ կը պաշըային. կըռէօր մը յէ*կը ձիէարը կիւ-քոն։

Մանուկը կ'ըսէա.

— Սա հաւէօղնէարը ձիւն վրա բէառ-ձէք. Կա՛րըպէտ, դուն ա ձիւն մէկին վրա հէծի տը մանչէօցը էտըվէն հասի։

— Ախպար, ձի՛ն իշ պիտի ընիմ. աս լէռնէարուն մէշ ձի՞ կը քալէա. էս հիմա վիւր ին Նըո կը բէրիմ։

— Էս ձին հեզնաս տիյի (որպէսղի) չիմ ըսէար. կ'ը՛լ՛լա էօր պէ*կը կ'ը՛լ՛լա։

— Պէ*կը ը՛լ՛լա նէա, ֆէօն ձիւն դը* շըխը (պակասութիւն) չիքա։

Կարըպէտը կ'իտա, Մնչիկը կը գը՞նա կը նէյի էօր էրկիւ Լէազի ձի միսիր (եգիպտացորեն) բէառցաղ կիւքան, փիւթիւնը (ամբողջ) մէկէն Մանիւկին քէօվ կիւքան։

Մանիւկը կ'ըսէա.

— Ծօխկօ մախկանչիխկիկ, չօխկօր ծէխկէծ մըխկը քախքաշիխկի՞նք[1]։

— Մըքճէնք մէկճէր փաքճայըքճը ակճառակճանք. Թէօկճէօղ տըկճիւր Թէօկճէօղ իկճիրակճան։

— Այճաս մայճարդիպճիկըպճը կէպճէրթայճան մայճարթուպճու կըպճըսիպճին։

Լազէարը կը ձքին, իրէանք ա գէաղը կը դէառնան. Խաշտիւր ախպարը կ'ըսէա.

— Խաղը պաշլայէցէաք (սկսիլ)։

Մնչիկը կը պաշլային։

1. Ծածկաբանութեան եղանակ մը. կը կազմուի իւրաքանչիւր վանկին ձայնաւորին քով աւելցընելով խկ և յետոյ նոյն վանկին ձայնաւորը. ծօ = ծօխկօ։ Ուրեմն վերի ծածկաբանութիւնը կը նշանակէ — ծօ մանչիկ, չօր (ուժով) ծէծ մը քաշի՞նք։

Նոյն եղանակով և կճ կամ պճ մասնիկներով կը կազմուին յաջորդները՝ որոնց նշանակութիւնն է.

Մէնք մեր փայը (բաժին) առինք. Թող տուր, Թող իան (երթան)։

Աս մարդիկը կ'երթան մարդու կ'ըսին։

Մէյ մը զարկէք, Երկու* զարկու* ու՜
Փարռեօն, փարռեօն,
Փարռեօն, փարռեօն (Ներողութիւն)...



229

# ՍԿՍՆԱԿ ԲԱՆԱՍԷՐ

## ՊԱՏԱՍԽԱՆ ԱՌ ՏԻԱՐ Բ. ԽԱԼԱԹԵԱՆՑ

### Ի ՄԱՍԻՆ ՔՆՆԱԴԱՏՈՒԹԵԱՆ

Ի ՍԿԶԲԱՆԷ ՄԻՆՉ Ց՚ԱՐՇԱԿՈՒՆԻ

ԶԱՐՍՏՈՒԹԻՒՆՆ ԶԱՑ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ՈՒՐՈՒԱԳԾԻՍ




ՎԻՆԵՏԻԿ – Ս. ՂԱԶԱՐ

1904

# ՊԱՏԱՍԽԱՆ ԱՌ ՏԻԱՐ Բ. ԽԱԼԱԹԵԱՆՑ

## Ի ՄԱՍԻՆ ՔՆՆԱԴԱՏՈՒԹԵԱՆ

## Ի ՍԿԶԲԱՆԷ ՄԻՆՉ Ց'ԱՐՇԱԿՈՒՆԻ ՀԱՐՍՏՈՒԹԻՒՆՆ

## ՀԱՅ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ՈՒՐՈՒԱԳԾԻՍ

ՏԻԱՐ Բ. ԽԱԼԱԹԵԱՆՑ *Հանդէս Ամսօրեայի* վերջին Հոկ.ի և Նոյ.ի թուոց մէջ կը քննադատէ իմ *Ի սկզբանէ մինչ ցԱրշակունի Հարստութիւնն Հայ պատմութեան* նախափորձ ուրուագիծս, ու շուրջ 25 կէտերու մասին կարգ մը առարկութիւններ ընելով՝ կ'եզրակացնէ թէ, այդ գործն «նոյն իսկ իբրեւ փորձ չէ կարող աջող համարուիլ»։ Ինչպէս խնդրոյ առարկայ երկի յառաջաբանին մէջ ըսած եմք՝ «Դեռ ժամանակն հասած չէ Հայկազեան անուանեալ այս կարեւոր շրջանի իրական պատմութիւնն գրելու ... մենք արժան համարեցինք ցարդ ձեռք բերուած ծանօթութեանց շնորհիւ ուրուագծել հաւանական պատմութեան մեծ գծերն ու գրել

նախափորձն ... » ։ Ուստի ինչպէս կը տեսնուի կատարեալ գործ մը ընելու յաւակնութիւնն ունեցած չեմք, սակայն չեմք կարծեր որ Տիար Խալաթեանցի ըսածին համաձայն զուրկ ըլլայ նա « գիտական նշանակութիւնից » ։ Ուստի պիտի թուեմք աստ մեր յարգելի քննադատին առարկութիւններն մի ըստ միոջէ, ու պիտի քննեմք անոնց արժէքն ։

Տիար Բ. Խալաթեանց իր յառաջաբանով կը յուզէ խորենացւոյ հեղինակութեան հարցն, անշուշտ զովաւ անցողակի կից մը տալով և մեզ՝ որ մեր պատմահօր գործոյն և յիշատակութեանց վրայ կը յենումք երբեմն, ու կը յաւելու թէ՝ « Հեռուն չէ այն ժամանակը երբ մեր պատմահայրն իր վերջնական դատավճիռն կը ստանայ » ։ Մենք կը կարծեմք թէ՝ ընդհակառակն մերազնեայ և օտարազգի բանասիրաց որպէս Հ. Գարոնեանի, Հ. Բ. Սարգիսեանի, Գ. Ս. Մալխասեանի, Նիկոլսկիի, Կոնիբերի և նմանեաց լուրջ ուսումնասիրութիւններն պիտի վերահաստատեն խորենացւոյն՝ երբեմն գիտնոց որպէս Գուտշմիդի, Կարրիէրի, Գ. Խալաթեանցի, և առ հասարակ Վիէննայի մխիթարեան Հարց և այլոց կողմանէ թեթեւ քննութեամբ՝ խախտուած վարկն, որոյ յուսոյ նշոյլներն սկսած իսկ են տեսնուիլ ։

Տիար Բ. Խալաթեանց երբեմն խնդրոց մասին՝ Տիար Կ. Բասմաջեանի համակարծիք ու հետեւորդ տեսնելով զմեզ՝ կարծես աւելի կը բորբոքի ու ուժգնօրէն զարնել կը փորձէ, յորոց դիւրին է գուշակել թէ՝ մեր փարիզաբնակ հմուտ բանասէր բարեկամի հետ հաշտ չէ, ու այս առթիւ անոր հետ հաշիւ յարդարել կ'ուզէ։

Մեր քննադատն իր յառաջաբանում խոստովանելով որ « Հարկաւ նիւթի աղքատութեան շնորհիւ ուսումնասիրաց առջեւ լայն ասպարէզ կը բացուի զանազան հետաքրքրական, շատ անգամ միմեանց հակասող, երբեմն սրամիտ կամ խորիմաստ ենթադրութեանց », աններող կը գտնուի մեզ երբ ենթադրութեանց կը դիմեմք, շատ անգամ նոյն իսկ գուցէ կասկածականով, ինչպէս պիտի տեսնամք ներկայ պատասխանիս մէջ։

Չկրցինք հասկանալ թէ՝ ինչո՞ւ մեր քննադատն փոխան գործիս էջ առ էջ հետեւելու՝ անոր Ա. Մասի մէջտեղէն կը սկսի, ու ապա կը դառնայ այդ մասի առաջին էջերուն՝ աշխարհագրական բաժանմանց խնդրոյն, գուցէ գործին իր տեսակէտով աւելի տկար նկատուած կողմէն սկսելով ընթերցողին վրայ անմիջապէս մեծ ազդեցութիւն մը ներ-

գործելու միտք է, զի այդ աշխարհագրական բաժանմանց հատուածի փոքր ինչ հանիլ կը ձեւանայ՝ ինչպէս պիտի տեսնամք։

Սակայն ինչո՞ւ այսպէս դեդեւիլ, սկսիմք ընդհուպ մեր գիտուն քննադատի առարկութեանց պատասխանել։

Ա. — Տիար Բ. Խալաթեանց կ'առարկէ թէ՝ պարտիմք յիշատակել և հայերու հնագոյն հայրենիքի մասին Քիփէրթի կարծիքն որ «Արաքսի հովիտը, Վանայ ծովի հարաւարեւելեան ափերը և Արածանիի վերին հոսանքը կը համարէ»։ Դիտել կու տամք մեր քննադատին թէ՝ մենք այլ պատմաբանից նման կ'ընդունիմք արդէն երկրին մի բնիկ ժողովուրդ, զոր Ալորոդեան կամ Ուրարտեան կ'անուանեն և որոց գոյութեան մասին որ և է կասկած չկայ։ Այդ ժողովուրդն կ'ակնարկէ արդէն Քիփէրթ, զոր աւելորդ իսկ է յիշատակել. և արդէն այդ աշխարհագրի տուած սահմանն մեր բնապաւառի կեդրոնն է, իսկ մենք եկ ժողովրդեան մասին տուած եմք գիտնոց կարծիքներն։

Բ. — Կիմմերեաններու ի Փոքր—Ասիա մուտքն պատմիչք ընդհանրապէս Գալքանեան թերակղզիէն կը կարծեն[1] ու մենք

1. Niebuhr, Maury, d'Arbois de jaubainville, Abel, Maspero.

այդ վեծամասնութեան հետ այդպէս նկարագրած եմք՝ առանց նկատողութեան առնելու Վինքլէրի կարծիքն որ Կովկասի լեռնաշղթայէն մուտք գտած կը համարի․ հետեւելով անշուշտ Հերոդոտի՝ որ Կովկասիոյ լերանց արեւմտեան ստորոտն քերելով ու սեւ ծովու եզրերն հետեւելով՝ իրենց հայրենիքէն մինչ Փափլակոնիա եկան ու հաստատուեցան կ՚ըսէ։ Այս ընթացքն բնական չկրնար համարուիլ, ուստի և չեմք կրնար Վինքլէրի հետեւելով Կիմմերեաններն հիւսիւսէն եկած համարիլ ու ըսել թէ՝ սոքա ուրարտեան ժողովուրդն երկուքի բաժնեցին, մին դէպ Արեւմուտք և միւսն Հարաւ — Արեւելք մղելով։

Գ․ — Արդարեւ չեմք յիշած Քոէչմէրի անունն որ կ՚ենթադրէ թէ՝ Հայք ի Փռիւգիոյ և ի Թրակիոյ եկած են․ բայց այդ կարծիքն գործոյս մէջ երկիցս յիշատակուած է (էջ 7 և 8), և որ շատերու (Եւդոկսիոս, Հերոդոտոս, Մայիօ, Լեման, և այլն) կարծիքն է արդէն։

Դ․ — Ջեմք յիշատակած և Միռայի անորոշ կարծիքն որ Հայոցս համար կամ երկրի բնիկներն են կ՚ըսէ, և կամ Ասորեստանի անկումէն վերջն Արեւելքէն և կամ Արեւմուտքէն եկած ժողովուրդ մը, զի մեզ համար նշանակութիւն չունին այսպիսի են-

Թադրական տարաամ գաղափարներն ապանց որ և՛ է փաստի, և Միւռա միակն է կարծեմ ի գիտունս՝ որ Հայոցս եկ տարրին Արեւելից գալն կ՚ենթադրէ։

Ե. — Մեր Ազգ. մատենագիրք արդարեւ Ագաթանգեղոսէն սկսեալ «Տուն Թորգոմայ» և «Ասքանազեան»ցեղ՝ իբր հոմանիշ կը համարին Հայ ազգի, սակայն այդ մասի սխալն արդէն բացատրուած, և ապացուցուած է թէ՝ մեր Աստուածաշունչի «Թորգոմայ տուն» և այլոց Togarmaն մասնաւոր երկիր մ՚է Հայաստանի հարաւ — արեւելեան կողմն (Քիփէրթ, Բասմաջեան), իսկ մեր սուրբ Գրոց «Ասքանազն» ու այլոց Askenas կամ Աշկինազն՝ Մինիի մօտ փոքր իշխանութիւն մ՚է, զոր և իբր այդ յիշատակած եմք մեր գործի մէջ ծանօթութեան ձեւօք (էջ 17), առանց ծանրանալու։ Չէի կարծեր որ գրութեանս պէս ուրուագծի մը մէջ պէտք կար անդրադառնալ այս խնդրոյ մասին, և անգամ մ՚եւս ցոյց տալ այդ երկու անուանց մեր ցեղական անուան հետ հոմանիշութիւն չունենալն։

Քանի որ մեր քննադատն կը ծանրանայ այս խնդրոյ վրայ՝ ուստի բացատրեմք թէ՝ ինչո՞ւ մեր նախնիք գործած են այս սխալն։

*Մեր առաջին քրիստոնեայ նախահայրք թունտ կրօնասէր՝ ուզելով իրենց ազգին ծագումն գտնալ ի սուրբ Գիրս, Ծննդոց գրքին մէջ առ այդ ունայն պրպտումներէ ետք՝ կը տեսնան որ իրենց բնագաւառի դրացի երկու փոքր ազգերու՝ Ասքանազեանց և Թորգոմեանց ծագումն տրուած է (Ծննդոց Ժ. 3) սապէս, « Եւ որդիք Գամերայ*[1] *Ասքանազ և Րիփաթ և Թորգոմա ». ուստի և կը համարին թէ՝ Հայերն այս երկու դրացի ցեղերէն տարբեր ծնունդ չեն կրնար ունենալ, ուրեմն և Հայկն Թորգոմայ զաւակն կը համարին*[2]*, որով և Ասքանազ կ'ըլլայ Հայկայ հօրեղբայրն, ուստի և Հայկայ սերունդն կը կոչեն Թորգոմեանն և ազգակից Ասքանազեանց։ Միւս կողմանէ իրենց այս ենթադրութեան հաստատութիւն մը կը տեսնան Երեմիայի (ԾԱ. 27) « Պատուէր տուք յինէն Արարատեան թագաւորութեանց և Ասքանազեան*

1. Նոյի Յաբեթ որդւոյ զաւակն։

2. Եթէ Հայկն Աստուածաշունչ գրոց Գամերայ զաւակ Յաբեթի որդին համարիմք՝ սա Նոյի թոռնորդին կ'ըլլայ, մինչդեռ ըստ Խորենացւոյ՝ Գամերի Թիրաս որդւոյն զաւակն է Թորգոմ, որով և Հայկ Նոյի թոռան թոռն կ'ըլլայ։ Այս Թիրասն յիշատակուած չէ սուրբ Գրոց մէջ։ Այս խնդիր մեր նիւթէն դուրս է, ուստի աւելորդ է առ այս աւելին գրել աստ։

գնդին » խօսքն, յորում կը տեսնան Մարգարէին բերնօք Աստուծոյ հրամանն ուղղեալ Արարատեանց (հիմա Թորգոմեան տան) և Ասքանազեանց՝ այսինքն Գամերայ երկու զաւակաց սերնդոց՝ ի կործանումն Բաբելոնի։

Ծանօթ է բանասիրաց թէ՝ այս հատուածն Եբրայերէն բնագրին մէջ սապէս է[1] « . . . հրաւիրեցէք ի վերայ զորա զազգս, կոչեցէք ի վերայ զորա զթագաւորութիւնս Արարատայ, Մինւոյ և Ասքանազայ ... »։ Յորում կը տեսնուի թէ մարգարէն կոչ կ'ընէ ոչ միայն Արարատեանց և Ասքանազեանց՝ այլ և Մինւոյ երկրին՝ որ Արարատեանց դրացի մի այլ հայկական իշխանութիւն էր։ Ասքանազեանք անշուշտ դրացի են միւս երկու իշխանութեանց, գուցէ և դաշնակից այն ատեն, և « զորս շփոթելու չէ Բիւթանիոյ միւս Ասքանազեանց հետ՝ որոնք իրօք փռիւգական սերնդէ էին[2] »։

Իսկ գալով Թորգոմայ երկրին կամ տան (եբրայերէն Թոգարմահ և ասորեստաներէն Թոգարիմա) ինչպէս ըսինք Հայաստանի Հա-

1. Տես ի ծանօթութիւնս Աստուածաշունչի՝ հրատարակեալ սուրբ Գրոց ընկերութեան կողմանէ, Պաղատալեան տպարանէն Կ. Պոլսոյ, 1895ին։

2. Բասմաջեան, Բազմավէպ 1899 փետր. էջ 65։

րաւ — Արեւելեան կողմն երկիր մ'է, Համանականաբար սեպաձեւ արձանագրութեանց Tilgarimma ամրոցին կողմերն ։

Մեր նախնեաց այս տեսութեան հետեւանօք Ազգ . մատենագրութեան մէջ մենք զմեզ անուանած եմք « Որդիք Թորգոմայ », « Տուն Թորգոմայ », « Թորգոմեան ազգ » ։

Աստուածաշունչ գրոց այս մասին մի քանի խօսքերն երբէք հակառակ չեն թուիր մեզ, զոր օրինակ, Եզեկիէլ « Տունն Թորգոմայ ի ծագաց Հիւսիսոյ » կ'ըսէ (ԼԸ. 6), և այլուր Թորգոմայ տունէն ձիեր և ջորիներ ի Տիւրոս բերուիլն կը յիշատակէ (ԻԷ. 14), զի արդարեւ Թորգոմեանց երկիրն Ասորեստանի համար հիւսիս էր, և թէ անդ որպէս և ի մեզ ձիաբուծութիւնն և ջորեբուծութիւնն ծաղկած էր, և այսօր իսկ է ։

Զ. — Քննադատս կը մեղադրէ զիս որ Հայոցս զանկի չափերու մասին որ և է յիշատակութիւն չեմ ըրած ։ Բ. Խալաթեանց ինք իսկ կը խոստովանի թէ այդ գիտութիւնն « դեռ նոր է և եզրակացութիւններն անհաստատ են » և կը յաւելու թէ՝ տարբեր գիտնոց կարծիքներն իրարու հակասական են, այնպէս որ նախապատիւ է զոնէ առայժմ բոլորովին լռել այդ մասին ինչպէս ըրած

եմք։ Արդարեւ ոմանք կարճագլուխ (Brachycéphale) կը համարին զնախահայս ինչպէս արիական ազգերն, այլք երկարագլուխ (Dolicocéphale) կը կարծեն երկրին հին բնիկներն, ինչպէս սեմական ցեղերն, իսկ ուրիշներ մին թէ միւսն կը գտնեն հիներու մէջ, և այս երկուքի խառնուրդով միջագլուխներ (Mésitocéphale) ալ, որով և անգամ մ՚եւս կը հաստատուի թէ՝ դեռ ժամանակն եկած չէ այս մասին վճիռ արձակելու։

Եթէ օր մը կարելի ըլլայ երկրի վաղեմի բնակչաց և եկ ժողովրդեան գանկի ձեւերն որոշել, մեծապէս լուսաբանուած պիտի ըլլայ և եկ ժողովրդկան ուստի եկած ըլլալու և որ ցեղի պատկանելու հարցն։

Մենք մի այլ գործի պատրաստութեան առթիւ՝ պէտք ունեցանք գծել Փոքր Ասիոյ ցեղերու մարդաբանական քարտէսն, առ այդ շատ մը մարդաբան հեղինակաց գործերն թղթատեցինք, սակայն հնար չեղաւ մեզ մեր նպատակին հասնելու. ուստի և այս պատմական նախափորձի առթիւ աւելորդ համարեցինք այդ գիտութեան դիմել՝ որ դեռ գոնէ մեր բնագաւառի համար լաւ ուսումնասիրուած չէ, և նոյն իսկ ըստ քննադատիս « կարծեաց այս տարբերութիւնն կ՚ապացու-

ցանէ որ խնդիրն տակաւին անորոշ դրու-
թեան մէջ է»։

Է. — Գալով մեր լեզուին ոչ թէ՝ ըստ մեր քննադատի ապացուցուած է թէ՝ Հնդիկ եւրոպականի մի առանձին անդամն է, այլ և գրեթէ համարժէք իրաւունք ունենալ կը կարծեն անոնք՝ որ զայն Իրանականի մի ճիւղն կը համարին, կամ ալ որ Դուրանեական լեզուաց Կումբէն կ'ենթադրեն (?) և ուրիշներ նոյն իսկ սեմական (?)։ Մինչեւ որ վանեան սեպաձեւ արձանագրութիւնք չկարդացուին՝ ներելի չէ որ և է վճիռ արձակել, ոչ բնիկ ժողովրդեան և ոչ ալ եկերու լեզուի մասին։ Ուստի և մեր գրութեան մէջ վաղեմի ժողովրդեան լեզուի նկատմամբ գիտնոց կողմանէ եղած զանազան կարծիքներն թուելէ ետք՝ կը յաւելուի թէ՝ «Ժամանակն հասած չէ դեռ այս կնճռոտ հարցի մասին վճիռ արձակել» նոյնն կը կրկնեմք և աստ։

Ը. — Մեր բնագաւառի վաղեմի բաժանմանց մասին մեր գրածին նկատմամբ Տիար Բ. Խալաթեանց կ'ըսէ թէ՝ հազիւ կարող է աջող համարուիլ»։ Մեր ընդդիմախօսն ընդունելով հանդերձ Ուրարտիոյ Վանայ ծովուն հիւսիսային կողմն գտնուիլն, և Բիանայի երկրին գոյութիւնն իր Տօսպ (Վան) մայրա-

քաղաքովը, չկարծեր որ Վանայ ընդարձակ տէրութեան կից կը ծաղկէր մի առանձին Ուրարտեան իշխանութիւն »: Մենք ըսած չեմք սակայն որ այս երկու իշխանութիւններ մի և նոյն ատեն ծաղկեցան. ո՛չ, այլ՝ երբ Ուրարտուի գերիշխան պետութիւնն տըկարացաւ՝ իր դըրացին Բիանայի պետութիւնն զօրգացաւ ու գահերէց եղաւ: Այդ իշխանութեանց սահմաններն կրնային և փոփոխութեանց ենթարկուիլ, որով Սաղմանասար Բ. Խուբուսկուի իշխանութիւնն նուաճելէ ետք կրնար Վանայ ծովուն Արեւմուտքէն Ուրարտիա մտնել, առանց Բիանայէն անցնելու՝ որ այն ատեն փոքր և երկրորդական իշխանութիւն մ'էր:

Թ. — Մենք Ուրարտու բառն ըստ Ասորեստանեայց (լեզուի) բարձր–երկիր ըսել է գրած եմք, հետեւելով Սէյսի՝ որ իբր ասորեստանագէտ հեղինակութիւն մ'է: Մեր քննադատն կը դատապարտէ զմեզ առ այս, ըսելով թէ՝ « բաւարար հիմք » չունիմք ու ինքն կը յաւելու թէ՝ Խորենացւոյ « երիցս յիշած Որդոշնիք նախարարութեան տոհմը թերեւս իւր անուան մէջ Ուրարտեան ցեղերից մէկի խուլ յիշատակն պահած է »: Կարծեմ թէ մենք աւելի իրաւամբ կրնամք

իրեն ըսել թէ՝ ինք երբէք հիմք չունի այդ ենթադրութիւնն ընելու, և աւելի հաւանական է որ սեպաձեւ արձանագրութեանց Իրդուշանի բառն եղած ըլլայ Որդուշնիքն, որպէս կարծէ Տիար Բ. Բասմաջեան (Բանասէր Հանդէս 1902 էջ 251)։

Մենք կրկին Սէյսի հետեւողութեամբ Նաիրի՝ «Գետք կամ Գետոց աշխարհ» կը նշանակէ ըսած եմք։ Մեր քննադատն ըստ Ֆր. Տելիչ և Վինքլէր ասորեստանագետներու սխալ կը համարի այդ թարգմանութիւնն։ Արդ կը հարցնեմ Տիար Բ. Խալաթեանցի թէ՝ ինչո՞ւ Սէյսի թարգմանութիւնն սխալ կը համարի և Ֆր. Տելիչինն ու Վինքլէրինն ուղիղ։

ԺԱ. — Նաիրիին համար ըսած եմք թէ՝ կը համապատասխանէ «Խորենացւոյ Աղձնիք և Ծոփք նահանգաց» յաւելլով ի ծանօթութեան (էջ 4) թէ՝ Սաղմանասարէն առաջ Նաիրին շատ մեծ էր և մինչ Բարձր-Հայք ու Վանայ ծովը կը ձգուէր»։ Տիար Խալաթեանց կ՚առարկէ թէ՝ «Նաիրին շատ աւելի մեծ էր ու երբեմն Վանայ ծովի արեւմտեան ափերից մինչեւ Ուրմիոյ ծովից արեւմուտքն կը ձգէր» առանց նկատի առնելու մեր ծանօթութիւնն, որ գրեթէ նոյնն կը հաստատէ։

ԺԲ. — Մենք գիտնոց մեծամասնութեան հետ Մուսասիր երկրի համանուն քաղաքն Մուշն համարած եմք. նոյն իսկ Բրոֆ. Գ. Խալաթեանց[1] բաւական հաստատ կերպով ընդունուած աշխարհագրական անուններու կարգն կը դասէ Մուսասիրի Մուշ ըլլալն։ Կրնայ ըլլալ որ Մուսասիրն ըլլայ մի այլ քաղաք, սակայն Բ. Խալաթեանցի տուած փաստերն անզօր են զայն փոխադրելու համար մինչ Ասորեստանեայց սահմանագլուխն, զի ընդ մէջ Մուսասիրի և Ասորեստանեայց Նաիրիի երկիրն կայ։ Եթէ իր տուած օրինակաց մէջ Ասորեստանեայց վեհապետներն կրցած են ընդհուպ Մուսասիր մտնալ՝ զի արդէն Նաիրին իրենց հպատակեցուցած էին, և իրենց երկրին կցած։

ԺԳ. — Մենք ըսած եմք թէ՝ Եգիպտացիք 16րդ դարուն Թուտմէս Գ.ի օրով (1560 Ն. Ք.) տիրեցին և մեր երկրին ու դար մը վերջ 1440ին ատեններն անտի քաշուեցան։ Մեր ընդդիմախօսն կ'ըսէ թէ՝ «Եգիպտացւոց քաղաքական ազդեցութիւնն Հարաւային Ա-

1. «Հին հայաստանի մի քանի աշխարհագրական անունների մասին . . .» յօդուածն, Բանասէր 1900 պրակ Դ։

սորիքից հեռու չանցաւ »։ Պատմագէտք՝ յորս և Մասքերօ, Թուամէս Գ.ի Հիւսիսային Ասորիքն գրաւած ըլլալն կ'ընդունին, զի տիրած Ռօտեննու աշխարհն Ասորւոց և Միջագետաց հիւսիսային կողմերն կ'իյնայ։ Աւելի վերերն եղած ըլլալուն մասին որոշ տեղեկութիւնք կը պակսին. սակայն երբեմն պատմաբանք որպէս Բրագշ ի շարս այս աշխարհակալի տիրած երկրաց յիշատակուած Բմէնէնն Արմենեան ըլլալն կ'ենթադրեն։

Մինչև որ հաստատուն ապացոյցներ չունենամք Բմէնէնի բուն նշանակութեան մասին չեմք կրնար հրաժարիլ այս կարծիքէն, մանաւանդ որ մենք Եգիպտական քաղաքակրթութեան հետքեր կը տեսնեմք ի մեզ, որպէս ի ստորև պիտի ըսեմք։ Մեզ հետ է այս մասին ի մերայնոց Տիար Բասմաջեան (Բանասէր, 1899 Գիրք Ա.)։

ԺԴ. — Ըստ մեզ թէ՝ Հայկական իշխանութիւնք 9րդ դարուն դաշնակցական միութիւն մը կազմած էին իրենց գլուխ ունենալով Արամէ՝ Ուրարտիոյ թագաւորն։

Մեր քննադատն կը մերժէ ընդունիլ մի ազգային դաշնակցութիւն յառաջ քան Սարդուրիս Ա. և Արամէի յաղթուելն անոր իշխանութեան իսպառ բարձումն չնշանակեր կ'ըսէ։

Եթէ արդարեւ այսպիսի դաշնակցութիւն մը գոյութիւն ունեցած չըլլար՝ ինչպէս Նաիրիի եւ այլ փոքր իշխանութիւնք աղջի բերան այնչափ ուժգնօրէն դիմադրած կ՚ըլլան Սարդամանասար Բ.ի, եւ ինչպէս Արամէ՝ լոկ արքայիկ մը՝ կը յաջողի ճակատիլ Ասորեստանեայց վեհապետին դէմ, ու կը պարտաւորէ զայն աւելի կարեւորագոյն բանակներով իր վրան գալու։ Խուբուշկուն՝ Նաիրիի վիճակներէ մին՝ իր համանուն ամուր քաղաքուն անշուշտ այս դաշնակցութեան վրայ յենլով յանդգնեցաւ դիմադրել Ասորեստանեայց զօրաւոր բանակին։

Նաիրիի մէջ Խուբուշկու գլխաւոր քաղաքի մը գոյութիւնն՝ երբէք պատճառ մը չէ Արամէի այս դաշնակցութեան գլուխն գտնուած ըլլալուն, եւ ոչ ալ Արամէի մահուան չյիշատակուիլն, ու անոր Աստուածոց գերի տարուած չըլլալն կարող է Արամէի իշխանութեան խափառ բարձուած չըլլալուն մի ապացոյց համարուիլ։

Այս դաշնակցութեան մասին մեզ համակարծիք է եւ ի մերայնոց Հայր Սանդալճեան [1]. իսկ Արամէի չարաչար յաղթութեամբ իր

1. Հանդէս ամսօրեայ 1901ի Մարտ–Ապրիլ թիւ։

ցեղի հարստութեան վերջ գտնելուն մասին մեզ կը ծայնակցին՝ վերոգրեալ մերազնեայ գիտունքն զատ Տիար Բասմաջեան[1] և եւրոպացի պատմագիրք յորս և Մասբերօ[2]:

Մեր քննալատ Արամէի համար կ'ըսէ թէ՝ «Արամէն յանկարծակի հանդէս է գալիս պատմութեան մէջ և նոյնչափ յանկարծակի անհետանում»: Զարմանալի է արդարեւ Բ. Խալաթեանցի գաղափարն: Կարելի՞ է միթէ կարծել թէ յանկարծ երեւան ելած որ և է անձ կարենայ իշխանութիւն մը հիմնել, ու այնչափ զօրաւոր ըլլալ՝ որ չափուի բազմապարեան հզօր կայսրութեան մը բանակներուն հետ: Եթէ իրօք է այդ՝ պէտք է զայն ի շարս հրաշից դասել և Արամէն աշխարհի ամենէ մեծ վարչագէտն ու պատերազմիկն հռչակել, և կարծեմ ի պատմութեան դեռ այդպիսի մի օրինակ տեսնուած չէ: Արդարեւ Արամէի նախորդաց անունն մեզ անծանօթ է, սակայն գիտեմք թէ՝ Ուրարտացիք ԺԲ. դարուն իսկ չափուած են Թագլաթ Փալասար Ա.ի հետ և այդ հզօր Ասորեստանցւոյն դիմադրելու համար ար-

1. Բանասէր 1902 Յունիս:
2. Histoire ancienne pag. 427.

դէն բաւական կազմաւորեալ իշխանութիւն մը ունեցած ըլլալու էին [1] ։

ԺԵ. — Մենք ալ Ձեզ հետ կը հարցնեմք թէ ո՞վ է Լուդիպրին. չեմք յանդգնիր զայն թագաւոր ենթադրել և Արամէի յաջորդ, ինչպէս կ'ընեն Սէյս և Հայր Սանդալճեան։ Կը կարծեմք շատերու հետ թէ՝ սա մի այլ ցեղի կը պատկանի և որոյ զաւակն Սարիդուրիս Ա. մի տարբեր հարստութեան հիմնադիրն է, որ շուրջ 828ին ատեններն իր աթոռն Տուսպաս (Վան) փոխադրեց։

ԺԶ. — Բ. Խալաթեանց չներեր մեզ որ Խորենացւոյ խօսքն ընեմք, ու անոր ներկայացուցած մի քանի հայկազն իշխանաց՝ սեպաձեւ արձանագրութեանց Բիանայի թագաւորաց հետ նոյնութիւնն հաստատել ջանամք, ինչ որ մեզմէ առաջ ուրիշներ ալ ըրած են. ո՛չ, նա կը պահանջէ որ մեր պատմահօր անունն իսկ չտամք. սակայն մենք երբ մեծ նմանութիւններ կը տեսնամք մեր պատմահօր գրածին և վիմագրոշմ արձանագրութեանց իշխաններու միջեւ՝ չեմք կարող զայնս երեւան չհանել, և նորութեան

1. Տես առ այս Տիար Կ. Բասմաջեանի Note an the van Inscription յօդուածն Journal of the royal Asiatic Societyի 1897ի Յուլիսի պրակին մէջ։

*Հետեւած ըլլալու համար բարձիթողի ընել Խորենացին, թող որ մեզնից առաջ այդ անուններու ոմանց նոյնացումն ըրած են արդէն ուրիշներ։ Նիկոլսկին արդէն Արգիշտիսն Արագած կը համարի և որ արդարեւ Արմենակայ երկրորդ անունն է ըստ Խորենացւոյ։ Սարիտուրխս Բ.ի Արամայիս, Ռուսա Ա.ի Հրաչեայ, և Ռուսա Բ.ի Սկայորդի ըլլալուն համար չունենալով բաւական զօրեղ փաստեր՝ արդէն հարցական նշաններով դրած եմք* (*էջ* 12, 13, *և* 14)։

**Ժէ.** — *Քսենոփոնի՝ Կիւրոսի խրատ անուն գործն շատեր վէպի ձեւոք իրական պատմութիւն կը համարին. ինչո՞ւ մենք չօգտուիմք անկէ, մանաւանդ երբ շատ մասերու մէջ համաձայն է նա մեր պատմահօր աւանդածին։ Քսենոփոն Տիգրանի մասին կը խօսի իբր մի արքայազուն իշխան՝ առանց տալու անոր թագաւոր հօր անունն՝ զոր Երուանդ կ՚անուանէ մեր պատմահայրն։ Ինչո՞ւ Քսենոփոնի այդ գործէն՝ իբր ժամանակակից մի երկէ՝ չօգտուիմք, ու չջանամք նովաւ ամբողջացնել Խորենացւոյ այդ մասին պատմածներն, նամանաւանդ երբ անոնց միջեւ նմանութիւն և համաձայնութիւն կը նշմարեմք։*

Նոյնն կրնամք ըսել և Վահագնի համար, որոյ գործերն մեզ կը պատմեն սեպաձեւ արձանագրութիւնք, առանց անոր անունն տալու, զոր մեզ կ'աւանդէ մեր պատմահայրն։ Այս քաջարի հայկազն իշխանն՝ ըստ սեպագիր արձանագրութեանց իսկ՝ կը դիմադրէ ու երիցս կը յաղթէ Դարեհ Առաջնոյ անյաղթելի բանակին. և միայն Պարսից արքայից արքային 4րդ արշաւին տեղի կու տայ, սակայն փորձելով միշտ թօթափել իր լուծն։

Այսպիսի յանդուգն ու կորովի իշխանի քաջագործութիւնք կ'արժէր որ Աստուածացընէին զայն և ինչ որ ըրաւ ժողովուրդն յետ անոր մահու։ Եւ մի՞թէ սա սովորաբար տեսնուած մի երեւոյթ չէ քաջարի իշխաններու համար, և մի՞թէ ներելի և Վահագնը դիցաբանական և առասպելական համարել՝ պաշտուած ըլլալուն համար։ Գուցէ այս դիւցազնին բուն անունն Վահագն չէր, այլ ապա իր քաջագործութեանց համար տրուեցաւ իրեն այս անունն կամ մականունն, որ այնչափ կը նմանի Աւեստական Վերեթրագնին կամ Վետական Ագնիին կամ Վան-Ագնիին որ պատերազմի ու յաղթութեան ոգին կը ներկայացնէր, և որոյ մասին երգեր հիւսուեցան ու երգուեցան։

ԺԸ. — Վահագնի իբր յաջորդ՝ Խորենացւոյ տուած իշխանաց շարքին՝ մինչեւ Վահէի համար ըսած եմք որ հաւանականաբար Հայաստանի հիւսիսային արեւելեան կողմն Երասխի և Կուրի հովտաց միջեւ կ'իշխէին. զայդ ցոյց տան Յունաց պատմիչներու խօսքերն[1], մի և նոյն գրութիւններէ այնպէս կ'երեւի թէ՝ սոքա հարկատու էին պարսիկ իշխանութեանց որ շատ զօրաւոր էր այդ ատեններն, և նոյն իսկ Հայաստանի հարաւային և արեւելեան մասերուն տիրած էին ու զայնս կցած իրենց իշխանութեան՝ որոյ 11րդ Նահանգն կը ներկայացնէին։

ԺԹ. — Ազգի մը քաղաքակրթութեան պատմութիւնն բնականաբար կը բաժնուի այնչափ ժամանակամիջոցի՝ որչափ անգամ որ իրեն տիրող և կամ իրեն հետ երկար ատեն շփում ունեցող ժողովրդեան մը ազդեցութիւնն կրած է։ Արդ՝ գործիս պատմական մասին մէջ քանի որ տեսանք թէ՝ հաւանականաբար ԺԶ դարէն մինչ ԺԵ եգիպտական տիրապետութեան տակ գտնուած եմք, ԺԵ.էն մինչ Է Ասորեստանեայց հետ

1. Ա. Պալասանեան պատմ. Հայոց էջ 63. և Տիեզերական պատմութիւն Հայր Գաթրճեանի։

Նոյնն կրնամք ըսել և Վահագնի համար ; որոյ գործերն մեզ կը պատմեն սեպաձեւ արձանագրութիւնք, առանց անոր անունն տալու, զոր մեզ կ'աւանդէ մեր պատմահայրն։ Այդ քաջարի հայկազն իշխանն՝ ըստ սեպագիր արձանագրութեանց իսկ՝ կը դիմադրէ ու երիցս կը յաղթէ Դարեհ Առաջնոյ անյաղթելի բանակին. և միայն Պարսից արքայից արքային 4րդ արշաւին տեղի կու տայ, սակայն փորձելով միշտ թօթափել իր լուծն։

Այսպիսի յանդուգն ու կորովի իշխանի քաջագործութիւնք կ'արժէր որ Աստուածացընէին զայն և ինչ որ ըրաւ ժողովուրդն յետ անոր մահու։ Եւ մի՞թէ սա սովորաբար տեսնուած մի երեւոյթ չէ քաջարի իշխաններու համար, և մի՞թէ ներելի և Վահագնը դիցաբանական և առասպելական համարել՝ պաշտուած ըլլալուն համար։ Գուցէ այս դիւցազնին բուն անունն Վահագն չէր, այլ ապա իր քաջագործութեանց համար տրուեցաւ իրեն այս անունն կամ մականունն, որ այնչափ կը նմանի Աւեստական վերիտրակաին կամ վետական Ագնիին կամ Վահ-Ագնիին որ պատերազմի ու յաղթութեան ոգին կը ներկայացնէր, և որոյ մասին երգեր հիւսուեցան ու երգուեցան։

ԺԸ. — Վահագնի իբր յաջորդ՝ Խորենացւոյ տուած իշխանաց շարքին՝ մինչեւ Վահէի համար ըսած եմք որ հաւանականաբար Հայաստանի հիւսիսային արեւելեան կողմն Երասխի և Կուրի հովտաց միջեւ կ'իշխէին. զայդ ցոյց տան Յունաց պատմիչներու խօսքերն[1], մի և նոյն գրութիւններէ այնպէս կ'երեւի թէ՝ սոքա հարկատու էին պարսիկ իշխանութեանց որ շատ զօրաւոր էր այդ ատեններն, և նոյն իսկ Հայաստանի հարաւային և արեւելեան մասերուն տիրած էին ու զայնս կցած իրենց իշխանութեան՝ որոյ 11րդ Նահանգն կը ներկայացնէին։

ԺԹ. — Ազգի մը քաղաքակրթութեան պատմութիւնն բնականաբար կը բաժնուի այնչափ ժամանակամիջոցի՝ որչափ անգամ որ իրեն տիրող և կամ իրեն հետ երկար ատեն շփում ունեցող ժողովրդեան մը ազդեցութիւնն կրած է։ Արդ՝ գործիս պատմական մասին մէջ քանի որ տեսանք թէ՝ հաւանականաբար ԺԶ դարէն մինչ ԺԵ եգիպտական տիրապետութեան տակ գտնուած եմք, ԺԵ.էն մինչ Է Ասորեստանեայց հետ

1. Ս. Պալասանեան պատմ. Հայոց էջ 63. և Տիեզերական պատմութիւն Հայր Գաթրճեանի։

շարունակական շփումներ ունեցած ենք, ապա Մարա-Պարսկական կայսրութեան, Հուսկ ուրեմն Մակեդոնացի Յունաց ու անոնց յաջորդէից, ուստի և մեր ուսման առարկայ միջոցն պարտիմք բաժնել այնչափ ժամանակամիջոցներու՝ չմոռնալով և յառաջ քան եգիպտական տիրապետութիւնն իբր Նախնական ժամանակ յիշատակել։

Այս վեց շրջաններէ առաջնոյն մասին խոստովանելով մեր տգիտութիւնն, մի քանի Հաւանական ենթադրութիւններ միայն ըրած ենք երկրի քաղաքական վիճակին և ժողովրդեան կրօնի մասին։ Գալով երկրորդին՝ զոր չընդունիր մեր քննադատն, զի ինչպէս տեսանք եգիպտական տիրապետութեան մը գոյութիւն իսկ չգոյ կը համարի. իսկ անոնց հմտութեան և հաւատալեաց ի մեզ թողած հետքերու գալով՝ մեր ցոյց տուած օրինակներն ու ըսածներն զօրաւոր չգտնար, առարկելով թէ՝ զարեջուրի պատրաստութիւնն Ասորեստանեայք ալ գիտէին (զոր ըստ մեզ մի և նոյն տիրապետութեան ատեն յեգիպտացւոց ուսան), թէ՝ կենդանապաշտութիւնն ամէն նախնական ժողովրդեան մէջ կար, բայց կը լռէ մեր երրորդ և զօրաւոր փաստի համար, այն է սօթական կամ Շնիկ աստեղ շըր-

ջանի հմտութեան նկատմամբ, զոր ուսած և որդեգրած են Հայք յԵգիպտացւոց և զայն Հայկայ շրջանէ անուանած են։

Առանց քաղաքական շփման՝ չենք կարող երեւակայել մի այլ միջոց՝ որով կարելի ըլլայ Եգիպտացւոց տոմարագիտական հմտութիւնն մեզ անցնիլ։ Աւելի բնական էր որ մենք մեր դրացի Ասորաբաբելական ազգաց տոմարական դրութիւնն ընդունած ըլլայինք քան թէ՝ Եգիպտացւոցն, այնչափ հեռու ազգի մը, նամանաւանդ որ մեր դրացիններն ոչ նուազ քան եգիպտացիս աստեղագէտք և տոմարագէտք էին. և առ այս ԺԶ. դարէն սկսեալ մեզ հետ դար մը եգիպտական լուծն կրելով հանդերձ՝ նախապատիւ համարեցին իրենց ազգային տոմարն շարունակել՝ քան որդեգրել տիրող ազգինն. սակայն նոյնն եղած չէ հաւանականաբար մեզ համար, որ զուրկ էինք դեռ գուցէ տոմարական հաստատուն դրութիւն մ'ունենալէ։

Ի. — Բ. Խալաթեանց կ'ընդունի Ասորաբաբելական քաղաքակրթութեան ազդեցութիւնն, սակայն չկարծեր թէ՝ դա ԺԵ դարէն սկսած է, և աւելի ուշ ատեններէ կ'ենթադրէ։ Քանի որ Ասորեստանեայց արքայից դէպ հիւսիս առաջին արշաւն կը

սկսի ոչ թէ Տիգրան Փառատարով՝ ինչպէս կ'ըսէ մեր քննադատն՝ այլ անկէ առաջ և նոյն իսկ Սաղմանասար Ա.ի (1330–1310) Նաիրիի և Մուսասիրի տիրապետելու փոր-ձէն ալ առաջ՝ Ասուրբանիպալէտի որով (1400) որ տիրած է Սուբարի երկրին։ Այս երկիրն ըստ Հ. Սանտալճեանի «Մոփաց աշխարհին միջին մասն» կը ներկայացնէր։ Ուստի գոնէ այս ատեններու շփումներն կրնային Ասորա-բաբելական քաղաքակրթութեան ազդեցու-թեան արշալոյսն համարուիլ։ Արդէն մենք խոստովանած եմք թէ՝ այդ յարաբերութիւն-ներն սերտ չէին Թ. դարէն առաջ (էջ 21)։

ԻԱ. – Մենք ըսած եմք թէ՝ Ասորաքաղ-դէական «կրօնն մեծ ազդեցութիւն գործած ըլլալ կը թուի. զի ի Հայս կը հաստատեմք այս շրջանին մէջ գրեթէ Ասորեստանեայց նման Աստուածութիւնք։ Այդպարեւ անոնց բարձրագոյն երրորդութիւնն Սին, Շամալ, և Ռամմանու ի մեզ ներկայացեալ կը տես-նեմք Խալդի, Արդէնի և Տէիշբա անուանց տակ։ Ասոնց երկու վերջնոց մասին կաս-կած չկայ, թէ ի Մեզ և թէ Ասորեստա-նեայց համար Արեգական և Մթնոլորտի ներկայացուցիչ Աստուածութիւններ են։ Գա-լով առաջնոյն Խալդիին՝ որ մեր նախահարց

բարձրագոյն Աստուածութիւնն էր՝ Թէպէտ Լուսնոյ Աստուած ըսած չէ, սակայն մէկ կողմանէ դիտելով թէ՝ այս երրորդութեան երկու անդամներն նոյն են Ասորաբաբելացւոց Աստուածութեանց հետ, ենթադրեցինք թէ՝ երրորդն ալ համարժէք եղած ըլլայ. նամանաւանդ որ շատերու կողմանէ Հայք Լուսնապաշտ անուանեալ են, որով և ոմանք նոյն իսկ Արմինի բառն եբրայեցերէնով Ար-Մինի՝ Լեառն — Լուսնի թարգմանած են։

Մեր քննադատի յիշեցուցած Սիլարդի Լուսնի Աստուածութիւնն յիշատակած եմք յէջ 22 Սըշառիտիս անուանելով զայն, որ թէպէտ Ասորեստանեայց Լուսնի գաղափարանիշով կը գրուի, սակայն թէ մի գուցէ անոր մի տորոգելիքի ներկայացուցիչն ըլլայ ի մեզ։

Ասորեստանեայց կրօնի խոր ազդեցութեան ապացոյց չէ՞ նաև մոլորակ Աստուածոց ի Մեզ հաւանական ընդունելութիւնն՝ որոնց միայն Լուսնթագի ներկայացուցիչ Մարդուկի շուներն՝ Ասորեստանեայց «կենդանացուցիչ դիակացն» մեր պատմագրաց մէջ Ցարալէզ անուամբ կը ներկայանան, մի և նոյն յատկութեամբ։

ԻԲ. — Տիար Խալաթեանց «վերջին աս-

տիճանի չոր ցամաք » կը գտնէ Ուրարտեանց արուեստներու ընդհանուր պատկերն ։ Քննադատս կը մոռնայ արդեօք՝ թէ՝ նախափորձ ծրագիր մ՚է մեր գծածն, ու վերջապէս մեր առ այս գրած տողերն մէջ բերելով կը յաւելու թէ՝ գոնէ չեմ յիշատակած « Մինուասի հռչակաւոր ջրանցքներն ». սակայն թող ներէ մեր ընդդիմախօսն որ իրեն յիշեցնեմ թէ՝ Մինուասի կամ իր մօտ շինածներն աւելի ջրմուղներ էին և որք երկիցս յիշատակուած են, մին նոյն իսկ իր մէջ բերած հատուածի մէջ, և միւսն էջ 12, սապէս. « սորա (Մինուաշ) թագաւորութեան առաջին տարիներն՝ մայրն Թարի–րիաշ իբրեւ խնամակալ կ՚աջակցի իր զաւկին, ու այդ միջոցին շինել կու տայ Տոսպայ նշանաւոր ջրմուղները՝ զորս Շամիրամայ կը վերագրեն »։

Քարաժայռից մէջ փորուած սենեակներն հեռի են ճարտարապետական և գեղարուեստական մեծ նշանակութիւն ունենալէ, և յայտնի չէ թէ դոքա արքայից գանձարաններ էին, ապաստանարաններ, թէ գերեզմաններ։

ԻԳ. — Մեր քննադատն կ՚առարկէ թէ՝ սեպաձեւ արձանագրութեանց մէջ յիշուած յատուկ անուններու հաւանական արժէքով

ցանկին մէջ կան անուններ՝ որք զուրկ են «նոյն իսկ արտաքին նմանութիւնից» և այդ անուններն են Ուշի դուլինի = Օշական, Ուխլիտու = Ուտի, Արգիստինիլի = Արագածոտն, Ուիշուանի = Ուշտունի։

Սակայն Տիար Խալաթեանց պէտք է գիտնայ թէ՝ այդ անուններու համարժէքութիւնն արդէն ընդունուած է շատ մը գիտնոց կողմանէ, յորս և իր սաէպ յիշատակած գիտունն Նիկոլսկի, որոյ «Բևեռագիր արձանագրութիւններ Ռուսաց Հայաստանում» գործոյն Բռօֆ. Խ. Ցովհաննէսեանցի կողմանէ քաղուածաբար թարգմանութիւնն հրատարակեալ ի «Բազմավէպ» հանդիսի, և ի մասնաւոր տետրակի (էջ 63) Ուշիտուլինի՝ Օշական, և Ուխլտուի՝ Ուտի ըլլալն իբր ընդունուած ճշմարտութիւններն կը հրատարակէ։ Հեղինակն Արգիստինիլիի՝ Արագածոտն ըլլալն նոյն գործի մէջ ընդ երկար գրելէ ետք՝ իբր եզրակացութիւն կ'ըսէ (էջ 41) «Ուրեմն շատ բնական է նոյն բառի մէջ տեսնել Ուրարտական Արգիշտի (Aragatz) ի Հայացումն, իսկ Արագածոտնի մէջ Argistihi-na»։ Գալով Ուիշուանի = Ուշտունի ըլլալուն՝ Նիկոլսկի (էջ 63) հարցական նշանով կը յայտնէ իր կասկածն, սակայն զայդ ա-

ւելի հաստատական կերպով կ'ընդունի Տիար Բասմաջեան[1] և որ շատ յաջող կրնայ համարուիլ։

Այս առթիւ մեր հմուտ Բանասէրի մասին Ձեր անարգական տողերուն նկատմամբ չեմ իսկ պատասխաներ, զի նա երբէք ինձ պէտք չունի իր դատն պաշտպանելու համար։

ԻԴ. — Մենք մեր խնդրոյ առարկայ գրութեան մէջ եզրակացութիւնն միայն տուած եմք մեր «Ծագումն Հայ տառից» գործի, յորում ապացուցած եմք թէ՝ մեր այժմու գրերն փոքր ինչ ձեւափոխեալ Փիւնիկ գրեր են՝ մեծ մասամբ՝ որք վաղ ժամանակաւ մուտք գտած են ի մեզ և գործածուած, զորս կատարելագործեց ապա Մեսրոպ ու անոնց վրայ մի քանիներ՝ մեր դրացի ազգերէն առաւ ու այսպէսով մեզ տուաւ մի կատարեալ այբբենարան։ Մեր պատմական ուրուագծի մէջ ըսած եմք թէ՝ այդ գրերն Փիւնիկեայէն մեզ անցան ձեռամբ Արեւմտից եկող եկ ժողովրդեան՝ ուր արդէն այդ Փիւնիկ—Փռիւքական գրերն ի գործածութեան էին՝ որպէս կը տեսնուի Դ.րդ դարուն (Ն. Քա.) Արեւմը-

1. Բանասէր, 1902 Հոկ.։

տեան Հայոց վրայ իշխող Թիւրպաղ իշխանի դրամներուն վրայ ։ Մեր ընդդիմախօսն առանց մեր տուած փաստերն հերքելու և մեր առ այդ գրած բուն գործին մէջ տրուած ապացոյցներն ցրելու, բացագանչութիւններով մեզմէ պարզ և անհերքելի ապացոյցներ կը պահանջէ. այս առթիւ անցողակի հարուած մը տալով և Տիար Բասմաջեանի՝ որոյ կարծիքն յիշատակած էինք այս մասին։

ԻԵ. — Մակեդոնացւոց ու ապա Սելեւկեանց ու իրենց յաջորդներու շուրջ մէկ ու կէս դար մեր երկրի վրայ տիրելովն՝ անշուշտ այդ ժամանակամիջոցին իրենց յոյն քաղաքակրթութեամբ ու պաշտօնական լեզուաւ՝ ազդեցութիւն մը ներգործեցին, որ անշուշտ շատ աւելի զօրացաւ ապա Դ. դարուն՝ քրիստոնէութեան ի մեզ պաշտօնապէս մուտքով, յոյն կղերէ ի Մեզ գործունէութեամբ և աւելի ուշ Հայ ուսանողութեան Յունաց իմացական զարգացման կեդրոններն դիմելովն, որ այնչափ սովորական եղաւ ապա Ե. դարուն։

*

Յուսամ թէ մեր համառօտ պատասխանն

համոզկեր եղաւ թէ մեր յարգելի քննադատին, և թէ բանասէր հասարակութեան։

Կը սիրէինք որ այսպիսի ծանրակշիռ խընդրոց մէջ բանասէրք միմեանց օժանդակէին գործոյն մեծ գիծերն քննադատելով և լուսաբանելով, և ոչ թէ մանրամասնութեանց և երկրորդական հարցերու մէջ տեսնուած առ երեւոյթս թերութիւններն և կարծեաց տարբերութիւններն խծբծելով ապարդիւն վիճաբանութեանց տեղի տալին։

Կը կնքեմք ներկայս յիշեցնելով մեր յարգելի քննադատին ֆռանսական սա առածն « La critique est aisé et l’art est difficile »։

# ՂԱԶԱՐ ՓԱՐՊԵՑԻՈՅ

## ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ՅԱՌԱՋԱԲԱՆԻՆ

## ՆՈՐ ԸՆԹԵՐՑՈՒՄ ՄԸ


ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԵՑ

Հ. ԼԵՒՈՆ ԱԹՃԵԱՆ

Ի ՄԽԻԹԱՐԵԱՆ ՈՒԽՏԷ







ՎԵՆԵՏԻԿ

ՏՊԱՐԱՆ Ս. ՂԱԶԱՐՈՒ

1916

# ՂԱԶԱՐ ՓԱՐՊԵՑԻՈՑ

## ՅԱՌԱՋԱԲԱՆԻՆ

### ՆՈՐ ԸՆԹԵՐՑՈՒՄ ՄԸ

---

*Փարպեցւոյ «յառաջաբանին» առաջարկած նոր ընթերցմանս դասաւորութեան ժամանակ, առջևս ունէի իբրև բնագիր Գ. Տէր-Մկրտչեանի և Ս. Մալխասեանի ըրած վերջին հրատարակութիւնը* (*Տփղիս*, 1904)։

*Այս յարգելի երկու բանասէրները ինչպէս որ կ'ըսեն գրքին* 7*երորդ էջին ծանօթութեան մէջ, ընդունած են Նորայրի կատարած դասաւորութիւնը՝ որ ի Լումայ գրական հանդէսին* 1896 *տարւոյն Բ գրքին* 309–319 *էջերուն մէջ, և անոր դրած չորս ընդհատութիւնները* (lacunes) *մին միայն ընդունելով.... «Մենք հետեւեցինք Նորայր Բիւզանդացու առաջարկած դասաւորութեան որ առ այժմ ամենից հաւանականն է և յաջողը։ Ն. Բ. այս յառաջաբանում չորս տեղում պակասորդ է գըտ-*

նում։ Մենք անպայման պակասորդ ենք նկատում միայն երրորդ տեղում, ինչպէս բացատրած ենք ծանօթութեան մէջ»։

Մեծ. Նորայր յառաջաբանին դասաւորութիւնը կատարելէն վերջ, խօսելով Վենետկի Մխիթարեանց Ղազար Փարպեցւոյ պատմութեան երեք տպագրութիւններուն վրայ, զանց չըներ հեգնել մանաւորապէս Գ. տպագրութիւնը. (Լումա էջ 316)... «երրորդ տպագրութեան կարեւորութիւնը յոյժ մեծ է, քանզի բնագրին այլայլութեանցն և խանգարմանց չափ չի կայ, սկսեալ ի յառաջաբանէն»։ Եւ այս բացառութեան պակասութիւնը, անշուշտ, որովհետև մեծ տարբերութիւն մը կար իր և Գ. տպագրութեան հրատարակած յառաջաբաններու դասաւորութեանց մէջ և կամ, զոր չեմ կարծեր, Նորայր ուզած ըլլայ հերքել Ե. Մատաթեանի Բ. տպագրութեան[1] առթիւ ըրած գովեստը «Այդ գործով (ձեռագիրները ուղղելու) զբաղուել են մեր մէջ մանաւանդ Վենետկի Մխիթարեան վարդապետները, որոնց ջանքին պարտական ենք ի միջի այլոց Ղազարի վերջին տպագրի մէջ մտցրած բարեփոխութիւնները». (Հանդէս

1. Ղազար Փարպեցի 1873 Վենետիկ. Հրատարակողն Հ. Ալիշան։

Ամսօրեայ 1887 էջ 166)։ Սակայն ի սէր ճշմարտութեան ըսենք որ Գ. տպագրութեան դասաւորութիւնը կը գերազանցէ Նախորդը, և իբրև արդիւնք՝ կրնայ համեմատուիլ մինչև իւր օրերը առաջարկուած ամէն նոր ընթերցման հետ, և եթէ Ե. Մատաթեանի, Բ. տպագրութեան առթիւ, առաջարկած քանի մը դասաւորութիւնները ընդունէր, անպայման նա գերազանցութիւնը պիտի ունենար բոլոր եւրեցածներուն վրայ [1]։

Արդէն Տփղիսի հրատարակութիւնը արդարութեան պարտք մը կը հատուցանէ երբ կ'ըսէ. «Երրորդ տպագրութիւնը, բացառութեամբ Պատմութեան Առաջնորդին մէջ աւելացրուած հատուածների բաւական յաջող դասաւորութեան.....» (էջ Դ. սիւն Բ. տող 12–14)։

Սուքիաս Վ. Պարոնեան Բանասէր Հանդէսին մէջ (1899 էջ 267) փորձած է նոր ընթերցում մը։ Իւր ուսումնասիրութեան

1. Հ. Բարսեղ Վ. Սարգիսեան ևս համակարծիք է ինձ այս մասին։ Բազմավէպի 1904 տարւոյն 52–63 և 129–133 էջերուն մէջ յետ հմտաբար գրչագիրներու բաղդատութեամբ քննադատելու Տփղիսի հրատարակութիւնը, կը մերժէ Նորայր Բուզանդացւոյ ենթադրած չորս ընդհատուածները։

ընթացքին (էջ 268) այն եզրակացութեան կը յանգի «որ Փարպեցւոյ յառաջաբանը, ցաւալի է ըսել, ամբողջ չէ, տեղափոխութիւններ զատ՝ կրած է նաև կորուստ մը բաւական ընդարձակ։ Անվնաս պահուած են անոր սկզբնական և վերջնական մասերը, և այդ երկու մասանց մէջն է դատարկութիւնը. սակայն բաց ի այդ երկու մասերէն, կը գտնուին նաև քանի մը անկցորդելի մասեր հատուածին, որ անշուշտ կորուսեալ մասին կը պատկանին, զորս կորուսեալ թղթոց թեկորներուն վրայ գտնելով խղճաւոր ընդօրինակողը զանց չէ ըրած իր խառնափնդորեալ կոյտին մէջ մէյ մէկ խորշ նոցա և շնորհել ըստ պատահման»։

Գարոնեան կը համարի յաղթութեան դրօշը խլել Նորայրի ձեռքէն երբ համեմատաբար կ՚առաջարկէ Մխիթարեան Հարց՝ որ եթէ «արժան համարին իրենց նոր տըպագրութեան մէջ զայս մեր ուղղութիւն և ընդունել, պիտի համարձակիմք խնդրել որ զայդ նոր տպագրութիւնն ուրածայ հրատարակուի իբր հատորակից «Նախնեաց Մատենագրութեան»։

Նոր տպագրութիւնը կատարուեցաւ ոչ ի Վենետիկ այլ Տփղիս, և Գարոնեանի փափաքին՝ արժանացաւ Նորայր։

Իսկ ես իմ կարգին բանասէրներուն՝

կ՚առաջարկեմ Ցառաջաբանին նոր դասա-
ւորութիւն մը։

Իմ եզրակացութիւնը այն եղաւ որ կա-
րելի է յառաջաբանին ցրուած բեկորները
ժողվելով, տրամաբանական և պատմա-
կան կարգով մը յօրինել ամբողջ և ան-
պակաս յառաջաբան մը։

Ընթերցողներուն՝ յաջողութեանս վկա-
յութիւնը տալ։

Ա. — Սկիզբն առաջին գրոց պատ-
մութեան Հայոց, որում սկիզբն ա-
րարեալ պատմեաց սուրբ այրն ե-
րանելի Ագաթանգեղոս, ի մահուն
Արտաւանայ յԱրտաշրէ յորդւոյ Սա-
սանայ բռնաւոր Ստահրացւոյն. և
զդարձ աշխարհիս Հայոց յանդիմու-
թենէ կռապաշտութեան յաստուած-
գիտութեան ճշմարտութիւն ի ձեռն
սրբոյ Նահատակին Գրիգորիսի. յորոյ
անուն և զգիրսն անուանեալ կոչեն
Գրիգորիսի։

Երկրորդ գրոց սկիզբն արարեալ
պատմելոյ ի կարգէ առաջին գրոցն՝
զիրս բազմափոփոխս աշխարհիս Հա-
յոց, զբարեաց և զչարեաց, զվարս և
զգործս զարանց սրբոց և զպղծոց,

զժամանակի պատերազմաց և զխաղաղութեան: Պատմեալ զայս ամենայն Փաւստոս ոմն Բուզանդացի, մինչև ցԹագաւորութիւնն Արշակայ (որդւոյ Պապայ, որդւոյ Արշակայ), որդւոյ Տիրանայ, առ որով թագաւորութեամբ բաժանեալ աշխարհս Հայոց՝ պատառեցաւ յերկուս ծուէնս, ըստ օրինակի հնացեալ ձորձոյ:

Եւ աւարտեալ աստանօր զբան պատմութեան իւրոյ՝ մնացուցեալ հանգոյց. զոր անուանեալ կոչեն զանուն գրոցն Հայոց Պատմութիւն:

«Երրորդ պատմութիւնս այս ի կարգէ նորին գրոց շարադրեալ տըկարութեանս մերում. յոր հարկաւորեալ հրամանաւ իշխանաց և բանիւ սուրբ Վարդապետաց՝ տուաք զանձինս յայսպիսի գործ կարևոր, չիշխեցեալ ընդդիմանալ, յիշելով ի Ս. Գրոց զպառնալիսն անհնազանդից որդւոցն, և զորս գրէ՝ ներողութիւն հնազանդից և հաւանելոց. կարգել մի ըստ միոջէ զիրս և զգործս, զբազմայեղանակ դիպմունս Հայաստան աշխարհիս, բաժանմանց յերկուս թագաւորութիւնս:

*Երկու թագաւորութեան բաժանումն ըլ-նելէն վերջ, շատ տրամաբանական էր որ Փարպեցին մասնականի իջնելով ըսէր թէ իշխաններէն ոմանք միացին իրենց բնիկ տէրերուն (Արշակունեաց) ծառայութեան մէջ, ուրիշները օտար թագաւորներու լուծը ընտրեցին. մէկ խօսքով այն ամէնը որ պիտի կազմէր իւր պատմութեան էջերը[1]. Հետեւաբար*

էջ 3 տող 22

*կալ ոմանց ըստ սատուածային հրամանատարութեան ի հնազանդութիւն բնիկ իւրեանց Արշակունի թագաւորացն և այլոց ծառայել կամաւ օտար թագաւորացն՝ ի կորուստ անձանց և աշխարհիս, որք ի միաբանելն տեսանէին զԱստուծոյ օգնականութիւնն յանձինս և յաշխարհս, և ի քակտելն և ի պառակտելն՝ զվնաս և զկորուստ յանձինս և յաշխարհս[2]:*

1. *Փարպեցւոյ Գ. տպագրութիւնը Վենետիկ* 1891. *Նորայր և Պարոնեան անփոփոխ կը պահեն այս գլուխը. Մատաթեան միայն ինծի հետ կը համաձայնի այս հատուածիս դասաւորութեան մէջ:*

2. *Նորայր պակաս մը կը դնէ այս տողերէն վերջ. և կը շարունակէ* Որում երկրորդ-գրոցն անուանեն զոմն պատմագիր *են*:

*Այս տեղաւորութենէ վերջ շատ աւելի յարմար կը կապակցի ընդհատութիւննիս*

էջ 2 տող 7

*Եւ ի վիճակէ բաժնոյ անօրինացն արանց քաջաց, ի տոհմէ Նախարարացն Հայոց, տալ զանձինս անհամարս ի նահատակութիւնս ի վերայ ուխտին սուրբ եկեղեցւոյ և կիսոց համբերել կապանաց և բանդից վասն երկնաւոր յոյսոյն բազմաժամանակ տևողութեամբ. հեղուլ և քահանայից ընտրելոց Աստուծոյ և ճշմարտապէս հովուաց՝ զարիւն ի պարանոցաց իւրեանց ի վերայ ընտրեալ բանաւոր. հօտին Քրիստոսի և ոմանց յընկերակցաց Նախարարացն և յայլ ազատ մարդկանէ՝ դառնալ յետս յուխտէ սրբութեանն, և անշէջ յաւիտենից հրոյն լինել լուցկիք, պատրաստելոյն սատանայի և նորին արբանեկացն ։ Եւ գրել զայս ամենայն մինչև ցօր սկզբան Մարզպանութեան Հայոց Վահանայ Մամիկոնէից տեառն և մեծի զօրավարին Հայոց և Մարզպանի. և դադարեալ հանգուցից յայնմ տեղւոջ զբան փաստակոց պատմութեանց այսոցիկ։*

Բ. — Ընդ բազում ճառս մատենից առաջնոցն պատմագրացն Հայոց անցի. յորոց ըստ յերկար ընթերցողութեան գտի ի նոցանէ զժամանակաց և զդարուց աշխարհիս Հայոց բազմադիմի յեղափոխութիւնս, յատոյգ և յանսխալ կարգաւորութենէ Առաջին գրոցն, զոր յարմարապէս պատմեալ ծանոյց մեզ երանելին Ագաթանգեղոս, այր բանիբուն գիտութեամբ և լի ամենայն հրահանգիւ, ստուգաբան ի կարգադրութիւն ճառից և յարմարագիր ի պատմութիւնս ասացուածի իւրոյ։

Սա զնուազումն թագաւորութեան Արշակունւոյն Արտաւանայ և զզօրանալն Ստահրացւոյն Արտաշրի որդւոյ Սասանայ՝ ստուգապէս յօրինուածով կարգեալ դրոշմեաց, զքինախնդրութիւնն Խոսրովու և զտարակուսանս գոռոզացեալ Ստահրացւոյն. զխորհուրդն և զխոստմունսն գտողի հնարս յաղագս մահուն Խոսրովու, զխորամանկութեանն զմտածութիւնն Անակայ, և զսպանումն ի նմանէ զնորուն Խոսրովու՝ նենգաւոր խաբէութեամբ. զմատնումն յայնմհետէ զաշխարհիս Հայոց ի ձեռս թագաւորութեան օ-

տարի. զփախուցանել դայեկացն զոր-
դիս խոսրովու յօտարութիւն առ ի
յապրումն. զհսկայաբար միաանգամ
զդարձն Տրդատայ և զյաղթող մար-
տիւ ունելն զիւրոյին զնախնեացն քա-
ջաբար զթագաւորութիւնն. զդիմելն
առ Նա սրբոյն Գրիգորի՝ զհեշտ պաշ-
տաման տենչիւ, զնահատակութիւն
Նորին սրբոյն, և թէ որպէս տարաւ
անպատումն և անբաւ բազում չար-
չարանացն. զառաւելապէս օգնակա-
նութիւնն Քրիստոսի, որ ցուցաւ ի
վերայ սրբոյն ի հիացումն դեռևս մո-
լորեալ մարդկան. զհամբերութիւն
տևողութեանն այնչափ ամս ի վիրա-
պին, որ պահէր զնահատակն ի գործն
Հայոց. զեկս սուրբ կուսանացն ի
Հռովմայեցւոց քաղաքէն, և զհեղումն
մարտիրոսական արեանն ի Վաղար-
շապատ քաղաքի, յոռոգումն դալա-
րութեան գոսացելոց դիոց մարդկան.
զելն սրբոյն Գրիգորի ի խոր վիրա-
պէն, և զհանումն Հայաստան աշխար-
հիս ի խաւարէ անգիտութեանն յաս-
տուածային արքայութեանն լոյս. ըզ-
յորդորումն յանմհետէ վարդապետու-
թեան կենաց աշխարհիս Հայոց. զկը-
տակս մկրտութեան լուսոյ, զոր Փրկիչն

Քրիստոս ի ձեռն մեծի Նահատակին Գրիգորի, բարեխօսութեամբ եւ սուրբ կուսանացն, ծաւալեցոյց յաշխարհիս մերում. զշինութիւն եկեղեցեաց, զպայծառութիւն քահանայից, ըղխումբս բազմամբոխ ժողովրդոց ի տօնս Փրկչին և ի ժողովմունս յիշատակաց սրբոց։ Զայս ամենայն ես առաւել քան զայն գիտութիւն, յիւրում հաստատուն և անսխալ կարգաւորութիւնսն պատմեաց մեզ երանելի այրն Աստուծոյ սուրբն Ագաթանգեղոս[1]։

Որոշ կը տեսնուի որ Ա. գլուխը յինքեան համառօտութիւն մ'է յաջորդ չորս գլուխներուն։ Երկրորդ գլխով կը սկսի ընդարձակել իւր գաղափարն, մատենախօսութիւն մ'ընելով նախ իրմէ առաջ եղած ազգային երկու պատմագիրներուն վրայ, որոնց շարունակութիւնը պիտի գրէր ինքը. տալով անոնց պատմութեան նիւթին համառօտութիւն մը։ Այսպէս Բ. գլուխը Ագաթանգեղոսի նուիրուած է ինչպէս որ տեսանք. Գ. գլուխը բնականա-

1. Երկրորդ գլուխը ոչ մէկ բանաւէրէ փոփոխութեան ենթարկուած է. ամբողջութիւն մ'է որ անայլայլ հասած է մեզի։

բար Բիւզանդի սահմանած պիտի ըլլար հետեւաբար շատ հաւանական է որ սկսէր

էջ 3 տող 28[1]

Գ. — Իսկ զհետ սորա որում երկրորդ գրոցն անուանեն զումն պատմագիր, կոչեցեալ Փաւստոս Բուզանդացի. և վասն զի կարգելոցն առ ի

1. Գ. տպագրութիւնը 1891 Վենետիկ կը սկսի նոյնպէս Գ. գլուխը Որում երկրորդ գրոցն և կը համաձայնի ինծի հետ մինչև հայեցողաց։ Իսկ Բ. տպագրութիւնը փոխանակ երրորդ գլխոյ, Դ. գլուխ կը դնէ, ամբողջ այդ կտորը, և կը փակէ գլուխը շարունակելով քանզի են ոմանք ի Ցոյնս ... յԱսորիս ասկից վերջ կը կցէ Եւ քաջքն... մինչեւ լաւանալ։

Տարբերութիւնը որ կայ Վենետկի Բ. տըպագրութեան 1873. և Գ. տպագրութեան մէջ՝ ետև առաջութիւնն է Գ. և Դ. գլուխներու. ինչպէս և Ե. Մտաթեան կ՚առաջարկէ Հանդէս Ամսօրեայի մէջ 1887 էջ 167. բաց ի քանի մը փոքր հատուածներու յաւելումներէ զոր ունի 1891 տպագրութիւնը։

Պարոնեան Ս. Վ. Բանասէրի մէջ Հատոր Ա. 1899 էջ 269 իւր ընթերցումը նոյն կը պահէ Ա. գլխոյն մէջ Վենետկի Գ. տպագրութեան հետ (1891), Բ. գլուխը ևս կը շարունակէ նոյնպէս, միայն աւելցնելով հատուած մը Դ. գլխէն էջ 12 տող 20 բազումք սպրդեցին գալ յայսպիսի մինչև անմրտացն շաղփաղփութիւնք։

նմանէ ի տեղիս ուրեք կարծեցին ոմանք բանք ինչ ոչ յարմարք և դիպողք, որպէս առաջնոյն ճշմարտութիւն, Ագաթանգեղոսն կոչեցելոյ՝ յերկուացեալ հարկաւորեն չասել զայնպիսի անպատշաճ կարգումն Բիւզանդացւոյ ուսելոյ։

Քանզի Բիւզանդիոսս այս փոքրիկ քաղաքիկ էր, յառաջագոյն չինեալ յառնէ ումեմնէ Բիւզաս անուն կոչեցելոյ, մերձակայ Թրակացւոց սահմանակցութեան, զոր և ի գալն աստուածակամ հրամանով սրբոյն Կոստանդիանոսի ի վերայ անթիւ բազմութեան Գթաց ի պատերազմ, և առ եզերբն Ղեկովբ գետոյ արարեալ զիւր զօրու բանակատեղս, որ և աստուածային տեսչութեան լինէր արժանի, օրինակեալ նմա յայտնապէս յերկնից աստեղեայ լուսատեսիկ նշան կենսատու խաչին բերելով շուրջ զինքեամբ ճառագայթից նշանագիրս, թէ «այսու յաղթեսցես». և նորա զարթուցեալ՝ յուսով երևեցելոյ նմա սուրբ նշանին օգնականութեան, յաղթեալ վանէր զթշնամեացն բանակն[1], և խնդիր

1. Նորայր հոս ևս պակաս մը կը դնէ։

փութապէս գիտիս այսմ հոգացեալ՝ ճեպով զիւր մայրն զերանելին Հեղինէ յԵրուսաղէմ առաքէր։

Եւ թէ որպէս անդ ի ձեռն ջերմ խնդրոյ սրբոյ մարդոյն յայտնեցաւ կենաց փայտն՝ գիտէ ամենայն անձն, ի Նորին գրոց տեղեկացեալ զգիտ փրկութեան մերոյ։

Եւ ինքն թագաւորն եկեալ ի յառաջագրեալ քաղաքիկն, որ անուանեալ կոչէր Բիւզանդիոս, և տեսեալ զսքանչելատեսիլ զամրութիւն տեղւոյն, թէպէտև ծանրագոյն և բազում աշխատութիւն ի տեղւոյն ցուցանիւր՝ ոչ ինչ վեհերէր վասն օգտակարութեան կղզւոյն. վասն զի շրջափակեալ յամենայն կողմանց ծովածիր էր տեղին, բայց խուն ինչ ցամաքայատակ ճանապարհ, առանց շրջագայութեան ջրոցն, որ ելանէր յարեւմուտս կոյս քաղաքին։

Վաղվաղակի զձեռն ի գործ արկեալ՝ տայր հրաման հարթել զբարձրաբերձ զբլուրսն, որք ի ներքս ի կըղզւոյն էին, և շինեալ քաղաք մեծապայծառ, զոր ըստ իւրում անուանակոչութեանն Կոստանդնուպօլիս անուանէր, որ թարգմանի հայերէն կոստանդիա-

նոսա քաղաք. զոր ոմանք ըստ հռով-
մայեցի բարբառոյն, պալատն ասեն,
որ թարգմանի արքունի: Իսկ որ յա-
ռաջագոյն շինեալ Բիւզանդիոն էր,
էր թաղ մի յեզեր նորին քաղաքի որ
մինչև ցայսօր նորին անուամբ կոչի
Բիւզանդիա: Եւ յայնմհետէ վտակք
գիտութեան, որպէս ի թագաւորա-
նիստ վայրի յորդեալ բղխեն ի քա-
ղաքէն որպէս և յամենայն կողմանց
յաշխարհէն Յունաց քաջ ուսեալքն
անդ փութան հանդիսանալ. և մինչև
ցայսօր առաւելեալ տարածեն յամե-
նայն կողմանս նորա իմաստութեան
վտակք: Արդ յայնպիսումն քաղաքի և
ի մէջ այնչափ բազմութեանն ուսելոյ
վարժեալ այրն Փաւստոս այնպիսի ինչ
արդեօք անհաճոյս լսողաց բանս կար-
գէ՞ր ի պատմութեան իւրում: Քաւ և
մի լիցի: Ուստի և անհաւատալի ի-
մում տկարամտութեանս կարծեցեալ
գործն, ասեմ՝ թէ գուցէ այլ ոք յան-
դուգն և անհրահանգ բանիւ լրբա-
բար ձեռն արկեալ յիւրն՝ գրեաց զինչ
պէտս ըստ կամի և կամ զի ուրուք
անկարեալ դիպողս՝ այլաբանեալ զխա-
սեաց, և անուամբ Փաւստոսի զիւրոյ
յանդգնութեանն սխալանս համարե-

ցաւ ծածկել. և այն յայտնի ցուցանի ամենայն հայեցողաց[1]։

Փարպեցին հոս նշանակած կը թուի պարագայ մը յորում այդ «չիրք(երը) և անհրաժեշտ քանիս»ները կրցած են յաջողիլ իրենց «յանդգնութեանն սխալանս» Փաւստոսի անուամբ ծածկել։ Հայաստանի խռովեալ վիճակն էր անշուշտ

էջ 3 տող 19

(քանզի) ըստ[2] այլայլման իրաց և ժամանակաց և դիպելոյ աշխարհիս Հայոց բազմամբոխ դարուց, երբեմն խաղաղութեան և երբեմն սաստիկ ամբաւ շփոթմանց, միաբանութեան առ միմեանս և երկպառակութեամբ ճեղքելոյ ի միմեանց։

Պակսեցաւ այն հսկողութիւնը՝ որ մինչև վարդանանց պատերազմը ամէն իշխան կը

1. Մինչև հոս Վենետիկի Գ. տպագրութիւնը 1891 կը համաձայնի ինծի հետ. և կը փակէ գլուխը քանզի են ոմանք ի յոյնս այլ մանաւանդ առաւել յԱսորիս։

2. Գ. տպագրութիւնը հոս կը սկսի Դ. գլուխը աւելցնելով իսկ զհետ սորա՝ ըստ այլայլման...։

*կատարէր իւր սահմանները, ինչպէս որ ազգային պատմութիւնը կ՚ աւանդէ, չի թողլով ոչ մէկ աղանդաւորի ոտք կոխել Լուսաւորչայ փարախին մէջ. այդ հսկողութեան պակասութեամբ՝*

էջ 5 տող 1

*բազումք սպրդեցին գալ յայսպիսի յայրատութիւնս*[1]։

*Փարպեցւոյ ծանօթ անձինքներ էին այն գրանենգները, թէպէտև օտարազգի, բայց համբաւնին եղած կը թուի, այս պատճառաւ և լոկ ակնարկութեամբ մը կը բաւականանայ պատմագիրը. քանի որ ամէն «հայեցողաց» ալ յայտնի էր։ Եւ որոշ անոնց ազգութիւնը կը նշանակէ .*

էջ 4 տող 36

*քանզի են ոմանք ի Յոյնս այլ մանաւանդ առաւել յԱսորիս.*

1. Գ. *տպագրութիւն ասկից վերջ կը շարունակէ* արք տգէտք *և կը համաձայնի մինչև* շաղփաղփութիւնք *յորմէ վերջ կը շարունակէ* Որում արթնամիտ խորհրդականութեամբ։

*Անոնց գիտութեան չափը և գրութեանց տեսակն ևս կը ճանչնայ*

էջ 5 տող 2

*արք ուգէսդ և յանդգունք գրեցին յինքեանց ճառս ընդունայնս և անպիտանաբանս և խառնեալ եդին ի գիրս գիտուն լողաց. այլ ընտրող միաց ճանաչի գիտնոցն բանք և անմտացն շաղփաղփութիւնք։*

*Այս գրանենգներու նպատակը զուտ կրօնական էր. Յոյնը և Ասորին, ներկայացուցիչներ էին ժամանակին երկու մեծ դպրոցներուն Աղեքսանդրիայի և Անտիոքի, որոնք կը մրցէին իրարու հակառակ ընդլայնելու իրենց իրաւասական շրջանակը, երբեմն աղանդաւորներու պաշտպան ալ հանդիսանալով։ Փարպեցւոյն յաջորդ պարբերութեան մէջ ըրած ակնարկութիւններէն կը հասկցուի թէ գրանենգներու նպատակն էր խախտել Ս. Երրորդութեան վարդապետութիւնը. Դ և Ե դարերու աստուածաբանական և քրիստոսաբանական մեծ խնդիրը։ Պատմիչը՝ իւր ուղղափառ դաւանութեամբ պատմագրելու ուրախութիւնը՝ հակադրութեան կը դնէ այն անպիտան շաղփաղփողներուն հետ,*

որ ամէն նեղութիւն և վիշտ յանձն կ'առնուն միայն թէ «հասեալ խնդրոյն տենչիցն... բերկրեալ զուարճանան». որչափ ևս առաւել ինքը իրաւունք ունէր ցնծալու։

Էջ 6 տող 11

Եւ արդ՝ յահագին այսպիսի մահուս զերծեալ անձինք շահաժողով ընչասիրացն և հասեալք ևեթ խնդրոյն տենչիցն, որում ուշ արարեալ բաղձան. մոռացեալ զվիշտսն՝ բերկրեալ օգտիւքն զուարճանան։ իսկ ո՞րչափ ևս առաւել գտանիցին գանձուն յաւիտենից ժառանգաւորք որք և զյօրինուածս բանից ստուգապատում կարգեալ պատմագրեցին, չառնել մարդահաճութեան բանից յաւելուածս, ի ցրումն ոսկերաց, ըստ ասացածի սաղմոսերգին, այլ զգուշական երկիւղիւն ընդ բազմաց լայնածաւալս գիտնական բանի նաւեցին անվրլթար, ի սուրբ Հոգւոյն շնորհան յուսով ապաւինեալք. ունելով փոխանակ փայտամած տախտակացն՝ զհիմն ուղղափառ հաւատոյ և փոխանակ ի նմա բազմայարմար կազմութեանն հնարիցն՝ զերրեակ ինքնութեանն։ Եւ զի նաւայն տախտակք

*տուանց բազմաց սատարելոյ չհընարին լինել յանօթ պիտանացու, քանի՞ես տուաել այսպիսի մեծ և հոգևոր գործոյ ձեռնարկութիւն, ուր բազում կարևոր պէտք էին առաքինի արանց օգնականութեան։*

*Այդ առաքինի մարդն էր Վահան Մամիկոնեան իշխանը որուն հովանաւորութեան տակ՝ փարպեցին սիրտ ըրաւ շարադրելու իւր պատմութիւնը։*

էջ 5 տող 6

*Դ. — Որում*[1] *արթնամիտ խորհրդականութեամբ ուշադրեալ այսմ ամենայնի մտաւոր և քաջ այրն Վահան տէրն Մամիկոնէից, զօրավարն Հայոց և մարզպանն, որ բազում և*

1. *Պարոնեան կը սկսի Դ. գլուխը Գ. տպագրի համաձայն մինչև տող* 20 *էջ* 12 իսկ զհետ սորա *և կը շարունակէ էջ* 15 *տող* 21 կալ ոմանց *մինչև* յանձինս եւ յաշխարհս *և կը դառնայ էջ* 13 *տող* 5 Որում *արթնամիտ մինչև էջ* 14 *տող* 6 ճգնութեանց նոցա, *յորմէ վերջ կը դնէ էջ* 16 *տող* 10 Եւ քաջք լսելով… մինչեւ լաւանալ։

*անհամար ուղղութեանց աշխարհիս Հայոց ի ժամանակս իշխանութեան իւրոյ եղև արարող, անձամբ և զայլս յորդորելով զբազումս ։ Սա որպէս և այլ ամենայն բարւոյ իրօք հոգացեալ զՀայաստան աշխարհի իբրս առաւել և զայս ի դէպ և պատշաճ համարեցաւ ի մնացեալ տեղւոյ պատմութեան Երկրորդ գրոցն աճեցուցանել յառաջ և գրել յայնմհետէ զեղեալս յաշխարհիս Հայոց։ Բազում զգուշութեամբ գրել և կարգել մի ըստ միոջէ զամենայն զհոգևորացն զառաքինութիւնս և զարանց քաջաց զլաւութիւնն ։ Որպէս զի զհոգևորացն զբարի վարսն լուեալ բազմութեան ժողովրդոցն՝ նմանողք լինել ցանկացին մարդիկ ճգնութեանց նոցա,*

*Այդ առաջադրած սրբակեաց մարդիկներու առաքինութիւնները նկարագրած ատեն նպատակն էր որ ժողովուրդը անոնց ճգնութեանց հետևելու փոյթ տանէր, այս բանս, միջոց մ'էր իրենց մէջէն չարութեան եռանդը մարելու* [1]

1. *Ե. Մատաթեան այստեղ կը համաձայնի ինծի հետ մինչև* ողորմի փութով։

## էջ 6 տող 7

*և պարտեալ եռանդեանն չարու- թիւնն անդէն և անդ դադարեալ ցած- նուն*[1].

*Հոգևոր մարդէն վերջ պիտի նկարա- գրէ « զարանց քաչաց գլաւուբիւնս », քա- ջալերելու համար քաջերը և օրինակ տա- լու ծոյլերուն*

## էջ 5 տող 17

*և քաջքն լսելով զայլոց զգործսն յառաջագոյն քաջացելոցն՝ յաւելեալ յանձանց քաջութիւն՝ անուանի յի- շատակ թողցեն զկնի իւրեանց՝ ան- ձանց և ազգի։ իսկ ծոյլքն և վատքն հայելով յանձինս և լսելով զայլոց ըզ-*

1. Գ. *տպագրութիւնը մինչև հոս կը հա- մաձայնի ինձ, որմէ վերջ կը յաւելու.* Այս- պէս եւ բան հզօրին Աստուծոյ . . . *մինչև* ողորմի փութով։ Եւ *կը շարունակէ* Եւ արդ- յահագին այսպիսի մաhուս *մինչև* առաքինի արանց օգնականութեան *յորմէ վերջ կը գնէ* կալ ումանց ըստ Աստուածային հրա- մանատուութեան *մինչև* յանձինս եւ յաշ- խարհս։ Կը *գոցէ գլուխը աւելցնելով* Եւ քաջք լսելով *մինչև* լաւանալ։

պարսաւանս ի բարի նախանձն կըրթեալք ջանասցին լաւանալ։

Կը հանէ և բարոյական մը։

էջ 6 տող 8

Այսպէս և բան հզօրին Աստուծոյ վճարէ զամենայն զոր կամի. ցասուցեալ ըստ չարի մեր գործոց՝ խրատէ ողոքեալ. զբարի դարձ(եալ) տեսանելով՝ ողորմի փութով։

Ասկից ետք վերջաբանը կը սկսի նոր գլխով մը, ուր Փարպեցին մեզի կու տայ իւր ինքնակենսագրութեան զրուագ մը. այսինքն՝ որուն քով աշակերտած ըլլալն, որ բարոյական մեծ նշանակութիւն մը կը թուի ունենալ. երկրորդ՝ Վահան Մամիկոնեանէն պատմագրելու ստիպողական հրաման ստանալը. երրորդ աւանդական կարգ մը խոնարհաբանութիւններ, իւր գիտութիւնը անբաւական համարելով, նիւթին դժուարութիւնը ցուցադրելով, վերջապէս՝ զիջումը, Աստուծոյ օգնականութեան վրայ յոյսը դնելով։ Այսպէս

էջ 5 տող 22

Ե. — [1] Ըստ այսմ օրինակի զգուշացեալ ստիպեցուցանէ զմեզ տէրն Մամիկոնէից Վահան, զօրավարն Հայոց և մարզպան. որոյ հասեալ հրաման առ իս Ղազար Փարպեցի, որ և սնեալ և ուսեալ առ ոտս առաքինակրօն երանելւոյն Աղանայ, որ էր ազգաւ ի հոյակապ և յականաւոր տոհմէն Արծրունեաց, որդի Վասակայ, եղբօր Տաճատայ և Գոտորզի: Որ մինչդեռ էր ի տիս մանկութեանն, և այն ինչ

1. Բ. և Գ. տպագրութեանը և Ե. Մատաթեան ինծի նման կը կարդան՝ Ե. գլուխը: Իսկ Պարոնեան Ե. գլուխը կը կազմէ այսպէս. Գ. տպագրի էջ 19 տող 2. Զի ոչ փոքր ինչ մինչև տող 17 ի յայտնութիւն. և կը շարունակէ էջ 16 Ե. գլուխը ճիշտ այնպէս մինչև 19 երես տող 2 զի ոչ էր քան զքան որմէ վերջ դատարկութիւն մը դնէ՝ պակասին մնացորդները ենթադրելով հետևեալ հատուածները էջ 14 տող 22 եւ զյօրինուածս բանից... մինչև էջ 15 տող 3 սաղմոսերգուին շարունակելով էջ 14 տող 6 եւ պարտեալ մինչև տող 22 ողորմի փութով շարունակելով էջ 15 տող 4 զգուշական երկիւղիւ տող 21 օգնականութեան և կը փակէ գլուխը էջ 19 տող 18 Եւ վա́սն զի են աստ պէտք են:

դեռ տէգ մուրուացն ի վերայ գեղեց-
կատեսիլ վարդափթիթ ծնօտիցն բու-
սանէր՝ ի բաց ընկեցեալ արհամար-
հէր զամենայն վայելս անցաւոր կեն-
ցաղոյս, և զերկնաթռիչ զճանապար-
հէն յաւիտենից բարութեանցն ըն-
տրեալ հետևիւր, կեցեալ յանապատս
ընդ արս ընտիրս ի ճգնութիւնս մե-
ծամեծս: Զորոյ և ոչ բաւական ոք է
բանիւ բովանդակել զանբաւ վարուցն
զառն նահատակութիւնն. այլ այսքան
միայն ասացեալ մնացուսցուք զբանս,
որպէս թէ պատճառանօք գոլով ի
մարմնի՝ աքնութեամբ և պահօք և ան-
դադար աղօթիւք զանմարմնոցն զվե-
րին զօրացն բերէր յանձին զքաղա-
քավարութիւն, որ ոչ երբէք ի կեանս
իւրում ընտրեաց ժամ աղօթից, այլ
զտիւ և զգիշեր անհանգիստ նմա ժամ
աղօթից էր:

Եւ կեցեալ այսպէս, մինչև առաւե-
լեալ ծաղկէր հեր գլխոյն սպիտակն
քան զխարտէշն, և կատարեալ զըն-
թացս նահատակութեան իւրոյ՝ հանգ-
չէր: Եւ եդեալ ի մատրանն ի յԱդա-
մակերտի. որոյ յիշատակարանն ընդ-
անուանս վկայիցն սրբոց պատմեալ
քարոզի մինչև ցայսօր և յաւիտեան,

անուն սրբոյն յամենայն եկեղեցիս Հայաստանի աշխարհիս, վրաց և Աղուանից։ Եւ արդ՝ այսպէս հարկաւորեալ բռնադատեաց զտկարութիւնս մեր տէրն Մամիկոնէից Վահան, սպարապետն Հայոց և մարզպան, ձեռնարկել ի գործ՝ որ ի վեր քան զկար գիտութեան մերոյ էր. քանզի ոչ էր քան զբան,

Հոս բնագիրս[1] պակաս մը կ՚ենթադրէ այդ անիմաստ վերջին շարք մը բառերուն համար. մինչդեռ՝ ըստ իս՝ աղաւաղութիւն մը համարելու ենք յաջորդ դրած տողերուս որ եթէ զեղջուին բնագրէն առանց իմաստին պակասութիւն մը տալու ուղղակի կը շարունակեն հեղինակին ըսելիքը

էջ 6 տող 25

Զի ոչ փոքր ինչ կասկած է՝ աներկիւղ այսպէս ումեք տալ զանձն յայս-

1. Տփղիս 1904 էջ 6 ի ծանօթութեան կը համարին որ ենթադրած պակասած մասում, Ղ. Փարպեցին, հետևելով Ագաթանգեղոսի յառաջաբանին՝ նմանեցնում է մատենագրի վիճակը ծովային վաճառականի վտանգալից վիճակին մինչդեռ իմ ներկայ դասաւորութեան համաձայն Փարպեցին հեռի է այդտեսակ փոխառեալ նկարագիրներ ընելու։

պիսի վաստակս, ուր պիտոյ են յարմարութիւնք բանից, որոշեալ կարգադրութիւնք ըստ հրամանի կանոնեալ գիտութեանն , բերել պատկառելով ստուգագրութիւն անպարսաւ յականջս իմաստասէր լսողաց. չյաւելուլ զանճղեալսն՝ յընդունայն աճմունս բանից. չնուազեցուցանել զեղեալսն և կարճակտուր պատմել, բանիւք անփութութեամբ. այլ զընաւն ողջախոհ զգուշութեամբ բերել ի յայտնութիւն։

Եւ վասն զի են աստ պէտք բազում երկիւղագին պատրաստութեան[1], արդնպաստեալ իմում տկար խորհրդոյս, աղաչեմ սատարեցէք ամենայն աղօթասէր անձինք, ձերովք առ Աստուած խնդրուածովք օգնականութեամբք. որովք արդարապատումն ճշգրտաբանեալ՝ զեղեալ ի վեր քան զիս գործոյս հարկաւորութիւն, ընդ յորձանս մեծապատումն ծաւալայս՝ նաւեալ մըտաւոր ստուգաբանութեամբ, հասից բարեխօսութեամբ սրբոց յանալէկոծ և յապահով նաւահանգիստն։

1. Նորայր հօս պակաս մը կ՚ենթադրէ։

## Օրհնեա՜լ է Աստուած

Այսպէս իմ նոր ընթերցման դասաւորութեան համեմատ Ղազար Փարպեցւոյ պատմութեան յառաջաբանը կը բաժնուի աւանդական հինգ գլուխներու։

Առաջին գլուխը յինքեան համառօտութիւն մ'է ամբողջ յառաջաբանին[1] որուն ընդարձակութիւնը կը սկսի Երկրորդ գլուխով՝ որ նուիրուած է ազգային առաջին պատմիչ Ագաթանգեղոսին որուն պատմութեան համառօտ բովանդակութիւնը կու տայ մեզի։ Երրորդ գլուխը Բուզանդի ջատագովութիւնն է և գրանենգ Յոյն և Ասորիներու պարսաւանք մը։ Չորրորդ գլխոյն մէջ կը պարզէ իւր գրելիք պատմութեան ծրագիրը, Վահան Մամիկոնեանի փափաքին համեմատ։ Հինգերորդ գլուխը վերջաբանն է, ուր կը ստանանք հեղինակին և անոր վարդապետին կենսագրութեան քանի մը նօթեր, ասոնցմէ վերջ կը սկսի բացատրել ձեռնարկելիք գործին

1. Տես Բանասէր, Հատոր Ա. էջ 272 կրկին յառաջաբանք Փարպեցւոյն. Սուքիաս Վ. Պարոնեան։

անհամար դժուարութիւնները, ցուցնելով իւր գիտութեան պակասութիւնը ։ Վերջապէս յանձն կ'առնու միայն՝ որովհետև, Հայոց իշխանին ստիպումը կը բռնադատէ զինքը, և գործի կը սկսի Աստուծոյ շնորհաց ապաւինելով ։



*Հասոյթէն մաս մը Սկիւտարի Աղքատախնամին յատկացուած է*

# ՀԻՆ ՕՐԵՐ

## ԳՈՒԷՏ ԽԱՉԱՏՈՒՐ ՄԻՍԱՔԵԱՆ

*ԵՒ*

## ԻՐԵՆ ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԻՄԱՑԱԿԱՆԻՆ ՎՐԱՅ ՀԱՅԵԱՑՆԵՐ

**1815էն 1891**

**Ե. Գ. Մ.**





Կ. ՊՈԼԻՍ
ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ ՍԱԳԱԵԱՆ
*Ղալաթիա, Գուրշունլու խան թիւ 7*
1907

# ՄՈՒՏՔ

Այս կենսագրական բանաքննութիւն Պուէտ Խաչատուր Միսաքեանի վրայ՝ արդիւնք երկարամի մօտուստ դիտողութեանց և Նակրկիտ բացառիկ ճգանց՝ հրատարակուած է միանգամ 1898ի Թիւ 1—14 ՄԱՍԻՍներուն մէջ։ Կարեւոր յղկումներով, յաւելուածներով և ինքնագիր կտորներով հոս վերստին կուտանք զայն, քաջալերուած մանաւանդ առաջինին գեղեցիկ ընդունելութենէն ու ապագային ճշմարտութեան ցոլքեր մը աւելի աւանդելու դիտումով՝ Թէ՛ Պուէտին Թէ՛ իր ժամանակին վրայ։

# ՀԻՆ ՕՐԵՐ



# ԽԱՉԱՏՈՒՐ ՄԻՍԱՔԵԱՆ

## ԵՒ

## ԻՐԵՆ ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԻՄԱՑԱԿԱՆԻՆ ՎՐԱՅ ՀԱՅԵԱՑՆԵՐ



### Ա. ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

*Յառաջաբան տեսութիւններ.— Գ. Խ. Միսաքեանի ծնունդն եւ Պոէտ դրուատանունը.— Նոյն ատենի Պոլսի իմաստուն Պատրիարքն ու հայկաբան ոգին.— Պատրիարքարանի ամիրայական վարչութիւնը.— Պատուելիներն ու հռչակաւոր գրագէտներ.— Վենետիկի յայնժամու ջոջ Մխիթարեանները.— Ժամանակին պատմական-աստուածաբանական զնացքն եւ զուտ տաղաչափական բանաստեղծութիւնը.— Գրիգոր Փէշտիմալճեան ու Եզեկեան իբրեւ ներքողներ ժամանակին.— Երկիրին արհեստական վաճառական ու կրօնական վիճակը.— Միսաքեանի կայտառ ու խստամբեր մանկութիւնն եւ աշակերտութիւնը.— Իր շրջապայրին ներգործութիւններն իր վրայ.— Սկիւտար Եէնի-Մահալլէ թաղն ու դպրոցն եւ եկեղեցին, միւս թաղերն ու մեծատուններ.— Երուսաղէմական Հոգեսունը, անոր անցեալը, Տէրոյենցի վրայ.— Միսաքեանի ոգիընկալութիւնը, արբնութիւնն եւ բանաստեղծիկ բերումներ.— Կաշակերտի Գ. Փէշտիմալճեանի.— Իր ատէ- -՚ վե՛ր ժամանակին տափակութեանը.— Իր Այրաքա- -՛ը, ուխտագնացութիւնն յԵրուսաղէմ.— Իմն Աստ-*

ուածատուր եպիսկոպոսի հով, Ադամի կերած պտուղն Աստուածատուր եպիսկոպոսի բերանը.— Միսաքեան երեսուն եւ հինգ տարեկան հասուն տարիքին մէջ, Պլուտարքոս՝ բարոյական առաջնորդ իրեն.— Ինք Մխիթարեանց հետ. — Սկիւտարի ճեմարանին բացումը. — Միսաքեան եւ Խ. Գարտիզպան կը գժտին Տէրոյենցի հետ, իրենց ծածկագործութիւններն եւ կռիւ. — Միսաքեան կը ձգէ ճեմարանն եւ կը դասախօսէ առանձին.— Իր զուարթամիտ եւ նորասէր բարքը. — Վարագոյրին ցեղումը. — Իր հօրը մահուան վրայ կը մենանայ.— Գէորգ Միւհէնտիսեան իր յորդորելովը կը հիմնէ Սկիւտարի ճեմարանին մէջ տպարան մը. — Միսաքեանի այն ատենուան հետեւողները. — Իր համբաւն ու հեղինակութիւնը.— 1848ին Պետրոս աղա Խորասանճեան՝ կուզէ ղրկել իր երկու որդիներն Միսաքեանի հետ ի Բարիզ.— Իր յայնժամու լեզուն եւ գրական իմացական կարողութիւնը:



*«Յարգա՛նք կենդանիներուն*
*«Ճշմարտութի՛ւն մեռածներուն»։*
*«ԹԻԷՐ»*

*Այո՛ «Յարգա՛նք կենդանիներուն և ճըշմարտութիւն մեռածներուն»․ սակայն նաև որչա՛փ դժուարին է ճշմարտութեամբ պատմել կեանք մը՝ բաւական լայն և իր անտես կողմերուն ալ բաւական խրթին, խրթնագո՛յն շրջավայրի և ապաշնո՛րհ ժամանակի մը մէջ՝ մանաւանդ երբ այդ կեանքին տէրն ունեցած ըլլայ՝ դեռ կենդանի ժամանակակից անձերու հետ՝ առընչութեան անթափանցելի միջնաբարներ, անբնական սրտնութիւններ, զորս կենցաղական հաստատեալ սովորութեան մը հակառակ՝ դուրս բերելու համար վարագոյրին ներքեւէն, բաւական արիութիւն և հզօր դեր պէտք է գրողին։*

*Ասոր համար է որ երկար վարանումներէ ետև՝ մենք նոր կը համարձակինք գիրի առնել այս կարգէ դուրս և կարեւոր անձնաւորութեան վրայ քանի մը հանրական տեղեկութիւններ ու բանասիրական խորհրդածութիւններ։*

*Թէպէտ քաղաքակցաբար մօտէն դիտող ալ եղած ենք իր վերջին տարիներուն և իր*

ապրելու եղանակին քանի մը ներքին կողմերուն՝ մանաւանդ իր. իսկ անյարդար խոստովանութեանց ծակոտիէն, սակայն, կը մտածենք՝ որ լաւագոյն եւս կըլլար՝ եթէ ինք իսկ, իբր անձ հոյակապ, գրած ըլլար խոստովանօրէն իր կենցաղին գլխաւոր պարագաներուն հետ՝ իր միտքին ու իմացական գործունէութեանց անպատրուակ պատմութիւնն ալ։

Այն ատեն աւելի ստոյգ վկայագրութեամբ պիտի կրնայինք հաշտեցունել իր վարքին դէզ մը փոշոտ ներհակները, առանց ըլլալու Քսենոփոն կամ Պղատոն՝ պիտի կրնայինք նկատել, այդ անձնագրութեան մէջ, թերեւս Սոկրատի մը կամ Ճէնոընի մը հոգիին ցոլքը իր մարդկային ու երկնային կրկնակի կողմերովը։ Իր հոգեբանութիւնը պիտի ուրուանար ընթերցողին միտքին մէջ՝ աւելի հաւատի եզրերու և գոյներու վրայ, աւելի համոզումներով մը պիտի խրախուսուէին յետինները, և մենք շատերն ալ ակամայ չպիտի ապերախտանային ափ մը մոռցուած անուններու, որ գոց և իմացապէս անբեղուն ատեն մը ողորմելի միջոցներով՝ այդպէս կանուխ առաքինացան ու յաջողեցան գլել · իրենց ժամանակակիցներն՝ հինէն դէպի նորին չէնքը ձգտելով յաղթ սիւներու պէս։

Որչափ գիտենք, գէթ գրելով ապրողներէն իսկ, դեռ ոչ ոք փորձեց անաչառու-

թեամբ խմբագրել պատմութիւն մը. մէկը չարիացաւ ժամանակին հրապարակել վերջին 60-70 տարիներուն մեր մէջ եկած գացած մարդոց և իրերու նկարագիրը, որ միացած քանի մը ալեւորներու առկայծ յիշատակութեանց, ասդին անդին պահուած ձեռագիր նամակներու և անտեսուած կարգ մը անտաքներու մէջ կը պլպլան դօս պատրոյգներու լոյսին նման։ Մինչեւ հիմայ երեւցած անձնագրութեանց մեծ մասն ալ շատ տեղ կողմնակալ անպէտ երեւոյթներով պաճուճեալ է։ Ամէն ով իրենն յառաջ կը քշէ. հոն երկրորդական զուարճալի բայց պիտակ ալ պարագաներ անցած են էականներու տեղ. հոս պզտիկ սեպականներ՝ անձնասիրութեամբ բակ առած ու խոշորացոյցներու փոխարկուած են. վարժապետական ու հռետորական փոքրոգի մեծամտութիւն մը տիրած է իբր առ հասարակ իրերագով կամ իրերանախատ հրապարակի մը վրայ, նոյն իսկ էական խնդիրներու վերաբերումով. ժամանակակից իրերու շահով կամ կիրքով կցորդ մարդիկ՝ ըստ անձնիւր գինչպիտութեան՝ կցկցած են անցեալ յիշատակներու պատառիկներ մը արուեստագիտական ողորկութեամբ զգեցած պատմական ձեւ։ Ուր խնդիրը անձի պարմանք կը բերէ՝ հոն Կիկերոն է գրողը, փոյթ չէ թէ իմաստութիւնները կը հաղան և Պղիով կը

ժայռի...։ Ա՛յս է վերջին ժամանակներու-նշանն ու ոգին։

Ուստի՝ համառօտելու ատեն քանի մը ծանօթութիւններ Խ. Գ. Միսաքեանի գրեթէ սորած կծկուած կեանքին վրայ՝ կը ջանանք, մեր դիրքին ու մանաւանդ մեր սիրտին բերումովն իսկ, հեռացունել մենէ թէ՛ կենսագիրի անձուկ դերը թէ՛ ջատագովի կոյր եռանդը։ Անաչառ ու իրագէտ ընթերցող մըն ալ եթէ մեր գծած այս արձակ սահմանէն տեղ տեղ շեղած տեսնէ մեզ, թող հայի հաշտ աչօք՝ համարելով մեզ հոն իբր հատուցանող յապաղեալ ու յանձնարարեալ ալ պարտք մը անոր յիշատակին, որ իր բոլոր դառնութեամբ ա՛նոյշ թուեցաւ մեզի իր կենդանութեան ատեն և քաղցրանալու էր մահէն ետև ալ։ Մենք իրեն ո՛չ տիրապէս աշակերտած ո՛չ ալ տիրապէս հետևող մը եղած ենք մեր գրականութեանց մէջ, այլ աւելի բարեկամն ու սիրողը եղած ենք՝ իբրև ներհուն և անաչառ մանաւանդ լքուած բանաստեղծի մը։



Խարբերդցի դերձակ Միսաք աղայի որդի՝ Սկիւտարցի մօրմէ ծնած է Խաչատուր Միսաքեան 1815ին Խաչվերացի օրերը։ Մկրտութեան անունն է Խաչատուր, որուն 20 տարեկանին լծուեցաւ Պուէս դրուատանունն

իբրեւ առենքին միակ բանաստեղծի (*)։ Ունեցած է երեց եղբայր մը Ցովսէփ անուն, որ՝ ինչպէս մայրն ալ՝ մեռած է մինչ ինք Բարիզ կը գտնուէր։

Ժամանակին Պոլսոյ Պատրիարքն էր Աղրիանուպոլսեցի Պօղոս արքեպիսկոպոսը՝ դարիս առջի կէսին ամէնէն իմաստուն և բարի պատրիարքը, որ եռանդով աշխատեցաւ մանաւանդ Լուսաւորչական և Հռոմէական հայերուն աստուածաբանական միութեան և որուն ատեն Պոլսոյ Հայ գրողները՝ կոյս ուժով մը նախանձայոյզ եղան հին հայ լեզուի բարգաւաճումին։ Նոյն ատենի խել մը ձեռագիրներն ու աստուածաբանական գրուածներն աչքէ անցունողը՝ պիտի տեսնէ որ Վենետիկի Մխիթարեան ճոխ հայկաբանութեան հանդէպ՝ Պոլսոյ գրագէտներն առած էին արդէն այն վճիտ ու ոսկեդարեան ըսուած ուղղութիւնը, որ յաճախ ձախողաբար կը բեկբեկէր աստուածաբանական ու ամիրայական վէճերու պատճառով և զոր 10-15 տարի

(*) Այս Պուէց անունը, որուն ոգիով չափ նախանձախնդիր էր ինք, մանաւանդ ծերութեան ատեն, ընծայած է իրեն Ցակոբիկ աղա Մանուէլեան ճեմարանի բացումին առիթով արտասանած ոտանաւորին պատեհութեամբ՝ հրապարակով ըսելով «Ճառեր արդէն կը կոչուին վարժապետ անունով և դուն՝ որովհետեւ լաւ ոտանաւոր ալ կը գրես՝ արժանի ես Պուէց տիտղոսին, այսուհետեւ Պուէց պիտի մականուանենք քեզ»։

ետքը Վիեննական Մխիթարեաններուն հաստա-ցին բարձրագոյն աստիճանին քիչ մը ծայրա-յեղ ուղղափառութեամբ։

Պատրիարքարանի վարչութիւնն էր անի-բայական՝ հասած իր ամէնափայլ աստիճանին Սուլթան Մահմուտ երջանկայիշատակ ինքնա-կալին օրով։ Գրականութեան երեւելի ներ-կայացուցիչները, որ պատուելի կը յորջոր-ջուէին և որոց հարկ էր մանաւանդ պատճա-ռաբանեալ քերականութենէ մը զատ՝ աղէկ տիրած ըլլալ մեկնական, վիճական, աստ-ուածաբանական կարգ մը գիրքեր ալ, ու-նէին ազատ օթեւաններ մեծատուններու յար-կերուն տակ և բաւական հեղինակութիւն, մանաւանդ աստուածաբանական ու **եփիմեր-տեական** խնդիրներու մէջ, որ Բիւզանդեան երանգներով ստէպ կը փթթէին գաղափար-ներէ զուրկ յատակի մը վրայ։

Իբր հայկաբան և խոսալագէտ՝ հռոմէա-կան հին վարդապետներէն ու աշխարհական-ներէն զատ՝ անուն հանած էին, Նալեան սրբազանէն ու Պալաթի Գէորգ պատուելիէն ետքը՝ նոյն Պալաթէն Մելքիսեդեկ ու Սար-գիս Յովհաննէսեան դպիրները (*), Տ. Մել-քոն, Տ. Մեսրոպ Արզրումցի, Յովհաննէս

(*) Որոնց առաջինն յունարէնէ Թարգմանուած և երկրորդը Բիւզանդիոն քաղաքին վրայ տեղագրական ձեռագիր երկեր ունին։

Եղեկեան, Վանանդեցի Տ. Յովհան ի Զմիւռնա, Գրիգոր Փէշտիմալճեան, Թադէոս վարժապետ, Ֆիզիքայ-Պօղոս և ուրիշ գաւառացի ու պօլսեցի գրագէտներ։ Սալլանդեան, Ալամդարեան, Մեսրոպ Թաղիաթեան, Սերոբէ (Մինասիպեան), Յակոբ Շահան Ջրպետ՝ Ռուսաստանի և Հնդկաստանի մէջ, (Այս վերջինն ապա Բարիզ, ուր կեցաւ 40 տարի՝ իբրև դասատու հայերէնի Գոլէժ տը Ֆրանսի մէջ ու ետքը Ռուսիա անցնելով՝ հոն փակեց իր վերջին օրերը (*)։

Հինաւուրց Վենետիկի մէջ ալ կը նշողէին՝ Զամչեանէն ու Ինճիճեան Հ. Ղուկասէն ետքն՝ Աւետիքեան, Աւգերեան, Հ. Արսէն Բագրատունին ու երիտասարդ Հիւրմիւզեանները, որ յաճախ կերթեւեկէին Պոլիս ալ։ Հանրական ուղղութիւնն էր պատմական աստուածաբանական՝ (մանաւանդ Զաքարիա Պատրիարքի անձնորդութիւններէն ետև՝ Յովհաննէս ու Պօղոս Պատրիարքներուն գումարած ժողովներուն առիթով), պատմականն աւանդապաշտ երկիւղածութեամբ անքննօրէն ընդունուած, իսկ աստուածաբանականը՝ նըրբախնդիր հայեցումներով ու դատական վիճաբանութիւններով, յաճախ առիթ երկպառակութեանց. որոցմէ կը թուի թէ քիչ օ-

(*) Տե՛ս Յ. Հիսարեանի Բանասէր հանդէսն 1851ին եր 210—215.

դուռ չէին քաշեր կարգ մը փառասէր եպիսկոպոսներ, անհամբոյր աբեղաներ և խանձուրը-ծի վարժապետներ։ Բանաստեղծութիւնն ալ, ոչ այժմեան միտքով՝ այլ ինչպէս իրենք կը սորվէին՝ լուրջ և կրօնախառն բանաստեղծութիւնն՝ ունէր նեղկակ տեղ մը այդ պատուելիական շրջանակին մէջ՝ որչափ հնար էր ձեռնարհեստով, կամարակապ մթին չարշիով զբաղող ու եղածէն դոհ ժողովուրդի մը մէջ. բայց բոլորովին տաղաչափական էր՝ զուրկ խանդէ ներշնչումէ, զոր արևմտեան մատենագրութեանց ու անկապ բարքերու նոր շփումը գրեթէ ամէնէն յաջող ձևերով անցուցած է, վերջին տարիներս, մեր աշխարհաբառ գրականութեան մէջ։

Բագրատունիի ու Ջախջախեանի՝ քանի մը առոյգ երգերը դեռ չէին հրատարակուած, և բանաստեղծական ինչ և է բարձր ու ազնիւ ներշնչութեանց հետամուտ հայկական ոգիները՝ Շնորհալիի ազնուական քերթուածներէն զատ տիպար մը չունէին իրենց կոյս հայկաբանութեան դիմաց։ Մինչ եւրոպական բանաստեղծութիւնը թունդ կը հանէր իր ամէնէն հոգեհացեալ ձևերովը Քրիստոնեայ աշխարհին տեսլախառն զգացումները՝ հոս՝ Պոլիս, հազիւ Գրիգոր Փէշտիմալճեան մը իր անխառն տաղանդովը ու Եղեկեան ասիական և իտալական միջակ պերճութեամբը կը թե-

քէին, նոյն Շնորհալիի նախակայծերուն մղումովը՝ վառ տաղեր, ուր կը ցոլան լեզուի և ձեւի քան հանճարի խրոխտ նշոյլներ։

Երկիրին արհեստներն ու վաճառականն և սեղանաւորական գործառնութիւններն հիմակուան չափ բարգաւաճ չէին, այլ տեղացի հայերուն ձեռքն էին սակայն, որ խաղաղ համերաշխութեամբ և հլու գործակատարութեան մը հետեւանք դիւրին արագութեամբ մը կը կատարէին զանոնք, առանց ունենալու արդի քաղաքակիրթ դիւրութիւնները, հեռագիրը, շոգենաւն ու շոգեկառքը։ Կրօնք ոյժով էին, ճոխութիւն շատ, աղքատութիւն ցանցառ (*) ու դարմանուած միշտ առատեղ բարեպաշտիկ զգացումներով։ Ընտանեկան կենցաղը դրուած հաստատ հիմերու վրայ, գութ՝ առատ ու անսեթեւեթ, սէր՝ օրէնքէ հաւասար զօրացած, անգիր կանոնապահութիւն, մոլութիւն ձաղկեալ խստիւ և գրեթէ միշտ միութիւն կարեւոր բաներու մէջ։

Բայց դառնա՛նք մեր մանուկին։

Կայտառ ի ծնէ՝ կերեւի նաև որ ի սկըզբան անցուցած ըլլայ կրաւորապէս սպարտական կեանք մը խստամբեր. այս պարագան և Սկիւտարի լեռնային բաց կլիման են ան-

(*) Եւրոպական շռայլ ճաշակին չգոյութեան ալ պատճառով։

չուշա՝ որ նպաստեցին իր չարքաշ երկարակեցութեան։

Իր հայրը, արհեստին մանրահմուտ մը, տղայ հասակին յատուկ խնամով ընտելացուց զինքն իրերու ուշո՛վ ուսումնասիրութեան։ Միսաքեան փղձկելով կը խօսէր ապա նաեւ իր մօր վրայ, որուն մասնաւոր գորովին առարկայ եղած էր ու կանուխէն ժառանգած անոր կրօնական երկիւղածութիւնը, որ տիպական նկարագիրն է հին Հայերուն։

Թաղային վարպետ-տունէ ետեւ՝ 8-10 տարեկան հասակին կաշակերտի կարդացող քահանայի մը եւ կառնէ ամէնէն ամուլ մէթոտով՝ ուսում ըսուածին ճաշակը։ Բնութեամբ անհանդարտ՝ այդ եռուն տարիքին մէջ կանցնի փոփոխական շատ վիճակներէ՝ յաճախ նաեւ գործող տղայական չարաճճիութեանց, զոր մայրենի գորո՛վը իբրեւ միշտ անպատիժ կը թողուր։ Միսաքեան մանուկն իր տունին՝ ինչպէս իր թաղին ալ՝ քիչ մը երես եղածներէն էր։

Յաճախ թեւէն բռնած կառաջնորդէին իրեն թաղին եռադարեան եկեղեցին եւ շապիկ կը հագցունէին։ Հոն՝ նոր տպաւորութիւններ պատկառանք ներանձնական հաւատք ներշնչական կիջնէին համբուրմ կրօնական հին ձեւացութեանց տակ՝ մանուկին սատատուն հոգին։

Նաեւ պատուական աւանդավէպներ ու վիպական զրոյցներ, որ՝ մնացորդ դիցաբանական աւանդութեանց՝ կը վխտային այն ատեն իր բնակած յաճախատուն թաղին մէջ՝ կը սպրդէին հետաքրքիր մանուկին լսարանէն՝ ձգելու համար իր զուարթ մտքին խորը զուարճալի եւ ծիծաղելի տեսիլներու որդն ու դիցաբանական մարմաջի մը բունը, որոնց հասուն·արդիւնքը շատ շռայլութեամբ ցանած է ապա իր երկերուն մէջ:

Ասկէ՛ է նաեւ իր հայերէնասիրութեան զուգակիր իր հելլէնասիրութիւնը, որ միշտ նշան է թռչուն եւ զուարթ տաղանդի:

Մանկական այս երազալից հանդերձանքով՝ երկոտասանամեայ կը մտնէ թաղին մեծ դպրոցը:

Այդ թաղը (Սկիւտար՝ Ենիի Մահալլէ) 16րդ դարին կէսերը Մուշէն գաղթական՝ ունէր այն ատեն դարգացեալ վիճակ մը. դպրոցն ու Երուսաղէմական հին հոգետունն՝ իրբեւ կեդրոն բազմահայ վաղեմի թաղի մը՝ կը խնկուէին Պոլսոյ միւս դպրատուններէն բարձր իմացական ոլորտի մը մէջ: Գաղթականներէն կառուցած եկեղեցին, որ երկար ատեն զերծ մնացած էր հրդեհներէն, միջավա՛յրն էր (centre) հայաշատ ու բարեկեաց մարդաբնակութեան մը, որուն ետքերն եկած յարած էին Յոյներն ալ: Արքազործուած Ս. Կարա-

պետի մաշկեղէն անուանով՝ Պոլսոյ խստակրօն բարեպաշտներուն հետ իրեն կը ձգէր նախատարուէ տարի Վարդավառի տօնին՝ դաւառացի մանաւանդ Մուշեցի աստուածապարարկներու հազարեակ մը, որ Մուշի Ս. Կարապետի վանքին կարօտն անկէ կառնէին՝ բերելով իրենց ախունին հետ՝ աշխարհական չէն-շող ցնծութիւն մը՝ ասիական նախշուն գոյներով և խորոտ ձայներով ժապաւինուած։

Այդ հոծ և ցնծուն շրջանակէն դուրս՝ Սկիւտարի միւս տեղերը, ուր հիմայ յաճախած են Պոլսոյ ամէն կողմերէն եկամուտ տուներու բազմութիւն, կը գրաւէին ընդարձակ պարտէզներ ու այգիներ, որոց մէջ հինաւուրց սօսիներու նման կամբառնային՝ հոս հոն լայնանիստ ու անզարդ տնակ մը ապարանքներ՝ թաղանեկա ըսուած, օթարան Փոքր Ասիայի այլ եւ այլ կողմերէն գաղթող մեծատուններու և ճարտարապետ անուանաւոր արհեստապետ ամիրաներու։ Ասոնց ազնուապետական ազդեցութեան և սիրուն ներքև կապրէին նոյնպէս ցրիւ կարգ մը բնիկներ ալ, պարզ ու գեղջաբարոյ մարդիկ, տիրացու, պարտիզպան, միջնորդ, եաղմաճի, գրագիր եւն. որոնց ալ թաղն ու ժամն էր ; Թուփ, Սէլամսըզի Ս. Խաչը։ Սակայն բոլորին ալ հեղինակաւոր կեդրոնն էր դարձեալ Միսաքեանի Նորանուն հին թաղն՝ իր աղամող

փողոցներով, պզտիկ ու մեծ չարաճճիներով, վարդապետներով, վարժապետներով և միջնադարեան եկեղեցիովը։

Եկեղեցատունին արեւելեան կողմը կար Երուսաղեմի հին Հօգետունն՝ հանդերձ իր մատուռով, որուն հիւսիսէն սահմանն էր 70-80000 կանգուն տարածութեամբ վանքին այգին։ Այս Հօգետունը, որ 1838ին Սերվերեանի ու Գալեանի նպաստներովը վերածուեցաւ Ճեմարանի, սկիզբ ունենալով Բաղէշի Ամրտոլու վանքէն եկող վարդապետներէն ու վարժապետներէն, կար արդէն Ուլնեցի Կարապետ Կաթողիկոսի ատենը ([1]), ուր կը թուի նաև թէ իմաստասիրութեան նախկին կայծը ձգած ըլլայ, Կոլոտ Յովհաննէս Վարդապետի հետ, անցեալ դարուն սկիզբներուն հռչակուած Խարբերդցի Աբրահամեան Ղուկաս լեզուագէտ վարդապետը ([2])։

---

([1]) Տես Երեւակ 1 Դեկտ. 1859։

([2]) Այս թարգմանչութեան անձնաւորութիւնը՝ ըստ Հաննէ վարդապետի (Պատմութիւն Երուսաղէմի Բ. Տիպ էջ 175) Թարգմանած է 10 հատոր Գիրք կենդանեաց եւ օրինակաց. 1. Հատոր Աստուածաբանութիւն Սկոտոսի. 1. Հատոր Խորհուրդք Եկեղեցւոյ. 1. Հատոր Լուսաւորութիւն. 2. Հատոր Անտառ այլաբանութեան. 2. Հատոր Պատմութիւն Ս. Քաղաքին. 2. Հատոր Խաբէութիւն աշխարհի. 1. Հատոր Ջերմեռանդ կեանք. 1 Հատոր Կիւրակէի Քարոզք նաև Կոմպէնի փիլիսոփայական գործերուն մեծ մասը, զոր ամբողջապէս

1730-35ին Գրիգոր Շղթայակիր ու Կոլոտ Յովհաննէս Պատրիարքները՝ նորոգեցին այդ Հոգետունն ալ եկեղեցիին հետ՝ ձեռնտուութեամբ Երեւանեանց Ակընցի Սեղբեստրոս ա-ղանաւորին։ Հոն կ՚իջեւանէին Նուիրակները, Երուսաղէմի վարդապետներն ու Գոլաբրնակ պապաները, հո՛ն նաեւ ի դիպահով կը դնէին յանցապարտ կղերներն ու իրերահալած Թեկնածուները։ Կա՛ր. հոն ճոխագոյն մատենադարան, կայի՛ն ժամանակակից ձեռագիրներ, վանքերէ փախստական մագաղաթներ. հոն նաեւ մեկուսացած էր անցեալ 19րդ դարէն Նալեան Յակոբ լեղուագէտ Պատրիարքը. և. գրած էր իր Մեկնութիւն Նարեկի ու Քարոզգիրք անունով ճանչցուած ստուար ձեռագիր աստուածաբանութիւնը։ Պոլիսի Հայոց պզտիկ Սորպոնը, ուր մեր հին աստուածաբաններն ու փիլիսոփոս քերականները կաշխատէին ներանձնօրէն, սփռելով շրջանականներուն վըրայ ուսումնասիրական շողեր։ Հոն՝ հետզհետէ քաշուած ու իրենց վերջին օրերն համբած են Գրիգոր Յովհաննէս ու Աբրահամ պատրիարքները Պոլիսի։ Նոյն թաղին մէջ դարձեալ, որ ապա անունը պիտի տար Գեորգ Դուրեանի քանդ-մարմինին ու չանդ-հոգիին, հաստատած էր իր բնակութիւնը Պրուսացի Տէրոյենց

---

Թարգմանեց ապա Հ. Վրթանէս Վրդ. Ասկերեան, ևլն.
Ն. Խարբերդ մեծ տուն ալ բերմնաւոր կը Թուի։

Տէր Կարապետեան Յովհաննէս (Զամուրճեան) մատենագիր պատուելին, մեծ բանգէտը, որ նախ Պրուսայի մէջ Մկրտիչ անուն սարկաւագի մը (1) ձեռքին տակ և ապա Արմաշի Նորակառոյց վանքին մէջ աւարտելէ ետեւ իր նախնական կրթութիւնը՝ Վանահայր Դարագոչ արքեպիսկոպոսէն վարդապետական կարգը զլացուելով իրեն (իր գայրացկոտ և մռոտ բնաւորութեան համար) յետ այսր անդր երթևեկութեանց՝ վերջապէս եկած հաստատուած էր Պոլսի մէջ՝ անշուք տարազով, այլ բաւական շքեղ իմացականով։

Այս Տէրոյենց՝ նախ Բ. Դուռը թարգմանի պաշտօնով, ապա մեծատուններուն դասախօսութեամբ, իմաստասիրական գիրքերու թարգմանութեամբ(2), խորհրդականութեամբ, տնտեսապետութեամբ, հեղինակութեամբ, հրապարակագրութեամբ և որպէս վարիչ (Leader) աւանդական ըսուած կուսակցութեան, հռչակ հանեց ու հետզհետէ աճեցաւ ու նուազեցաւ 1830էն 1880՝ իբրև բազմալեզու ու բազմահմուտ՝ այդ միջոցին Թուր-

---

(1) Տե՛ս Երևակ 1 Դեկտ. 1859։

(2) Հարիւր յիսուն հատոր հեղինակութիւն և թարգմանութիւն ընդ ձեռագիր և ընդ տպեալ, մենք տեսած ու հաշուած ենք։ Իցի՛ւ Տէրոյենց չըլլար այնքան արագագիր և ջանացած ըլլար իր բազմազան հմտութեանց հետ՝ ստանալ վայելչագոյն ոճ մը և դատողութիւն անխտրական։

քահայոց մէջ գրեթէ միակ տոկուն ներկայացուցիչն ըլլալով կրօնական փիլիսոփայութեան մը։

Կ՚ըսուի թէ այս պատմական անձը, որուն անունը կուսակցական վէճերու և կղերամիտ նախանձայուզութեան մը պատճառով ետքի ատենները բաւական քաշքշուեցաւ, հազիւ 22 տարեկան՝ ունէր առատ պաշար ծանօթութեանց և քաջ լեզուագէտ էր՝ առանց դուրս ելած ըլլալու Բիւթանիական շրջանակէն։ Իր ներկայութենէն ծերունին Փէշտիմալճեան անգամ կակնածէր։ Եթէ ոչ հանճար մը՝ գէթ աննկուն աշխատութեան, լայն և սուր միտքի ու ստոյիկեան համբերութեան տիպար մը, որուն կենսագրութենէն օգտուելու պարտք և իրաւունք ալ ունի ապագային ատեանը (1)։

Այս սուղ արտուղի ակնարկներէն կը հասկցուի՝ որ Միսաքեան պատանին աչքը կը բանար յուռթի և վառ կեդրոնի մը մէջ․ այդ խմացական ոլորտը բաւական բարձր էր միւս թաղերու տափակութենէն և յարմար ապագային մարդուն միտումներուն․ պատկառելի

(1) Մենք գրեցինք ընդարձակօրէն այդպիսի կենսագրութիւն մը, զոր ապա պարագաներու բերմամբ վերածեցինք Թուրքահայոց վերջին հարիւրամեայ պատմութեան մը։ Այդ գործը դժբաղդաբար նկատուածէն տարբեր վիճակի մը դատապարտուեցաւ։

դէմքեր, հանուրին յարգանքն յանկուցող վեղարաւորներ, գրագրող աչքեր ու հասարակաց բանէն վերագոյն իմաստներու. ազգիւր չրթունք՝ գարձուցած էին զուարթամիտ պատանեկին ուշն աւելի լուրջ և բեղմնաւոր զբաղումներու: Խելամտած էր՝ որ անցոյց իմաստութիւն մը կա՛յ այդ զգօն մարդոց մէջ. հարկ էր հետամուտ ըլլալ անոր, ունկնդրել, կարդալ, օրինակել և ուսումնասիրել:

Այս չարունակութեամբ՝ ընդ հուպ յառաջագոյն աշակերտը կըլլայ դպրոցին և Հոգետունին: Հայկաբանութեան (որ ատենին բանասիրականն էր) ու քերթողական սէր մը կանո՛ւխ կլինայ իր հոգիին մէջ:

Չամչեան ու Աւետիքեան քերականութեանց հետ կը սկսի ուսումնասիրել խանդաղատանքով՝ **Ընդհանրականն ու ճառերը**: Ջերմ սիրահար եկեղեցական երաժշտութեան՝ անխափան կը յաճախէ Ս. Կարապետի եկեղեցին, և Հոգետունի մեկուսիններէն ու Վենետիկի Ղալաթական գրատունէն կառնէ բանասիրական այն հունտ-գաղափարները, որ ընդհանրապէս չեն գրուիր գիրքերու մէջ և կը հաղորդուին աւանդաբար բերնէ բերան գրագիտական **աւանդութեամբ** մը: Իր արթնութիւնն և կարգէ դուրս ուսումնասիրութիւնը զինքը պաղոնեկից կընեն իր մեծերուն, որ օր օրի առաջ կը քշեն զինքը: Ինք

ունեցած չէ սեպհական վարժապետ և շատ ալ ականջ կախած չէ հեղինակութեան, այլ ինքնօգնութեամբ և քննական ոգիովը շուտ ազատած է քաջընտիր գրողի հեղինակութիւն։

Միայն Տէրոյենցի առաջնորդելովը՝ կըրցած է ըմբռնել իր բարձրագոյն ձեւին մէջ ժամանակին հայկաբան ոգին, որ զուտ գրաբարեան էր՝ զարգացած մէկ կողմէն Վենետիկի Նկարէն թարգմանութիւններով ու միւս կողմէ Պոլսի դասական վարժապետներու գործերով։

Սկիւտարի բանաստեղծական դիրքը, ցընծակենցաղ յունաց դրացնութիւնը, Շնորհալիի և միւս տոհմային քերթողներու ներշընչումները՝ սկսած էին ձգել մաքուր կայծեր իր սիրտին մէջ, որ կը կրէր մինչեւ խոր ծերութիւնն հուր մը բանաստեղծական։ Կըսէր նաև՝ թէ Կարնեցի Շէքէրճեան Գրիգոր անուն վարժապետէ մը առած էր բաւական հայերէն դաս. պատկառանքով կանուանէր այդ մարդը։ Իր պատանեկան ուսումնակիցներուն մէջ կը յիշուէին Պարտիզպանեան Խաչատուր և Յարութիւն եղբայրները, Թադէոս Հիւնքեարպէյէնտեան, Զօրայեան Թէոդորոս, որոնց առաջինը քաջ թուագէտ մը եղաւ Բարիզի մէջ և առաջնորդ Գալեան եղբարց։

Միջոց մը սրտնելով իր թաղի խստաբարոյ փիլիսոփաներուն դէմ և յոյսով լաւա-

դոյներին՝ կը սկսի յաճախել Փէշտիմալճեանի Գրիգոր վարժարանին քով՝ ընկերութեամբ Թադէոս Հիւնքեարպէյէնտեանի (ապա Տէր Յովհաննէս)։ Հոն ալ հռչակաւոր վարժապետին միօրինակ դասերուն համբերութեամբ կը հետեւէին երկու բանաստեղծները՝ ստանալու համար դաստիարակութեան լրացումը։

Խեղճ երիտասարդները տարուան մը մէջ հազիւ տասնեւութը գրաբար էջեր դարձուցած էին Ազգաց ճարտասանութենէն, այնքա՜ն ժլատ էին այդ կաղապարուած պատուելիները։ Բայց Մխիթարեան, իր ժամանակին ամէնէն նշանաւոր Հայ մատենամոլը (1), բանասիրաբար կը լափէր առանձնակի ժամանակին ծանուցեալ մատենագիրները, և Ոսկեբերանի, Եզնիկի, Աստուածաշունչի հետ կը կարդար անդադար Ռոլէնի հատորները՝ գրաբարի այն պալատ յիշատակարանները, Զամչեանը, Դե-սաւրոսը, ձեռագիր ու տպեալ հատընտիր քերթուածներ ևլն։

Այնպիսի ատեն մը, ուր ամէն տաղաչափ բանաստեղծ կըսուէր, և քանի մը լայնատարած բառեր, ածականներու կաղամբի ճոխութիւն, համեմուած աստուածաբանական այլ-տակ ձեւերով՝ բաւական էին բանաստեղծա-

---

(1) Անուժին Ներքեւ, գրադարաններուն մէջ, մինչեւ իսկ Թեւերուն մէջ՝ գիրքեր տետրակներ, այնպէս յաճախ կը-բեւէր ինք զուրար, կըսեն ժամանակակիցները։

կամ դրոշմը տալու կարգ մը ամլի գրուածներու, զարմանալի էր երիտասարդ քերթողին՝ առանց գիտնալու եւրոպական լեզու մը՝ տալն իր սկզբնական տաղերուն այն դիւրադարձ ոլորքն և իմաստներու ուժգին խտութիւնն և ընտրութիւնն՝ որ այսօր ալ կրնան ազդել նոր միտքերու վրայ։ Եթէ համեմատենք իր երիտասարդական ոտանաւորներն ուրիշ ժամանակակիցներու գրուածներուն հետ՝ պիտի տեսնենք որ՝ Եղեկեանէն զատ՝ անոնք ամէնէն աւելի յղկուած քերթուածներն են, ուր՝ գրաբարի պէս օրինական լեզուի մը ներած չափով՝ համ, հոտ, իմաստ, քիչ շատ աւիւն ալ կան։ Հոն քննադատն յայտնապէս կը տեսնէ՝ որ ինք իւր ընկերներուն ամէնէն յառաջամիտը գտնուած է օգտուելու համար Ե. Թոմաճանի Հոմերէն, Ռոլէնի մէջ՝ Հելլէն ու Լատին քերթողներու ծաղկաքաղ թարգմանութիւններէն ու Հ. Արսէնի երիտասարդական երկերէն։

Մեզի ծանօթ իր առաջին տաղն է Այրահաւաք ոտանաւոր մը, որը գրած է ի պատասխանի Վանանդեցիի որդիին (1) Անայթ

(1) Գրիգոր Վանանդեցի ըսուած՝ Զմիւռնացի, որ քաջ գրաբարագէտ ու հելլենագէտ է եղեր, ու ատեն մը իր հօր, Տ. Յովհան Վանանդեցիի, փոխան Զմիւռնայի մէջ վարժապետելէն ետքն՝ անցեր է Պոլիս Սկիւտար Փիշմիշեանց Թախանճանքովը և հոն Սէլամսըզի դպրոցը բա-

տաղանդաւորին և արժանացած որոշեալ մրցա-նակին. վաթսուն մեծավերջ տողերու մէջ՝ քերթողն յաջողած է բոլորովին այս ձայնա-ւոր ունեցող բառերով տուեալ նիւթի մը վրայ հիւսել քերթուած մը։

Ահաւասիկ քանի տող այդ այբայբեներէն.

— Աստ՛ղ Հաղար կարդար անձայն ցաւ փա-
րաղարդ ղայն կալան,
— Կայր կալաղակ փաղցրաթարթառ ղաղղակ
թանձայր թարձրափանձ,
— Ցանցաղապա՛տ աղափացայ փարփամ փայլ
ձայն աղդարար,
— Վա՛շ փաձանամ սար նաղափայլ փաղցրա-
կարկաշ րախանայ,
— Ահ արբնակաճ(1) ճարպարաթան խաղաթաղ-
խա(2) դարբաղական,
— Թաղափամարփ արդ թարձրական թարձրա-
թարթառ արդ դանձան։

Եւ ասոնք ժամանակին ձայնաւոր ոգիին չախորժած բաներէն չէին. ասոնցմով նաեւ համբաւներ ալ կը շինուէին։

1830-36ի միջոցներուն է նաև որ մօրկանն Հեր կուղեւորի Երուսաղէմ՝ 40 օրուան ա-

ւական սանձ դատախօսելէ ետք՝ նորէն դարձեր է Զմիւռ-նիա խեղճ վիճակի մէջ, ու քահանայ ձեռնադրեր են զինքն և գունաւոր փիլոնով պատուեր են։

(1) Գրիգոր (արթուն) Վանանդեցի։

(2) Խաչատուր Միսաքեան՝ երկուքն իրարու մրցակից բանել կուզէ։

աստուածատուր մորթկալից համբերութենէ ետ-քը՝ քանի մը շաբաթ ալ Հաւադաս մնալով։ Արշիպեղագոսի պատմական գանգրիկ կղզի-ներուն և ատտիկեան իմաստասիրութեանց յիշատակին՝ առաջին անգամ ըլլալով կը դրոշ-մեն իրական տպաւորութիւններ իր տեսլապէր ու հելլենասէր միտքին վրայ, զոր ինք կը նկարագրէր ծերութեան ատեն։

Երկու ամիսի չափ ալ կը մնայ խաղաղու-թեան Քաղաքը՝ մասնակցելով եկեղեցական արարողութեանց, համբուրելով նուիրական վայրերը, համբուրուելով անոնցմէ և աջին ձախին դրոշմ առնելով կապոյտ վէտերը՝ կը դառնայ Պոլիս։

Զգիտենք ինչ պարագաներով՝ իր Թաղին քարոզիչ Աստուածատուր եպիսկոպոսին բա-նական տանն աշխատութիւն կընէ և Պարտիզպանեանի հետ և ուրար անգամ կառ-նէ։ Թերևս երիտասարդական բարեպաշտ ե-ռանդ մը մղէր զինքն առելի՛ անդին՝ մինչև վարդապետութիւն. բայց եպիսկոպոսին խիստ բնաւորութիւնն և բարեկամներու յորդորը կանխահմայեն զինքն, և խոյս կուտայ խորա-նէն։ Այդ տարօրինակ եպիսկոպոսին (որ ապա պատրիարք եղաւ) դժգոհութեանց դէմ պահած էր Միսաքեան, այդ ոխը կառնէ օր մը զուարճալի դիպուածով. Սրբազանը քարոզ պիտի տար հետաքրքրական նիւթի մը

վրայ — թէ ի՞նչ էր Ադամի ճաշակած պտու-
ղը։ Սովորութիւն ունէր համեմել քարոզը չափազանցեալ շարժումներով և անհարթել միամիտ ունկնդիրները գաւազանաձօճ բացագանչութիւններով, որ շատ ալ կը խրտչէին իրմէն(1)։ Լուսարարը խորամանկութեամբ նոյն օրը վեր չառներ աւագ խորանին կանթեղը. եպիսկոպոսն ալ ճի՛շտ կանթեղին ներքեւը կանգնած՝ կը սկսի բացագանչել ու պատասխանել թէ ի՞նչ էր Ադամայ կերած պտուղը.
— Խնձո՞ր — ո՛չ — ընկո՞յզ — ո՛չ — նո՞ւռ — ո՛չ — խաղո՞ղ — ո՛չ. հապա ի՞նչ էր և յանկարծ չեչտակի վեր առնելով գաւազանը՝ կը զարնէ կանթեղին, որ նոյն հետայն կը դառնայ և ըզգեստաւորեալ Աւվաատուր (2) եպիսկոպոսն ալ ի բերան կօծուի ձէթով վերէն վար։ Ադամայեան պտուղին խնդիրն այսպէս, ըստ ոմանց, դարձեալ անլոյծ կը մնայ, բայց վրէժը Մխաքեանին՝ որ դասը կեցած էր Պարտիզպանեանի հետ՝ կը լուծուի։ Ինք իսկ գիրի առած է այս դիպուածը կոկիկ մանրավէպի մը մէջ՝ շատ համեղ ոճով մը։

Քսան և հինգ տարեկան հասակին՝ արդէն տիրած էր Հայերէնին ու առած Իտալականին

---

(1) Այս եպիսկոպոսն առաջ Փիշիճեանի է եղեր՝ անուանի յանցգնագործ մը, որ ապա սրբակրօն անձնաւորութիւն մը դարձեր է։

(2) Իր բուն արտասանութեամբը։

տարբերը, որ այն ատեն կը բանէր արդեան Ֆրանսերէնի տեղը։

Ոտանաւոր գրելուն համար բանաստեղծի համբաւը տուած էր իրեն ազատ մուտք հարուստ բանասէրներու տուները, և իր համով կատակներն ալ՝ խօսելու համարձակութիւն մը, հակառակ ժամանակին ամիրայական խըստութեանց։ Մէկ կողմէն կը դասախօսէր, միւս կողմէն կը կարդար կը քերթէր, և սկսած էր քրթմնջել ժամանակին անձկամիտ հայկաբաններուն ամուլ մէթոտին վրայ, և հեղինակաւոր պատուելիներու ալ միտքով կաքացէր անձայն՝ օր մը աւելի աւելի աղդաձայնով նշաւակելու համար անոնց բարբարիկ ագիտութիւնները։ Իր ըսածին նայելով՝ ինք եղած է առաջինը անգամ բողոքողն Յոհան Կաթողիկոսի և նմաններուն ճապաղ և ճարճատուն ոճին դէմ, և յաջողած է՝ ազդեցիկ շրջանակներու մէջ՝ բերել միտքերն Աստուածաշունչի, Եղնիկի, Ոսկեբերանի պա՛րզ ու գիտնակա՛ն ոճին, որով գրած է ինք նոյն ատեններ տպագրուած Տէրոյենցի Ընթացք Հայերէն դպրութեան անունով քերականութեան կոկիկ ու կորովի յառաջաբանը (1)։

---

(1) Այս քերականութիւնը, որ տպագրուած է Պոլիս 1838ին, հանած է իր ժամանակին մեծ անուն, որուն հիմնագիրին վրայ ձեւած է, կըսէր յօրինողը, Հ. Արսէն Բագրատունին՝ իր Ի պէտս զարգացելոցին առաջին մասը։

Կը գրէր արձակի դիւրութեամբ յանգաւոր (և մի՛շտ յանգաւոր) ոտանաւորներ ուղերձներ, որոնց գլխաւորն է Աղաւնի Ստեփանոս Պատրիարքին ձօնուած տաղերգը։

Պատմական գիրքերու մէջ իր ամենասիրելին եղած էր Պլուտարքոսի Զուգակշիռները, զոր կը կարդար մանրադէտ հիացումով գիշերային լռութեանց սպահակերութեամբ՝ անհաղորդ տնեցիներուն գրօսանքին։ Դեմոսթենէսի, Կիկերոնի, Կատոն Կրտսերի պատկերները՝ սկսած էին զուարթէն լուրջին անցունելու երիտասարդ գրողին միտքին ձուլուածը, և զմայլած զմրած կը թեւակոխէր ազդողագոյն գաղափարներու ոլորտ մը. հո՛ն իր ընտելական կիրքերն ամօթահար կը յանդիմանէին իր առջեւ, հոն միւս ա՛յլ մը կը սկսէր անոր ներսը. ստամբակը յանխուռնք տեղի կուտար համոզումով սրբացող մարդուն, և կը վերջոտնէր ուժգին երիտասարդութիւնն ու կը սկսէր բո՛ւն մարդը. իմաստասէ՛ր մարդը։ Վերջերն անդրադառնալով կը կրկնէր յաճախ «Շա՛տ բան կը պարտիմ Պլուտարքոսի. ա՛ն կրթեց զիս. ունէի՛ ամենհի կիրքեր, ա՛ն զսպեց, անո՛վ մարդ եղայ»։ Դժուար ալ չէ մատենադէտի մը երեւակայել՝ որ քերոնացի ստոյիկեան բարոյախօսին ծանր ու ջինջ պատկերներուն ու խաթուն կչռութիւններուն ի՞նչ գեղեցիկ հակազդեցութիւններ կը-

նէին եռանդուն երիտասարդին վրայ, որ զի բանաստեղծ ու վիճակած ազատագոյն ոգին՝ չէր զերծ կարգ մը անհարթութիւններէ։

Իր բանաստեղծական ազատամտութիւնը՝ լծորդուած իր վառ սիրազգածութեանց՝ շատ տարբեր գնացք մը տուած էին իր բարոյական ու փիլիսոփայական կազմին, շա՛տ տարբեր ժամանակին վարժապետներէն ու գրողներէն, որ քանի մը դասական գիրքերու վերծանութիւնէն ետք՝ ա՛լ կարդալն իմաստասիրելն ու սիրելն ալ մէկդի թողլով՝ կը սկսէին կարդացունել երկիրպագել եւ տուն տեղ ըլլալ հանգոյն պահպանողականութեամբ։

Ինք ազատ հետաքրքրութեամբ եւ քիչ մը չափազանց բանաստեղծութեամբ՝ իր բովանդակ պարապոյ ժամերուն կը կարդար ու կը սիրապատակէր. եւ սկսած էր յաճախել Սեդրոս խանի ներշնչող գրատունը, որ Ադրիական ափունքէն շաբթէ շաբաթ կը հասցունէր Պոլսոյ բանասէրներուն իր կարմրիկ ու խատտուտիկ տպրանքները։ Հոն Հ. Արսէնի, Հ. Գէորգ Հիւրմիւզի ուշադրութեան եւ մտերմութեան արժանացած՝ կօգտուէր անոնց տեղեկութիւններէն. հետամուտ կըլլար ամէն նոր տպագրութեանց եւ միշտ առաջինն անոնք կարդացողներուն։ Միայն Հիւրմիւզի Ենէականին համար 10 անգամ Ղալաթիա իջած է Եէնի գիւղէն, եւ այն ատեն դեռ չի կար Շիր-

քէօփ-Խայրիէն։ 1838ի վերջերն հանդիսաւորապէս կը բացուի Սկիւտարի Ճեմարանը, ուրինք հայկաբանութեան դասատու կըլլայ հոն։ Իր նախկին աշակերտները կըլլան Մասիսի հին Տնօրէն-Խմբագրապետը, Տքթ. Յարութիւն պէյ, Տքթ. Ստեփան փաշա Արսլանեան, որ հին Թուրքահայերուն մէջ առաջինները կը համարուին իբրեւ հմուտներ Յունարէնի։ Ճեմարանի ուսումնապետ դրուած էր այն ատեն՝ Տէրոյենց պատուելին իբրեւ ամէնէն հասուն ու լեզուագէտն իր ժամանակին։

Խ. Գարտիզպանեանի դեգ ու յամառ բնաւորութիւնն և Միսաքեանի նետուող ոգին՝ լծորդուած իրարու տեսակ մը արուեստակցական ու քաղաքակցական համակրութեամբ ալ՝ պատճառ կըլլան հոն շատ անգամ քննադատելու ուսումնապետին դիրքը, և կռուելու անոր հետ ի դէպս և յանդէպս, մանաւանդ երբ Մ. Թորէլլի Իտալացի ճարտարապետին եւրոպական ծրագիրին կընդդիմանան ուսումնապետն ու իր պաշտպանները։ Ժամանակակիցներէն զգօն անձնաւորութիւն մը կը վերագրէ մեծի պզտիկի այս կռիւը՝ Նախանձի և Միսաքեանի ու Գարտիզպանեանի անհանդարտ ոգիներուն, որ իրենց կողմ որսալով յառաջադէմ աշակերտներէն մաս մը և գրգռելով ճարտարապետական կուսակցութեան ծածկաբար ներհակ քանի մը դժգոհ մեծատուններ՝

սկիզբ մը տուին, ժամանակին էմնաֆի ու նամիրայի ծանօթ կռիւներուն։ Հաւաստեաւ չենք կրնար ըսել ճիշդ դատաստան մը՝ թէ ո՛ր կողմն և ի՛նչ չափ իրաւունք ունէր այդ բողբոջեալ և ապա ծառացեալ հակառակութեանց մէջ, սա միայն կը զգանք յայտնօրէն որ շատ լաւ պիտի ըլլար մարել այդ հուրը.....

Այդ պոռոտ կռիւներուն պատճառաւ՝ դեռ նոր փայլ առած ճեմարանը կը խառնակի. աշակերտներն ու ծնողք կը վրդովին. կը հրաժարին երկու պաշտօնակից Սկիւտարցիները, և Պռուսացին Տէրոյենց ինք միայնակ առնելով բոլոր բարձրագոյն դասերը՝ կը շարունակէ բաւական ատեն ալ, մինչեւ որ բացումէն իբր 2 տարի ետքը կը փակուի։

Այդ միջոցին է որ Մխաքեան կը սկսի առանձինն դասախօսութեանց մասնաւորներու տուները. ծանօթանալով սեղանաւոր Խարասանճեան Պետրոս աղայի՝ իր վրայ կառնէ անոր երկու զաւակներուն դաստիարակութեան գործն՝ իր իսկ թելադրութեամբն Նէնի Մահալլէ յատկապէս բռնուած տունի մը մէջ։

Մինչեւ 1845 պատանեկան ու երիտասարդական ոստոստուն յեղուածներէ ետեւ՝ ա՛լ շինուած էր իր վրայ հոգեբանական կայուն նկարագիր մը, բաւական տարբեր ժամանակին ղուսպ և այլամերժ բարքերէն ու շատ

ալ մօտ արդի արձակ-համարձակ բնաւորութեանց, որուն վրայ պիտի հիւսուէր մեծ քննաբանին եւրոպական ինքնութիւնը։ Իր այդ յառաջամիտ ու արձակ վարքը սարսուցիչ էր կարգ մը օրինական մարդոց. մեր հին հայերը թեթեւամիտի տեղ դրած էին զինքը, վասն զի Միսաքեան սպրիկ ալ կը հագնէր, ողո՛րկ, քիչ մըն ալ փետեւետեալ։ Այն ատեն գրեթէ բոլորովին անծանօթ էին փողկապ ու արդկեալ շապիկ, և ինք բացառիկ հետեւող էր այդ ձեւերուն. զուարթամիտ ու կծանող կատակաբան, որով միշտ դատափետող անփետուրներու և ինք փետրաւոր դատափետեալ։

Լսած ենք իր հին աշակերտներէն յԱնգլիա՝ թէ Պէշիքթաշի դպրոցին մէջ գործնականապէս բացատրել ուզելով Այսօր Անճառի

«Ե— վարագոյր հին օրէնին»
«Վերուստ ի վայր պատառէին»

տողերը՝ քաշելով կը պատռէ դասարանին պատուհանի հինցած վարագոյրը. հիները անշուշտ զայրանալու էին այս անկնարկեալ ցելումին վրայ, որ ի թշնամանս էր իրենց։

Կըսեն թէ նոյն միջոցներն ալ հայրը մեռնելով՝ մահուն այս պաղ նախողջոյնը ուժգնապէս սառեցուցած է իր կրակ սիրտը, մանաւանդ երբ իր սիրական մայրը՝ հպատակելով ժամանակին աւանդական սովորութեան՝

կրկին կամարանմանայ, որուն վրայ երիտա-սարդը կը տժգունէր ու կը բաժնուէր իր ծնող-յարկէն։

Առանձին բնակարանի մը մէջ ինքզինքը կուտայ բոլորովին բանասիրութեան. այս պա-րագան խորապէս ազդած է իր հոգեկան կազմածին՝ վրայ եւ եղած է գլխաւոր պատ-ճառն իր մենասիրութեան ու դժնէաբարոյու-թեան։

Այդ մենութեան մէջ՝ ա՛լ բոլորովին մա-տենամոլ մը կը դառնայ։ Կըսկսի հաւաքել Աբգար Եւդոկիացիէն մինչեւ իր ժամանակը տպուած ամէն գիրքերն ու վայելչագիծ ձե-ռագիրներ՝ հինգ հարիւր հատորի մօտ (1)։ Մտերմանալով ոսկերիչ Յովհաննէս Միւհէն-տիսեանի հետ՝ կը համոզէ զայն թողուլ ար-հեստն եւ հետեւիլ տպագրիչութեան։

Հայ հին Տիտոն (2) կը հաւանի իր բարե-կամին յորդորին, եւ քանի մը հարուստներու խրախուսանքովը կը հիմնէ նախ Սկիւտարի Ճեմարանին մէջ համանուն տպարանը, որ՝ Օրթագիւղի Արապեանէն ետեւ՝ քառորդ դա-րու մէջ հանեց մեծ համբաւ, իր կարկու-յստակ գիրերովն եւ մաքրիկ տպագրութեամբը։

Այսպէս՝ հետզհետէ դասախօսական բա-

(1) Այս մատենադարար հաւաքածուն այրեցաւ 1872ի Նէճիպ-Մահալլէի մեծ հրդեհին։

(2) Ֆիրմէն Տիտոյ, նշանաւոր տպագրիչ ի Փարիզ։

նախիրական ու արուեստական ազատ զբաղումներ՝ կը չինեն իրեն մինչեւ 1848 փայլուն անուն մը։ Եւ ա՛լ կըսկսի ինք ալ իր կարգին ունենալ իր զմայլողներն ու հետեւողները։

Միսաքեանի այն ատենուան հետեւողներուն մէջ՝ իր նուրբ դատողականին և ոյժով հայերէնին բովանդակ կնիքն առած կը թուի գլխաւորապէս պատանին Օտեան Գրիգոր, որ մինչեւ ետքն որդիաբար կը յարգէր զինքը, և հայրն Օտեան Պօղոս աղան՝ յատուկ թեւարկութեամբ ձեռնտու կըլլար իրեն։

Իր անունն՝ իբրեւ գրող ու քերթող՝ ամէնէն նշանաւորն եղած էր ի Պոլիս. ինք իսկ զգացած էր զայս՝ մինչ կը գրէր Տ. Յովհաննէս Հիւնքեարպէյէնտեանի ուղղած տաղն՝ սկսեալ

Զգլխիմ յառաջին յաջողութեամբ իւրս, Թա՛գ . . . .

Եւ տեղի կուտար տակաւ հպարտութեան մը, որ հետզհետէ աճեցաւ իր վրայ իր մարդախոյս ծերութեանը մէջ։ Պոլսոյ մէջ այն ատեն ամէն տաղ Պուէտին բարունական յղկումներուն կը կարօտէր, և ինք ժամանակին միօրինակ նիւթերուն կըզգեցունէր հոգի ու երփներանգութիւն։

Եթէ՝ այդ ընթացքով չարունակէր Պոլսոյ մէջ իր ասպարէզն՝ անշուշտ ամէնէն բարձրը պիտի ճախրէր ժամանակին գրագէտներուն՝

մէջ ու ամէնէն գործնական կերպով արդիւնաւոր պիտի ըլլար հոս իր կարչնեղ գրիչը. աշխարհաբառի ընթացքն աւելի՛ հարազատ ծանր ու անխոտոր դրոշմ մը պիտի առնէր և Վենետիկցիներուն իսկ նախանձը զայրոյթի տանելու աստիճան ներհուն հայագէտներ պիտի կրնար հասցունել. Թերևս ամուսնանալով ալ՝ աւելի երկիւղած ու խաղաղասէր տրամ սկիզբներու նուիրէր իր փաստաբանութիւնները, բայց հայական նմանող գրականութիւնը չպիտի ունենար ո՛չ Քավուրը, ո՛չ Սոփիան (ձեռագիր), ո՛չ 1858-60ի բանաքըննականները, Թերևս ո՛չ ալ այն քանի մը պէսպիսաքանդ վէպերն ու մեծարոյեան տաղերը, որ դեռ ձեռագիր կը մնան իր բուն աշակերտներուն անհոգութեան պատճառով։

1848ին՝ Պետրոս Աղա Խորասանճեան կորոշէ Փարիզ ղրկել իր երկու որդիները (Թովմաս և Մի.քայէլ). Միսաքեանի կառաջարկեն ուղեկցիլ անոնց լիազօր հսկողի պաշտօնով։ Կը դրուի պայմանագրութիւնն և կըստորագրուի Պետրոսիկ աղային կողմէն, հաստատութեամբ Յակոբոս Պատրիարքին։ Իրենց հետ կը մեկնի նաև Կ. Ս. Իւթիւճեան, որուն կը համակրէր Միսաքեան իբրև յաջողագոյնի և հայագէտի ճեմարանի աշակերտներուն մէջ։

Մեր երիտասարդ Պոլէտին մտաւոր վի-

ճակը ապահովականապաշտպանուած էր ցայս վայր՝ գրեթէ միայն հայերէն գիրքերու ընթերցանութեան և Պոլսական գաղափարներու ճառակումին մէջ՝ այնպիսի շրջանի մը, ուր Վենետիկ կարդացողը մատո՛վ կը ցուցնէին իբրեւ անհաւատ, ուր ամէնէն վնասմ գիրքերն համարուած էին Հիւրմիւզի Ենեակաթն ու Անախարսեայ ուղեւորութիւնը, մինչ Լամարթինի, Շաթոպրիանի քանի մը գլուխ-գործերն՝ իբր անգիւտ նորանշաններ՝ ցանկալի զարդերն էին քանի մը առանձնաշնորհեալներու։

Բայց ինք ունէր հայկաբանական պատմական ու դիցաբանական հիւթեղ պաշար՝ հանդերձ յատուկ դատողականով, որ զօրացած էր Հ. Եփ. Սեթեանի և նմաններուն տեսականովը և Պոլսոյ չուկացի հայերուն վարպետ և սուր գործնականովը։ Բաց ուսումնասիրած էր գրաբառ քանի մը հոյակապ գործեր, արթուն և արձակ հետաքրքրութեամբն աղէ՛կ դիտած էր իրերն ու մարդերը, ստացած էր հզօր բնաւորութիւն և փիլիսոփայական տրամախոհող կամք մը․ լեզուն առած էր կորով և գոյն առնական՝ զերծ ադէտ նորութիւններէ, վայելչամտութեամբն հանդերձ միշտ դիւրիմաց հասարակ ժողովուրդին․ ինչպէս կերեւի Սերվիչէն էֆ․ի Մանկացածութենէն, որուն աշխարհաբառն ինք սրբագրած է։ Կարդացած էր 2-300 հատոր գիրք ու բաւա-

կանգնալէն ալ փորձառու եղած կեանքի ներհակներուն, դժնդակներուն և անակնկալներուն՝ ա՛լ ջերմալէն յարելու համար իմաստութեան, գաղափարի մարդոց այն անկարօտ մտերիմին, որ իր 24 տարիի պանդխտութեան միակ սփոփին և ընտանեակը պիտի ըլլար Ֆրանսայի ոստանին մէջ։

Այսչափ ինչ կրնանք ստուգութեամբ գիրի առնել երիտասարդ Միսաքեանի կենցաղին առաջին երրորդին վրայ. երկրորդն (իբրեւ քառորդ մը դար) անցուցած է Փարիզ և վերջինը՝ ծերութիւնը՝ Պոլիս ի Սկիւտար։



## Բ. ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

*Միսաքեանի բաժանումը Պոլիսէն եւ ուղեւորութիւն դէպ ի Բարեկրն Արեւմուտքի. — Անձայիպ մարդն ի Փարիզ նման ժրանեկի փիլիսոփային. — Զինքն եռգեգրելու դժուարութիւնը, իր Սոփիան, Կալ ստանանները ու Հայկանոյշից ժողովը. —1848ին Փարիզը, Միսաքեան եռն լրագիր մը հրատարակելու գաղափարով. — Հայր Արսէն Բագրատունիի նամակը. — Ճաշակներ Հ. Արսէնի եւ Հ. Եդուարդ Հիւրմիւզի համերակալ թարգմանութիւններէն. — Միսաքեանի նախանձոտները ու չարախօսները. — Հ. Եդուարդ Հիւրմիւզի յուսանկարը. — Եպիմենիդէս ի Վոսփոր և Կուրաց դաստիարակութիւն. — Իւրիւնեան 1851ին կը դառնայ Պոլիս եւ կը հիմնէ Մասիսը. — Անոր սկզբնական յաջողութեանց պատճառները. — Անոր մէջ Միսաքեանի յօդուածները 1858-1861. — Բանաքննական ակնարկ մը անոնց վրայ. — Ճաշակներ Դեմոկրիտեայ ժպիտներէն, Նշանք ժամանակիէն, Տքնութիւններէն և ոտանաւորներէն. — Գ. Աղաթոնին գրած իր ցուցադրական նամակը. — 1861ին Պոլսի գործերը ու անձերը. — Լուսամիտները վերաբերումով Միսաքեանի, որ կը լռէ եւ կ'ըլլայ Բրէքարաթէօս յուսանկարի. — Հ. Եդուարդ Հիւրմիւզի նամակը. — Անոր եւ Միսաքեանի ոճերը. — 1861էն 1875 Միսաքեան Եմպեդոկղ յետեա. — Իր բեղաբերութիւնները եւ Փարիզցին առ ինքն. — Միսաքեան Պոլիս գալու վրայ:*

## Բ.

Երեսուն երեք տարեկան էր Մխաքեան 1848ին՝ երբ կը բաժնուէր իրեն ծնունդ և սնունդ տուող գեղեցիկ վայրերէն՝ վկայ իր գեղեցիկ օրերուն բանաստեղծական ստահակութեանց և յախուռն գործունէութեանց, այսպէս յանկարծ դուրս նետուելով արեւել-եան վառ այլ անձուկ հորիզոնի մը և անձ-կագոյն գաղափարներու ցանցին մէջէն՝ ձե-ռընտուութեամբ հարուստ և բանասէր սեղա-նաւորի մը։ Շիտակը բեղուն բաղդ մըն էր աս իրեն համար. արեւմուտքի Բաբելոնն՝ անց-եալ դարէն ի վեր քանի մը հնգեակ Հայու երես հազիւ տեսած էր ցայն վայր. Պոլսէն ալ գրեթէ առաջին անգամն էր որ խումբ մը մայրաքաղաքացիներ ճամբայ կելնէին՝ խաճ-վէճիուրեճէ, պէնավաճառութենէ տարբեր ուսումնասիրութեանց համար, և պիտի յաջո-ղէին գերազանցապէս՝ իրենցմէ շատ եռքերն համնողներէն ալ աւելի, վասն զի տեսակ մը խորադէտ համերաշխութեամբ զերծ պիտի կըրնային մնալ այն կարգ մը արտուղի ու-սումնասիրութիւններէն՝ լուսատիպ ու արուես-տահնար հաճոյքի բոցերէն, որ կը չէզոքա-ցունեն ամէն լուրջ բան՝ տալու համար պան-դուխտներուն և իրենց երկիրին՝ դիտուածին բոլորովին հակառակ փայլ ու փառք մը —

ախտաշարժ զէվզէկութիւն և ծաղրող գիտասաստութիւն մը։

Միաքեանի հետն էին Խորասանճեան երկու եղբայրները (մէկը բժիշկն ականաւոր) և Կ. Ս. Իւթիւճեան, որ վաճառականութիւն պիտի սորվէր Փարիզ, միւս կողմէն ալ՝ օգնելով Խորասանճեան հարազատներուն Հայերէնին։ Ունէին իրենց ուղեկից քանի մը Հայեր ալ, որոնք չգիտենք յիշել անունով և որոնք յիշուելու արժանի բաներ մըն ալ չեղան ապա։

Կը խոստովանինք հոս՝ որ բաւական դըժուար է մեզի համար այսքան հեռուէն մանր նկարագրել Փարիզի պէս քաղաքի մը մէջ այս աճայիպ (1) մարդուն քսան և չորս տարի անցուցած փիլիսոփայական կեանքը։ Եւ շատ ալ աշխատեցանք որ վաւերական բաներ մը քաղենք ժամանակակից անձերէն ու գիրերէն, բայց գրեթէ ի զուր։

Միաքեան թուի քանի մը տարիէն շատ քաշուած կեանք մը անցուցած է հոն՝ գիրքերու, հաւերու, լուսանկարչական և ուրիշ արուեստական գործիքներու մէջ, մինչեւ որ տարիներ ետքը Տ. Յովհաննէս Հիւնքեարպէյէնտեան ալ հանելով՝ մտերմական հայ

(1) Այսպէս կանուանէին զինքն այն ատենուան Ուսումնական Խորհուրդին անդամները։

կենցաղ մը կըրցած են վարել հոն՝ բաւական ատեն ։

Իր խնամարկած ազնուականներէն Տօքթ. Խորասանճեան էֆէնտի՝ նմանեցուց օր մը մեզի այդ Փարիզի կեանքը Գուէտին, բաւական ճիշդ համեմատութեամբ, ծընէվցի մեծ գլուխ փիլիսոփային կեանքին, որ արտակարգ գիծերու մէջ ապրած է արդարև մեր Գուէտէն զուգահեռաբար ։ Իր ներքին կենցաղին վրայ հո՛ն Փարիզի մէջ, սակայն. համրաբար ծանրացած կը նկատենք Թաքուն քող մը, զի ժամանակակիցներն ալ արդէն ծածկուած են մեծ մասամբ այն Թանձր քողին՝ հողին՝ տակ, որուն յաւիտենական ծանրութեան ներքեւ կը զաղի ու կը հալի չա՛տ բան ։

Ահա այս պատճառով չպիտի կրնանք նշանակել ճշդիւ՝ Թէ համաշխարհական այդ ոստանին ո՛ր անկիւնէն կը հետեւէր հայ իմաստասէրն համաշխարհիկ մեծ միտքերուն և անցքերուն, իր ասիական միտքին ու վարքին վրայ ի՛նչպիսի յեղումներ կուտային անոնք, իր հին նախըմբռնումներէն որո՛նք և ի՛նչ նոր երեւոյթներու տեղի կուտային, իր ինքնութիւնն զգացումներու կողմէն ի՛նչ կշիռ կառնէր. վերջապէս հին մարդն ի՛նչպէս կը դառնար կըլլար նոր մարդ, եւրոպացի ։

Հոգեբանական այս ուսումնասիրութիւնն ալ՝ որ ամէնէն մանրագիտականն էր մեզի

համար, պիտի կըրնայինք, դէթ անդրադարձայր, ձեւել՝ եթէ մանրամասնաբար ուսումնասիրած ըլլայինք Փարիզի մէջ արտադրած իր ամբողջ գործերը, ձեռագիր ու տըպեալ։ Իր պատմած քանի մը մանր դէպքերը, յիսունի չափ ինքնագիր նամակներ, երկու հարիւրի մօտ բարեկամական թուղթեր ու 1858էն մինչեւ 1861ի Մասիսներու մէջ շարք մը բանաքննականներ կուտան մեզի գաղափար մը այդ քսան և հինգ տարուան գործունէութեան վրայ։ Ասոնցմէ զատ՝ ձգած է երկու-երեք հազար էջի մօտ ձեռագիրներու կտոր կտոր չեղջեր, որոնք գրած է Փարիզի մէջ իր պարապոյ ժամանակները, և կերեւի թէ կը պատրաստէր իր տնօրինութեամբն հրատարակելի հանդէսի մը համար։

Վէպեր, թարգմանութիւններ, ճաշակներ, տաղեր ընտիր աշխարհաբառով մը, որոնցմէ Սոփիան ու Կաղ Սատանաներն և Հայկանուշիյ ժողովը խմբագրուած են Եպիմենիդէսի կուռ. ոճովը։ Այս ձեռագիրներուն մեծ մասը՝ իր ստացուած 2000ի չափ գիրքերուն հետ կը գտնուի արդ՝ (մինչեւ 1901 Յունուարի 1 թուականը) Սկիւտար Ս. Խաչ վարժարանի կից քարուկիր թանգարանը։

Իր ուսանող ուղեկիցներուն հետ Փարիզ հասած միջոցին՝ Ֆրանսական այդ գաղափա-ակոծ ոստանը կը յուզուէր մեծ խնդիրնե-

բով. Լամըննէ, Ռուայէ Գոլլար, Վիքթոր-Գուզէն, Օ. Գօնդ, Կիզոյ՝ հիներէն, և Լամարթին ու Վիքթոր Հիւկոյ նորերէն՝ իրենց պատմական գիտնական ու բանաստեղծական երկերովը և արարքներովը կը փայլէին Լուի Ֆիլիբի կառավարութեան շուրջը։

Հայերուն համար մանաւանդ՝ շատ կոյս հրապոյրներ կընծայէր ակադեմական մեծ քաղաքը, որ դեռ չէր առած տեւտոնեան վերջին կապարէ դասը. զեղուն թաթաղուն սերճ և խորոխտ չքեղութեամբ և ազնուական համարձակութեամբ։

Մեր փիլիսոփայ ճանապարհորդը՝ կողջունէ իր ուղեկիցներուն, հանդարտ զուարթութեամբ, մեծ այդ մայրաքաղաքը ու կը զետեղէ իր ճանապարհի դոյքն ոչ այնքան նշանակելի փողոցի մը իններորդ յարկին մէկ խորշը, (կարծեմ Ռուայէ Գոլլարի բնակած թաղը)։

Ո՛չ Ֆրանսացիներուն իմացական ու նիւթական անբաղդատելի վիճակը, ո՛չ ալ իր հանգիստ ու արգոյ դիրքը՝ չեն դադրեցուներ Միսաքեանն իր համազգիներուն վրայ մտածելէ, իր կարիքին հաւասար անո՛նց ալ օգնելէ և այս դիտումով իր Պոլսոյ ծանօթներուն հետ թղթակցելէ։ Զետեղելէ ետեւ իրեն յանձնուած երիտասարդները իրենց պատշաճ կրթարանը՝ կըսկսի մէկ կողմէն զօրացունել իր Ֆրանսերէնին և միւս կողմէն Փա-

ընդլի մէջ լրագիր մը հրատարակելու պատրաստութիւն տեսնել։

1849ի սկիզբները՝ այդպիսի լրագիրի մը հրատարակութեան համար թղթակցութեան կըսկըսի Կրճիկեան Յակոբ էֆ.ի հետ, որ կը խոստանայ իր կողմէն 500 ղրուշ և ծանօթներէ ու բանասէրներէ 15000 ղրուշ հանգանակել»

Կրճիկեան Յակոբ էֆ.ն՝ այս ձեռնարկին պէտք եղածին պէս չկրնալ նպաստելուն գըլխաւոր պատճառ կը ցուցընէ՝ իր նամակներուն մէջ՝ ժամանակին Պոլսոյ եկեղեցականներուն և աշխարհականներուն մէջ տիրող հակառակութիւնը, գրական մարդոց վրայ դեռ իրրև պարզ վարժապետներու նայելու հին սովորութիւնն ամիրայական և հրաժարեալ Մատթէոս Պատրիարքին անմեռող ոգին, որ կուսակից առնելով իրեն Միջագիւղի ակնական աղաները՝ կը յարձակէր իրենց վրայ։ Ասոր համար ետ կը մնայ լրագիր մը հրատարակելու այս առաջին խորհուրդը (որ թուի այն ատեն ալ գրիչ բռնողներուն միտքը գիշեր ցերեկ շատ մաշեցունող խորհուրդներէն էր)։ Եւ Միսաքեան՝ ուրիշ պատեհութեան մը յուսով՝ կըսկըսի իր բանաստեղծական աշխատութեանց։

Որչափ որ ալ Ջերմեռանդն բանասէր՝ չենք կարծեր որ երիտասարդն Միսաքեան

փոքր ի շատէ բռնուած չըլլայ Ֆրանսայի աշխարհաքաղաքին կայուն և գնայուն գեղեցկութեանց ու արուեստականն հրապոյրներուն, որ Պուլըվառ տէ-զ-Իթալիէնի վրայ պողոտաներէն մինչև շուրջանակի արուարձանները կը տիրապետեն եւրոպական մեծվայելչութեամբ, մանաւանդ այն ատեններն որ դեռ իր կատարեալ ոյժին և ուժգնութեանց մէջ կը խայտար անհանդարտն ու գեղազէշ Ֆրանսա. թուի նաև առջի բերան բաւական ճոխ կեանք մը անցուցած ըլլայ հոն և բաւական ճովարցայութիւններ ըրած՝ եթէ ստոյգ են նոյն ժամանակն իր նախանձորդներուն և անտիպական տետրուն գրածներին իրեն վերաբերումով: Այլ իբրև գրագէտ ու գեղագէտ՝ իր տիրող կիրքն եղած է միշտ բանասիրութիւնն և բանաստեղծութիւնը:

Նոյն՝ 1848ի՝ միջոցները Հ. Արսէն Բագրատունին ալ հայերէնի թարգմանած ըլլալով Իլիականի առաջին գլուխը՝ Միսաքեանի փարիզին համեմատ կը ղրկէ անոր օրինակ մը ինքնագիր նամակով, որուն պատճէնն է.—

Արսէն վարդապետ Բագրատունի, Պարոնիդ Խաչկանդ Միսաքեան խնդալ: Ոչ կարացեալ զլանալ զբանաւոր ըղձումն մտերմութեանդ, կատարեմ աւասիկ՝ առաքելով զսկիզբն Իլիականին Հոմերի, տողս քառասուն և ինն, որչափ և ի հելլէն բնագրին են

ցայց, երբեմնք մարթ են ընծայել միութիւնսն յընտիր քերթուածս։ Ա. յանստորար ածոյ հաւաս տարապարուեստ իմաստից քերթողին. որ ոչ եթէ այնպիսի դիւցազնաց իցէ Պինդարոս որպէս Որատիոս, կամ Վիրգիլիոս երբեմ զՀոմերոս Բ. ի կարգաւորութենէ դիւցազնականին, փիլիսոփայականն և պատմականն տեղեկութեանց։ Գ. յանհնարութենէ բարձրագոյն լեզուի ըստ քերականն մասին։ Թարգմանիչ ոք երկրորդ միութեանն գտանէ հնարս պարզութեան՝ համառօտ ճեկնութեամբք. իսկ առաջնոյն և

---

## ԻԼԻԱԿԱՆ ՀՈՄԵՐԻ

### ԳԻՐՔ Ա.

Աստուածուհի՛, երգեա զՊելեան Աքիլլեայ
Զաղետաբերն Աքայեցւոց քէն դըժնեայ,
Որ զդիւցազանց քաջաց հոգիս յոգներամ,
Սանդարամետս ի խոր իջոյց տարաժամ.
Ըզգլխակունքս նոցին կուր արկեալ շանց,
Կո՛ւր ըզնոսին արկեալ հաւուց գիշախանձ.
Եւ կատարէր Որմըզդականն վըճիռ,
Յորմէհետէ ծանրացասումն ի գըրգիռ
Պառակտեցան իշխանն արանց Ատրիդէս
Եւ դիւցազարմ ընդդէմ միմեանց Աքիլլէս։
Ո՞ ի դից հեռ էարկ և կռիւ ի նոսա . . .
Ի Լէտոեայ ծընեալ զաւակըն Դիայ,
Սա զախտըն ծանր առ ի բանակ անդր ընկէց,
Էարկ տարապատ մեռելակոյտ ամբոխ մեծ,
Ի բարկութեն բըրդեալ յիշխանն Ատրիդէս
Զի զքրմանայն արհամարհեաց նա զՔրիսէս . . .

Թրգմ. Հ. Ե. Հ.

երգարուեստին՝ չգիտեմ որպէ՛ս, առանց տաղա-չափեալ քերթողին, և դաշնաւորին քերթո-ղական լեզուն անսատանելոյ։ Եւ իցէ՞ ինչ օրէն առնել զայն առ ի դիւրութեան ամենե-ցուն ըմբռնելոյ․․․։

Բաց երկոցուն դոցա ի մի վայր հասելոց՝ հարկաւ թանձրանայ և մթութիւնն. Եւ իցէ՞ ինչ այդ թարգմանչի մեղ․․․

Զքնական պարզութիւնն Հոմերոսի, համե-մատ վայելուչ վսեմութեամբ, ինքնին ան-սանէ մտացի բանաստեղծին կենդանագրեալ ի հա-րազատ թարգմանութեան, այդ ըստ անզգա-ծոյծ ոճոյ վաղեմի ժամանակին։ Իսկ ըստ նո-րոյն, օրինակ իմն, ոչ զնոյն բարձրախօսութիւն ունի միևնոյն Վիրգիլիոս յԷնէականին կամ ի Մշակականսն և ի Հովուերգութիւնսն։

Ըստ այսոցիկ ընտրելի է դատումն քեր-թածոց և նոցին թարգմանութեանց։

Այսչափ ինչ ի յուշարար յիշատակ մտա-ւորիդ։

Ողջ լեր

Ի Բիւրքիա, ՌՄՂԷ, հոռից ամսոյ ԺԶ:

Հ. Ա. Կ. ԲԱԳՐԱՏՈՒՆԻ

Այս մեծ քերթողին ու ժամանակակից քանի մը անձնաւորութեանց Միսաքեանի հետ այս մտերմական կցորդութիւնները, ինչպէս նաև իր անկախ գիտակցութիւնն իր կոչումին, մէկ կողմէն ուռեցունելով իր բնաւոր ինքնա-

սիրուԹիւնը՝ միւս կողմէն ալ կարգ մը ազուեստակիցներու և պարապորդներու նախանձը գրգռելով՝ պատճառ եղած են տակաւ Փարիզի մէջ իր կենցաղին ու իրեն սաներուն հետ իր վարմունքին վրայ խել մը չարախօսուԹեանց և զրպարտուԹեանց, որով վերջապէս Խորասանեանք կառնեն իր քովէն իրենց զաւկըներն, ու ինք զրկուելով բաւականաչափ Թոշակէ մը՝ կըստիպուի իր ապրուստին համար պարապիլ գեղեցիկ ձեռնարուեստի մը, լուսանկարչուԹեան։ (1) Իր բա-

(1) Նշանաւոր անձերու լուսանկարներն հանած է քերԹողական նրբուԹեամբ մը և շատին ներքև ոտանաւոր ձօնով, Հ. Եդուարդ Հիւրմիւզի լուսանկարին ներքև կը գտնենք հետևեալ տաղը.

Վերջինն Հայոց թարգմանչաց,
Ո՛վ որ հայիսդ ի պատկերդ,
Է առաջի քո աչաց:

—

Զասկեղենին մեր դարուն
Զինաղագեղ բարբառոյ
Սա 'նծայեաց մեզ նոր գարուն:

—

Քորք Պիերեանք յորրանէ
Զդա ընկալեալ յորդեգիր,
Որպէս ինք իսկ վըկայէ

—

Եւ ի Հայոց մուսայից՝
Ո՛չ ոք քան զսա ձայն ազու
Քնարին արար դաշնակից

—

բեկանեալքէն Կրճիկեան Յակոբ էֆ. ալ կը յատկացունէ իրեն անձնական փոքրիկ նկար մը, որով կըլնայ պարապոյ ժամեր տրամադրել գրականութեամբ ալ զբաղելու:

Բայց հրապարակի վրայ շատ բան չէ ցուցած յայնժամ. մինչև 1858՝ տասը տարւան մէջ՝ Եպիմենիդեան և Կուրաց դաստիարակութեանն զատ բան մը չէ հրատարակած Փարիզէն: Նախ իր աշակերտներուն ձեռնկալութեան և ապա տեղական նոր և խուռն ուսումնասիրութեանց զբաղած՝ չէ կըրցած և չէ ալ ուզած, հիներուն սեպհական երկայնամտութեամբ մը, հրապարակ ելնել լաւ մը չհասունցած:

Իր միւս մտերիմ ուղեկիցն ալ՝ Կ. Ս. Իւթիւճեան՝ քիչ մը ատեն Փարիզի մէջ վաճառական ուսումի զբաղելէն ետև, 1851ի

---

Նախնեաց գնդին վերջապահ
Կեայ նա դեռ եւս, այլ ընդմին
Դարանակալ շինի մահ:

—

Անմահ երգոցն է բերկրեց,
Այլ ի պահել ապագայց
Եւ զպսակերն իւր՝ եւ Գրեէս,

—

Սիրող Նորին եւ համբակ
Լուսանըկար դրոշմեցի
Զկենդանագիրդ ի հիշատակ:

1858 ի Լուտետիա

վերջերը կը դառնայ Պոլիս, և, օգտուելով Տէրոյենցի և անոր խումբին դէմ տիրող հակակրութենէն, պաշտպանութեամբ Օտեաննե-րուն և Նորատունկեան Գէորգ աղային՝ կը յաջողի ձեռք առնել Տէրոյենցի անդրանիկ թերթը, որուն ծախքը Պատրիարքարանը կը հոգար, և անունը փոխելով Մասիսի՝ հրա-տարակել զայն նոր ոճով և պիրկ աշխարհա-բառով։

Եւրոպայէն դարձող և Պոլսոյ նոր դպր-ոցներէն ու ճեմարաններէն նոր ի նորոյ հասնող-ներուն խումբը կազմելու վրայ էր բոլորովին նորին երիտասարդութիւն մը՝ ֆրանսագէտ ու ֆրանսախօս ալ, սնած Վոլթէրի, Մոլիէրի, Շադոպրիանի և այլնի գործերով, և այս գոյն նկարագիրով՝ բաւական տարբեր հին դպրո-ցէն ու մարդիկներէն, որոնք հետզհետէ սկը-սած էին տեղի տալ իրենց Արապեան ապա-բանովը տիրացուական վէճերուն և ժողով-ներով և կարի չարշիական կազմակերպու-թիւններով։

Անոնց համար առաջին բարեպատեհու-թիւն մըն էր Մասիսի նորաձև երեւումը. ա-ռաջին թերթը 1852 փետր. 2ին մեծ ճիգե-րով և եռանդով հրապարակ ելնելով՝ կը գտնէ, մանաւանդ Խասգիւղի և Սամա-թիայի յառաջադիմականներէն ու Շահնազարեան վարդապետի վէճերուն առիթով գժդմընած

Ճանապարհանմներէն, յուսացուածէն աւելի յաջողութիւն։ Արդէն բազմահմուտ Տէրոյենցի աշխարհաբարը՝ թէպէտ բառերու ընտրութեան և հարազատ բացատրութեանց կողմէն ընտիր՝ այլ հինցած ու յոգնած էր իր զուտ հայերէն սահմանին մէջ, և անքուն գրագէտին բազմազբաղ արտադրութեան վրայ՝ ռամիկին ալ հասկընալի ըլլալու ճիգ մը՝ տուած էր անոր ռամկական կնիք մը. Կ. Ա. Իւթիւճեան՝ փարիզեան ու երիտասարդական ճաշակովը յատուկ մատենագրութիւն մը ըստացած էր թեքեալ և ածանցունող աշխարհաբարի, որուն քիչ-նպաստած ըլլալու չեն Միսաքեանի խորհրդակցութիւնները ալ։ Ասոնց վրայ եթէ աւելցունենք 42էն ի վեր Պոլսոյ հայերուն մէջ բողբոջած կրթասիրական և ընթերցասիրական առոյգ և անդորր զգացումները՝ կը գտնենք Մասիսի սկզբնական ու հիմնական յաջողութեան գաղտնիքը։ Այս յաջողութեան նախկին աւետիսն՝ իբրև մտերիմի՝ Իւթիւճեան Միսաքեանի կը հաղորդէ նամակով մը, յորդորելով ալ որ Պուէտն աշխատակցի իրեն։ Սակայն մեր պանդուխտը՝ մինչեւ 1858 թուականը՝ ընդարձակ գրութենէ մը զատ՝ բան մը չէ հրատարակած Մասիսի մէջ. միայն խորհրդատու եղած է անոր մտերմական նամակներով, որոնց մէջ իր հին ու նորով բարեխառնուած ոճովը կը

տրամախոհէ նոր խմբագրին նոր ոգիին հետ։

Իր հասուն և չարունակեալ յօդուածները կը սկսին 1858էն և կը տեւեն մինչեւ 1861՝ փարիզեան Մեղուով և Ֆրանսական նրբամտութեամբ երփնազարդուած։ Իր Տքնութիւնը, Վարդան փաշայի դէմ գրածները, Միրիքելեան Կարապետ բողոքականին թաղումին առիթով Մեղուի մէջ գրած Գերեզմանը, Ս. Ոսկանեանի Արեւելք և Արեւմուտք թերթերուն վրայ բանաքննական երգիծանքն՝ իր հրատարակութեանց ամէնէն փայլուններն են, թէպէտև դժբաղդաբար մեծ մասով վիճաբանական ըլլալնուն համար չունին տեւական յատակ մը, իբրեւ գիտնական կամ մատենագրական յիշատակներ։

Այդ քանի մը տարուան Մասիսները, սակայն, Պոլսոյ մէջ ձեռքէ ձեռք յափշտակուած են, և ինք խմբագիրն՝ ատենին Պոլսոյ մէջ ամէնէն հմուտ երիտասարդ հրապարակագիրն՝ հիացումով յայտնած է միշտ իր շնորհակալութիւնները Միսաքեանին՝ բացարձակապէս վկայելով թէ այդ յօդուածներն ընթերցողաց «հիացումն խանդաղատանքի (enthousiasme) հասած» էր։ Այդ կրանիդ բանասիրականներն ու վիճաբանականներն՝ իրաւամբ ըրած էին զինքն օրուան լաւագիր քննադատը. առանց անկեղծութեան շահու՝ իրեն նպատակ ըրած ճշմարտութիւնը՝ կը

փայլակեցունէ ինք հոն իր ոսոխներուն գըլխին՝ փա՛ստ, լեզո՛ւ կարկո՛ւտ հմտութիւն՝ մանաւանդ դիցաբանական, ճարտարխօսական կորով անծանօթ, սեղմ տրամաբանութիւն՝ համեմուած վառ ու յաղթական ժպիտներով, սրաբանութեանց խիտ անակնկալներով: Իր կորովն ի բանի՛ն և ի լեզուի՛ն է. չի կայ հոն թեթեւութիւն, խամութիւն, գգուած ասութիւն, Նիւթոյ և ոճի աններդաշնակութիւն և անարի սուտակապաութիւն, այլ միշտ Նիւթին և դասին հո՛յժն է՝ զոր առնելով սեղմ ու կշռուած հիւսքի մը մէջ, փոքր ինչ դիցաբանական շռայլութեամբ ու հելլէն բարձրայօնութեամբ, կը շարէ մարգարիտէ բառերու հատիկներով. վիճաբանութեանց մէջ ալ երբէ՛ք չխաղար բառերու և երկրորդական տկարութեանց հետ. ոսոխն զգետնած ատեն անգամ՝ կը փայփայէ անոր երեսները, հերիք է որ սիրտէն վիրաւորուած չըլլայ ինք: Կը թուի հոգի կուտայ ճշմարտութեան համար. կը մոռնայ դէմինը, կը մոռնայ պճնող և քըմահաճող Փարիզը, կը մոռնայ մերթ ինքզինքն անգամ, ու կըսկսի փաստաբանել պարզ պերճութեամբ ա՛յնպիսի յաղթ գնացքով մը՝ որ թաւալում մըն է քան հոսում, և կը հասնի կանխակշռեալ երագութեամբ բուն եզրը, Նկատեալ չեզոք եզրակացութեան. ա՛լ շահուա՛ծ են բոլո՛ր ընթերցողները, ա՛լ ոսոխն ալ կը մրմնջէ.—

— Այո՛, այդպէս է։

Այո՛, այդպիսիներո՛ւ ձեռքով նախ անցաւ տափական հայ դպրութեան մէջ եւրոպական այն սեռը և կարգադրէր ոյժը, որ ինքն ալ հետզհետէ աճելով և նուաղելով՝ ինկա՛ւ, թուլցա՛ւ և պիտակցա՛ւ միջակական ճապաղ գրուածներու և արուեստակեալ հոգեբանութեանց մէջ՝ մինչեւ որ մեր օրերն հասաւ ընդարձակ այլ կա՛րի չահախնդիր մերթ կարի՛ փառասէր, կարի՛ մնափառ ու անմատենագէ՛տ զուտ լրագրականութեան մը։

Միսաքեանի այդ հակա՛յ եւրոպական ոճին մէջ՝ կրնանք ըսել՝ Մագոլէ՛յ մը կայ, որուն անգղիական լա՛յն լրջութեան տեղը բռնած է պողպատի համեստ զգօնութիւն մը հայ՝ բարեխառնուած ֆրանսական կրակ զուարթամտութեամբ։

Տա՛նք՝ գործիս չափին ներած պայմանով՝ այդ արձակներէն քանի մը ճաշակ, իբրեւ պատահական ընտրութեամբ։

—ԺՊԻՏՔ ԴԵՄՈԿՐԵՏԵԱՑ Գ. «Օրագիր մը դատարան մըն է, ուր դատաւորին բարեկամներն ու ատելիներն հաւասարապէս դատի մտնելու իրաւունք ունին։ Հոն դատաւորը, ո՛չ Ժամկոչեանին բարեկա՛մ է, ո՛չ Գ. Վարդապետին թշնամի, ո՛չ Միսաքեանի աշակերտ, ո՛չ Պօղոսի փեսայ և ո՛չ Պետրոսի աներ։ Անիկայ ամէն մարդէ անջատեալ մարդ

մը, և պարզամտեայ է գաւառացու ճշմարտու-
թեան, որ իրեն յանդիման եղածներուն ամէ-
նուն ալ մինչև կը նայի. այնինքն՝ մէկուն
ալ երեսը չտեսնար, և ամէնուն ալ ձայնին
միայն ականջ դնելով, կը վճռէ դատաւորին
բերնովը։ Դատաւորը դատարանէն մեկնելէն
ետև, քաղաքացի, ազգական, դրացի, բա-
րեկամացը բարեկամ, և եթէ իրեն կը վայլէ,
թշնամեացն ալ թշնամի է։

Օրագիրի մը սրբազան պարտքն ու նուի-
րական պաշտօնն է այս։ Ի՞նչ կըսէ անոր Գ.
Ճամկոչեան։ Իր հեգնական գրուածքին նա-
յելով, կը թուի թէ ինք հեռու է այս կար-
ծիքէն, և կուզէ որ օրագիրը ջոկատի մը
ձայնարկուն, գործիքը, ախոյեանը, պատնէշն
ու կաղապարն ըլլայ. իր կողմը չեղողներուն
դէմ յարձակմունք հանէ, իր հակառակորդաց
արդիւնքն ու իրաւունքը ժխտէ և իր բարե-
կամաց վաստակաւորութիւններն ու անիրաւու-
թիւններն անգամ արդարացունէ ու ներբողէ։

Ասանկ փոքրոգի մտածութեանց և զգաց-
մանց հակամէտ օրագիր մը՝ պիծակ մըն է,
որ ազգին ընկերական որ և իցէ փեթակէն
մի՛շտ կը վռնտուի, մի՛շտ մեկուսի կը մնայ.
ինքնին կը կորնչի։ (1) Փարիզ 27 յունուարի
1860» տե՛ս Մասիս թիւ 419։

---

(1) Ընդհակառա՛կ կը . . . շատ անգամ, մանաւանդ այն
ատեն (1860էն 1875).

— ՆՇԱՆՔ ԺԱՄԱՆԱԿԻ, Քավուռի մասը Ա. Լեզուաց և կրօնից այս խորանդուղունդ վիհերն՝ ազգ. և ազգինք իրարմէ բաժնած և չարաչար զանազանած անդերքէն, բարէ՛, առկաւին անանկ մարդիկ կը ծնին, որ աշխարհը եկած ատեն անծանօթ՝ Ցոյն կամ Իտալացի են, օրինակ իմն, և մեռած ատեն՝ ամէնազգի կամ աշխարհաքաղաքացի կերթան:

Ասոնք իրենց ներգործութեամբը՝ բովանդակ մարդկութեան սէրն ու համակրանքը ստացած ըլլալով՝ այն անջրպետող վիհերուն վրայ հետզհետէ մէյմէկ կամուրջ և ազգաց մէջ մէյմէկ կապ կցորդութեան կըլլան, որ իրարմէ օտարացած ժողովուրդները տակաւ իրարու մերձեցունելով ընտանեցունելով՝ տիեզերական միութեան ճարտարապետները կը համարուին: Ասոնք են, որ մեծ մարդ, հոյակապ անձինք, ծայրագոյն հանճար կամ ոգի կըսուին, և մեռած ատեն իրենց արդեանց ժառանգութեան հետ՝ դառն կսկիծ և մորմոք կը ձգեն մարդկութեան:

...Քավուռ որ իտալական թագը, Լոմպարտայի, Թոսքանայի, Նէապոլսոյ, Սիկիլիայի, Պառմայի և Մոտէնայի աղամանդներովը զարդարեց, այն կէտէն, որ Ադրիական ծովու փեսային գոհարն ու երկու Բրուտոսներու չափիլղաններն անոր վրայ աւելցընելու հասած էր, իր որդոյն, իր բերկրանաց,

իր բազում ճգանց և անպարագիր վաստակոց տակ Նուիրական մարմինն ընկճելով, աստու-ածեղէն հոգին զուարթութեամբ աւանդեց:

Մարդկային ազգին մէջ, ի սկզբանէ հետէ, եկած գացած ասանկ չնաշխարհիկ էից փոք-րիկ թիւին նայելով, մարմնափոխութեան վարդապետութեանն հաւատալու կը փորձի մարդ: Արփիշագործ սիրոյն մշանջենական մէկ կայծը չէ՞ն, կըսեմ, արդեօք անոնք՝ որ այսօր Նումայի, վաղը Պղատոնի, միւս օր Արիստոսի, երբեմն Սահակ Պարթեւի և հետզ-հետէ Ֆենելոնի, Ֆրանգլինի և Բայլուսի մարմին և դէմք առնելով՝ կուգան մասու-ցանել կարօտեալ ժողովրդոց դարման, սփո-փանք. մտաց սթափութիւն և իրենց առա-քելութեան համար ազգաց ոլորտներու մէջ ներապանծ վարսամներու նման ժամանակ մը շողալէն ետև, աւելի կամ նուազ փութով կանցնին կերթան դարանակալ իմաստու-թեան ծոցը, մինչև ի նոր առաքելութիւն:

Այս վարսամներուն, կամ թէ ըսենք, այս կայծակիր մարմնոց ամէնէն շուտ ետ դար-ձողը Բայլուռ եղաւ, որ իր սիրտը, մտա-ծութիւնները, ցանկութիւնները բոլոր, և մէկ խօսքով բոլոր անձն՝ խաղացիններուն սիրոյ բագինին վրայ դրած, ի՛նք պատարագ և ի՛նք քահանայ՝ ինքզինքը զոհելով, խարու-կելով, ճենճերելով՝ սպառեցաւ մոխիր դար-

ձեւը, որ իր աճիւնէն թեթեւս ուրիշ անուանով փիւնիկ մը յառնէ:

Մի՛ ատիպեր զիս, ա՛յ չողոքորթութիւն, դժնդակը կրակը երթալէն եւս չուշան անուանել, կնամարդին՝ դիւցազն, եւ առաքինութենէ կամ. արդիւնքէ զուրկ մեծատոհմին ալ՝ Ցովսէփայ կամ Եպամինոնդի Ամղանաւը պատել: Ես, սկսած օրը վախճանին մօտեցած կեանք մը ունենալով, գեղեցիկին, բարույն եւ ճշմարիտին սիրահար եմ: Ուստի սիրոյս եւ գրիչս մարդկութեան բարեացն ուխտելով, պարտաւորանց մահուան ներբող չեմ կրնար հիւսել. միայն հոգւոյն փրկութեանն համար մարդասիրապէս կաղօթեմ: Հեռո՛ւ գնա ուրեմն ինէ, եւ թող որ շնորհապարտ սրտէս բղխած արտասուքս Քավուռի սրբազան աճիւններուն նուիրելով՝ մոխիրէն միւս Քավուռի մը փիւնիկօրէն ծնանելիքն հմայեմ:» 18 Յուլիսի 1861:

— ՏՔՆՈՒԹԻՒՆՔ, **Քաղաքակրթութեան առեղծուածին լուծումը.** Մարդուս յոյսն եւ համբերութիւնը պարտասած օրին մէկը, խընամակալութիւնն անոր կարճմտութեան վրայ ժպտելով եւ թշուառութեանը գթալով, յանկա՛րծ իր առեղծագործ մատին ծայրովը Մայանացի աղքատ գործաւորի մը (1) ծոծրակին

(1) Կիւթթէնպէրկի:

դպաւ, այն վայրկեանին Կիւթթէմպէրկ մարդկային մտածութիւնը կապարի վրայ ձուլելու և միեւնոյն իմաստը վայրկեանէ վայրկեան կրկնելու հազարաւորելու և բիւրաւորելու խորհուրդն երկնեց և ծնաւ: Անկէ ետև պատերազմ և ապստամբութիւն, սով և սըրածութիւն, գիւղեր և քաղաքներ կործանած և պարպած ատեն, չեն կրնար մարդկային մտաց հարստութիւններն ապագայից ժառանգութենէն կապտել: Հրդեհը կրնար Աղեքսանդրիայի գրքատունը ճարակել, բայց Փարիզի, Լոնտոնի և բոլոր Եւրոպայի ու Ամերիկայի մատենադարաններն եղած տեղերնին ալ անկորուստ պիտի մնան: Արուեստներն ու գիտութիւնները կրնան իյնալ, արուեստագէտն ու գիտունն ալ կորնչիլ, բայց արուեստն ու գիտութիւնը կորնչելիք չունին: Վերջապէս մարդկային մտաց վաստակներն երկիրի երեսէն բնաջինջ ըլլալու համար, պէտք է որ երկրագունտն հրով կիզանի և փոշին անհունութեան մէջ ցրուի:

Ահաւասիկ ուրեմն գործին ոգին և պատճառը, որով քանի որ մարդկութիւնը երկրի երեսը մնայ, իր խորհուրդներն ալ յորդւոց որդի, յազգաց ազգ պիտի անցնին յաւէրժանան, և այս աւուր ծնած իմաստն՝ աշխարհիս կենակից և վախճանակից պիտի ըլլայ, թէ որ մարդկութեան օգտակար և արժանի

*համարուի ։ Այս գործոյն միջնորդութեամբը՝ մարդիկ ծագաց ի ծագս աշխարհի կրօնակցութիւն, խօսակցութիւն, խորհրդակցութիւն, դաստիարակութիւն և օգնականնութիւն ընելով, իրար պիտի լուսաւորեն և կրթեն, ինչպէս որ այլացոյցն օր ըստ օրէ կը տեսնուի ։*

*Արդ՝ թէ որ տպագրութիւնն այս կարողութիւնն ունի՝ անշուշտ Եւրոպայի այս օրուան բարգաւաճութեանը տպագրութեան արդիւնքն ըլլալուն մերիններն ալ կը հաւատան նէ, կը հարցունենք թէ տպագրութիւնն ինչ կընէ մեր մէջ ։ Մասիս, թիւ 414, 1859 Դեկտեմբեր 31 ։*

*— ՏՐՆՈՒԹԻՒՆՔ, Գերեզման. Գերեզմանատունը Քրիստոնէից համար անծածկոյթ եկեղեցի մըն է ։ Բայց որովհետև Քրիստոնեայք քրիստոնէութիւնը քրիստոնէութեան ստորաբաժանմեր և յանուն Քրիստոսի երփնազան քրիստոնէութիւններ ճարտարեր են, ուստի Բողոքականին, Յունականին, Հռոմէականին և Լուսաւորչականին գերեզմանատուններն ալ՝ Բողոքական, Յունական, Հռոմէական և Լուսաւորչական տաճարներ կամ եկեղեցիներ են անծածկոյթ ։ Ինչ որ եկեղեցւոյ կամ տաճարներուն մէջ կըլլայ, դաւանութիւն, ժամերգութիւն, խաչելութիւն, ուղղափառութիւն, որդոտոքսութիւն և հե-*

բարեկամութիւն, նոյն բաները գերեզմանատանց մէջ ալ կըլլան անփոփոխ, և աւելի մեծ հանդէսներով: Այս ո՞ւր է արդեօք, որ Բողոքականն ու Լուսաւորչականն իրար լծել, իրար չփոթել կուզէք:

Բարէ՛, թէ որ կրօնքները գերեզմանատանց դուրսի դին կանգ առնէին, թէ որ թաղմանական հանդերձանքը հոնկէ ներս չիմանէին, թէ որ հաւասարապէս ադամորդի ծնողներն հաւասարապէս իբրև ադամորդի թաղուէին լռութեամբ, և հասարակաց արտասուօքը միայն հողերնին ցօղուելով, ա՛հ, այն ատենը Միրիքելամ Կարապետը Միրիքելամ Կարապետին հետ առ օրին չթաղողները նզովեալ ըլլային. բայց հորդ հողուն ըլլայ միտդ դիր, բանն անանկ չէ. ադամորդի ծնողները, Մովսէսի որդի, Մահմէտի որդի, Պետրոսի որդի, Աթանասի որդի, Լուսաւորիչի որդի, Կալուինի, Զուինկլէսի և ալ խել մը եսի ու ոսի որդի կը թաղուին կոր:

Կրօնքներն իրենց հանդերձանօքն ու աղաղակներովը կամ մրմունջներովը մինչև տապանաց եզերքը կերթան, և արարողապետներն ալ մարդուն հողին մէջ դրուելէն ետև ալ ինք իր գլխուն չթողելով, իւրաքանչիւրն իրենց անշնչացեալ խոստովանողաց ականջին ի վար անդրաշիրմեան ճշմարտութիւններ ունին հաղորդելիք:» Մեղու, Թիւ 109, 1860 Սեպտեմբեր 10:

Ասոնք փոքր ի շատէ կըրնան տալ 1858-60ի Մխիթարեաններին հրատարակածներուն ոգիին և մանաւանդ լեզուին վրայ համառօտ գաղափարներ մը, իսկ նոյն միջոցներուն պատրաստուած վիպական ու Թարգմանական գրուածներէն (որ դեռ ձեռագիր կը մնան)՝ կըրնանք հատուածաբար առնել հոս Տելեմաքի ազատ յարմարութիւն մը գրաբար ոտանաւոր և քանի մը տողեր՝ իբրեւ ճաշակ իր գրաբարին ու քերթողի կարողութեան։ Մընացածը բարեմիտ բանասէր մը կըրնայ տպել տալ։

---

## ԱԶԱՏ ՅԱՐՄԱՐՈՒԹԻՒՆ

### ՏԵԼԵՄԱՔԻՆ ՖԵՆԵԼՈՆԻ

«Այս որ երբեմն յանձեռուագործ ի քընար
Զդուզնաքէից յորինէի երգ յարմար՝
Ըզմանկըտւոյն զբօսուցանել շուրջ զամբոխ,
Դիւցազնական տաղից կացեալ արդ քերթող.
ԶԱթենասայ երգեմ զարկածս՝ համբակին,
Տոր խիթացեալ զարգունն տիոց դիցուհին,
Զի մի՛ իւրեւ ի փորձութիւն ածցէ զնայ,
Կամ փորձութեան ինքն իսկ իցէ ենթակայ,
Նախանձոգակ իմաստութեամբն իւրական
ԸզՄենտորին էր կերպացեալ տիպ դաժան:
Մուսա՛յդ, որ ցարդ ծանուցեալդ ես լոկ անուամբ,
Եւ քան զագռաւ սպիտակ անգիւտ զոս անձամբ,
Հե՛ղ ի տաղս իմ զծիծաղ եւ զխինդ բռնայիր,
Եւ զնախատիպ զերկդ իմ կացո՛ անբասիր:

Էր Կաղիպսէ խորասուզեալ ի սեաւ սուգ,
Եւ զդիցական զօղէին զայսմ արտասուս,
Զի Ոդիսեւս կէս փեսայն իւր անաստուած,
Լքեալ զգնա՝ դառնալ զնացեալ էր ի բաց:
Յետ արկածից յոգունց Յոյնդ այդ խաբուսիկ
Լեալ ի մրըրկաց առ դիցուհւոյն ընկեցիկ,
Ի բարութիւն նորին անդ զամս եօթներեակ
Համայծակցի վայելեալ էր հանգունակ,
Եւ Կաղիպսէ զանմահութիւն ի պարգեւ
Անպատարին էր խոստացեալ արդարեւ,
Եւ այն ունէր նա ի բախտն մանաւանդ
Զի Դարբինեանն (1) ոչ ի հողմոց վարեալ անդ՝
Վաղարշակիզըն ամուսնութեան ի յուռութիւն
Պսակ շնորհաց դընէր ի գլուխ երկոցուն,
Եւ հարազատ ծնընդեամբն այս ըզկըղզին
Դիցանուշակ եւ դիք մանուն յընուին,
Մայր ունելով յորովայնէ դիցուհի
Եւ հայր՝ յետոյ աստուածացեալ 'ւս պատեհի:
Այլ Ոդիսեայ եղով վաղ կին ոստայնանկ
Ի նա խորհէր յաւէրժ փեսայն խորամանկ,
Եւ զմտաւ ածելով զայգ եւ զերեկ
Ըզկընկոցին Պենելոպեայ զերբեւեկ
Բըռնակալին ամուսնութեանն խնճեան յուծ
Տանրանալով ածէր զայրոյթ կամ զայրուց.
Այլ փախըստեան ոչ գտանէր նա աղագ,
Շուրջ ամենուստ զինք պատելով ծով անյագ:
Իսկ Ոդիսեւս որ թախուցեալ ի յայրին

(1) Թուրք կակնարկէ 1860—1870ին հռչակեալ Ցանկո-թաս վրայ. Զիլինկիրեանը, որ զմտնելով Երուսաղէմի միաբանութեան հետ՝ լքած էր զայն և ի Պոլիս կը կատարէր քաղաքական ու տարօրէն պսակներ. Իր խոր ծերութեան ընդունեց հայ-հռոմէական կրօնն, որուն այնքան դէմ գրած էր երբեմն.

Ունկն եղեալ էր բանից տիկնոջն եւ բժիշկին,
Ի թաքստէն յայնժամ եկեալ յերեւան.
Ընդէ՞ր, ասէ, տիկի՛ն, քեզ կեանք դառնանան,
Մինչ Ողիսեւս ինքնանրւէր կայ առ քեզ.
Իւրոյ առնել սիրոյն փորձոյ արդ հանդէս:
Ի շիւղ երբայց ահաւասիկ ի Նախսոս,
Եւ առօրին ի շիւղ ածից զըՕկոմբրոս:

Անձնապատիրն ի միջս եկեալ Կալիպսէ,
Եւ զծածկամիտն համբուրելով հեքն ասէ.
Իմս Ողիսեւս, մի՛ գնայցես մի՛ դու ի շէղ,
Հուպ ի ծովափն անդ յայլ այրի կան զէտեղ
Տապար, ուրագ, սղոց, շաղափ եւ գըլիր,
Եւ աղախնայցս օգնելով քեզ ժիրաժիր,
Դու անդանօր կառուսցես քեզ այսօր լաստ,
Եւ ի վաղիւ ի ջուր գցցիս դու պատրաստ:

Ողիսեւս վաղ գիտէր զգործեացն բզպահեաս,
Այլ չը ներեր խարեութեանն իւր արհէս,
Բօսից երբէք առ դիցուհւոյն զայսմանէ,
Ձի մի՛ ընդմա խէր փախուստեան ածիցէ:

Այլ դիցական ի հրամանին նա ի ջուր,
Վաղվաղակի զկաղնիս հատեալ ընդ սրուր,
Ծածուկ ձեռամբն Արենասայ առօրին,
Կազմակերպեալ հանդերձ լաստ ոչ չնչին.
Եւ իջուցեալ ընդնա ի ջուր կազմ ի չու,
Ի Կաղիպսեայ խնդրէ զոչ իւր օրհներգու.
Նա անգիտակ փախըստին խարկանաց,
Զմիահեծան ծովուց կոչէ ինք զաստուած
Եւ զիշխեցողն հողմոց եւ զհայրն Եւողոս
Օգնել նըմա ի հայրայրել իւր Օկոմբրոս.
Եւ աչ տըսեալ խաբեբային եւ համբոյր
Վառըն դարձին սէր ուխտ նոնա անպարոյր:
Նա զառագաստ պարզեալ հողմոց եւ մեկնի,
Եւ հեռացեալ ի բաց գոչէ. Դիցուհի՛,

Զիմ ծըխելի եւ զծամանցոյց եւ զմեչին
Մոռացայ այդր ի պահու մեր հրաժեշտին.
Պահեա՛ զնոսին, եւ տո՛ւր մաքրել զկասկարայն,
Զի ձկունսն խորովեցիմ նոյն հեսայն:

Ասէ, եւ սեւպ ծածանէ. նա զբաշկինակ,
Եւ Դիցուհին ըզնոյն առնէ օրինակ.
Արեւն ի մայր իւր խոնարհեալ մըտանէ,
Եւ զնացկին լաւս ծածկի յաչաց յայնմհետէ:
Աղաչանաց Կալիպսեայ լեալ ունկընդիր,
Անսի եւող. ասէ Պոսիդ վրէժխընդիր,
Նա զմըրըրիկս իւր արձակէ զայրագին,
Սա բարկանայր ալիս պուղեալ մինչ յարփին,
Վարեն մըղեալ զհեղլէնն յաւէժ ուխտադրուժ,
Ի տառապանս կեալ յազգս ոչ նուազ խուժադուժ:

Ի ճաճանչել նշուլից արփւոյն նախածարծ՝
Աստուածուհին թողեալ ըզմուն եւ ըզբարձ,
Ի բըլրակի բարձու դիմէ սարաւանդ.
Դէտակըն կալ իւրն Ոդիսեայ դարձի անդ,
Մոռանալով ի՛ւ զըսկոմբրոս պիտանին
Եւ զակընկալ առաջնապտուղ արգանդին:

Բայց՝, զըլեն անդ ժամք ըզժամս, եւ դանդաղ
Սահին աւուրք իբրեւ զգոմէշ անսըւաղ,
Եւ անձկալւոյն յեզերս անդ ոչ դիտի լաւս,
Որ զնայր բերել ինքեան նըսեհ բարեբաստ:
Զի՞ նմա եղեւ. գոչէ դըշխոյն առ վշտին,
Եւ Արձագանգք ըզնոյն կըրկնին յանգ բանին:
Մի՛ Պոսիդեայ հոսանք ալեացն որկորուս
Անդնդաստոյզ մատնեա՞ց ըզնա ի կորուս.
Կամ թէ դաւով դրուժանն արդեօ՛ք պատրեալ զիս
Խո՞յս ետ յինէն լեալ ապաստան ի յայլիս:
Որ զինչ եւ է պատճառք նորին կորստեան,
Վըհա՛յք վըշտացս, ո՛վ դիք, տո՛ւք ինձ ապաստան,
Դուք որ մինով ոչ շատացեալ ամուսնաւ,

Ի յառաջուանց ցանցառդէք դուք ընդ երկնաւ,
Եւ կանանին ձեր, մանաւանդ փոյթ. Հե՛փեոս,
Ծաղիկ զաւուրսն յամուսնութեան զաղտամես:
Զամուսին մի մնացու շա՛տ տեսէք ինձ,
Որ ի կըղզւոջ աստ կամս լըքեալ յանմահից.
Թէ Ողիսեան մանկիկ խաղայր ինձ յայրիս,
«Գոնեա ըզդէմսըն բերելով նայրենիս»
Ոչ արդարեւ պասրեալ ի սպառ մնայի,
Եւ ոչ լըքեալ ամենեւին անայի:

. . . . . . . . . . . . . . . . .

## ԳԵՂՕՆՔ ԵՐԵԿՈՐԻՆ

Քանզի շըրթունք իմ հըպան ի քո դեռ եւս լի բաժակ
Քանզի զճակատ իմ գունատ ի մէջ թաթիցդ հանգուցի,
Քանզի զհոգւոյդ ծըծեցի մերթ ընդ մերթ սիւգ անուշակ
Հոտ խնկաբոյր 'նդ ոլորտիւք պարածածկեալ ըստուերի.
Քանզի եղէ արժանի բարբառ ի քէն լըսելոյ.
Որ ծածկափակ ի սըրտին ծաւալանայր յերակունս,
Քանզի տեսի զքո լալիւն, քանզի տեսի զժպիտ քոյ,
Աչկունք քոյին յաչերս իմ և շրթունք քո յիմ շըրթունս,
Քանզի տեսի ճաճանչել զմայլեալ գլխոյս ի սպառուած
Նըշոյլ մի քումըդ աստեղ. աւա՜ղ յաւէրժ քողելոյ,
Քանզի տեսի անկանել ի ծով իմոցըս կենաց
Թերթ մի վարդի յապաւեալ ի քոյոցդ իսկ օրերոյ.
Իշխեմ ասել ապաքէն ցերագախոյս ամս ամաց,
Անցջի՛ք անցջի՛ք հանապազ, չի՛ք ծերանալ ինձ երբէք.
Գնացէք ի բաց ընդ ծաղկանցդ ի սպառըսպառ թօշնելեաց,
Է՛ ի հոգւոջս իմ ծաղիկ, զոր հատանել չի՛ք ումեք.
'Նդ հարեալ ի նա թեւոց ձեր, ոչ զեղցին ինչ յանօթոյս,
Ուր զծարաւ իմ հարկանեմ և զոր լըցիս պատարուն.
Քան զձեր մոխիր համօրէն առաւել հուր զոյ հոգւոյս,
Եւ ի սրբտի իմ զոյ սէր՝ քան զմոռացօնս ձեր զեղուն։

Թրգմ. Խ. Գ. Մ. ՎԻԿՏՈՐ ՀԻՒԳՕ

# ԱՌԱԿ

## ՃՊՈՒՌՆ ԵՒ ՄՐՋԻՒՆ

Ճպուռն երգեաւ զամառն ողջոյն
Ընդ ծառս աւուր և ընդ ցայգոյն,
Մինչ հիւսիսականք ամեհի
Եդին զբնութիւն մերկ ամայի,
Զգաց անագան սիրտ ի կսկիծ
Ըղձաւոր ոսկւոյն բաղդաւորելեց:
Ու գոյր ուրեք խուն մի ճանճիկ
Եւ ու եւկ որդըն փանատէկ`
Առ հարկանել ըղձաղց նորին,
Որ է տաղել հաւաղ էր զոգին:
Յոգւոյ հանեալ յեղեաց յայնժամ,
Թէպէտ, աւա՜ղ. յոյժ տարաժամ,
Զորընդեւ մրջիւն զիւր դըրացէ
Որ անկարօտ աւուր հացէ`
Յամառնային վաստակոյն իւր
Յըղփայր յարդեւնըս թաղմաթեւր:
Մատեաւ է դուռն յարկէ նորին,
Եւ յայնեաւ ըզնա կողկողագին`
Տալ է նմանէ խնդրէր յողոտ
Հատիկըս ինչ ոսկւոյն յամոց:
—Ի հունձս ամին, ասէր, տոյրէ՛կ,
Հատուցից քեզ կրկնապատիկ,
Վաղն ընդ գլխոյն և զարեալ
Երդուեալ յանդըրուծ թանեցս հատոյ:—
Սակայն ժըլատ է տալ է փոխ

Ազգս այս ծուլից յաւէրժ ոսոխ,
Ասէ. Դրացէ՛, գլխաւն ամի
Զի՞ գործէցէր յարեգակէրէ.
— Ո՛Հ. երգեցի ցամրան առարք: —
— Երգէի՞ր. փա՛Ջ. կաքաւեաց արդ:

Ե՛րբ ի մրջիւնոց պարտ առ ի խորայ,
Ես ի մեղուաց ի պարն, ո՛վ վայ:

Թրգմ. Խ. Գ. Մ. ԼԱՖՈՆԴԷՆ

---

Բայց իր ժամանակին ամէնէն ճշմարտասէր ու ճշմարտապէ՛ս բանաստեղծ այս գրիչն ինչո՞վ կը փոխարինուէր՝ նոյն իսկ իրեն համակրող բանասէրներէն, և ի՞նչպէս կապրէր՝ զայս քաջ կը պատկերէ Փարիզէն Աղաթոնէֆ.ի գրած հետեւեալ տողունքը, որուն նըմանը շատեր ալ գրած է իր միւս ծանօթներուն:

Սիրելի՛ ու մեծարիմ բարեկամ,

«Վերջին թղթովս խոստացած էի ձեզի տասն և հինգ օրէն դարձեալ գրել. և կարեւոր էր գրել, բայց Գ. Արամեն (1) այն օրերը Փարիզ համնելով (ընդ որում ձեր պարկեշտասուն քոյրը տեսայ բերկրութեամբ) նայեցայ որ բաղդն ա՛յլ անօրէնութիւն ըրեր է, և գրեթէ գրելու կարիքը դադրեցաւ, որով-

(1) Տ. Խ. Ճանիկ Արամեան տպարանապետ

հետեւ անսպիտանացաւ։ Այսինքն Գ. Արամն եկած օրէն Փարիզի մէջ օրագիր մը սկսելու դիտաւորութիւն մը ցուցնելով, մտածեցի որ դուք իրագէտ ըլլալու էք իր առաջադրութեանն և ձեր ազգականութիւնն հարկա՛ւ և իրաւա՛մբ կը պարտաւորէր ձեզ, անո՛ր մանաւանդ ձեր սպասը մատուցանել քան ինծի...

Բայց իս վհատեցողն այս դէպքը չէր միայն, որ այլով մասամբ ինծի ալ ուրախալի էր. այս դէպքէն զատ, ուրիշներն ալ որ ձեզի պէս ինծի իմ օրագիրիս ոչ միայն մօտաւոր սկզբնաւորութեան մը յոյս, այլ համամտութիւն աւետեր ու փութով ձեռնարկելու խրախոյս,... նաև պատուէր խրկած էին. անոնք ալ ձեռնթափ եղան իրենց առաջարկութենէն, և ձեր ինծի՝ «Գ. Նշանն այս օրերս օրագրիդ համար բարենշան լուր պիտի տայ ձեզի» գրած ատեննիդ, այլք ինծի գրեցին, որ «Երէցն կրտսերոյն ծառայեսցէ.» կամ «ի քաղցոյ կորիցէ։» Ինծի ծանուցին որ անօթի մեռնիլ չեմ ուզեր նէ, Մասիս օրաթերթը պայծառացունելու պիտի ծառայեմ։ Ինծի ծանուցին որ իմ շնորհիւս տգիտութենէ հեռացած, Փարիզ եկած, քանի մը բառ ու բան սորված ազատագիրիս կամացն ու օգտին զոհելու եմ իմ օգուտս։ Ինծի ծանուցին որ արդէն 200 բաժանորդ ունեցող օրագիրի մը քով, ես հինգ բաժանորդ ստանալու հրաման չունիմ։ Ինծի

ծանուցին որ 11 տարուան աշխատութեանս արդիւնքն Իւթիւճեանին օրագրին մատուցանելու, և այս իրիկուն առօրեայ թերթին մէջ երեւելով՝ վաղն ի սպառ անյայտ ըլլալուն ականատես ըլլալու եմ։ Եւ ասոնց ամէնուն փոխարէ՞ն...։ Ամիսը 150 ֆրանք... ժողվողքով. բայց ես հինգ ամիս է որ կը գրեմ. և մինչեւ հիմայ 2 ամսական տրուած է, մէկը 150, միւսը 130ի հաշւով, ան ալ ոչ ամբողջ, այլ հարիւր միայն։ 150ը 130ի իջաւ, վասն զի Կուճիկեանէն խոստումն առեր են որ ան ալ ամիսը 20 կամ 40 ֆրանք պիտի տայ եղեր, ուստի իրենց խոստացած 150ին 20ը վար երթալէն ետեւ, ամբողջն ալ չղրկեցին, միւսն ալ՝ ինչպէս որ պարտքը չէր, պարծանօք այլոց խոստացածը չվճարեց. լսելով թէ հարիւր երեսո՞՞ւն ֆրանքի անսպառ գանձ պիտի գայ եղեր ինծի ամսէ ամիս։ Ես թէ՛ ազգին գրականութեան և թէ՛ իմ անձիս ունեցած պարտքս հատուցանելու համար իրենց գրեցի՝ որ ուրիշ անգամ 6000 ֆրանքով կրնայի բանասիրական սկսիլ, 2000ը մէկ տարուան ապրուստիս համար, մնացորդը բանասիրականին, և որովհետեւ իրենք ապրուստիս Ճախս խոստացեր են, ըսել է որ գործիս համար 4000 կը բաւէ. իրենք արդէն 3000 պատրաստ կայ ըսած էին, մնացած հազարն ալ ճարելը դժուար չըլլար։ Երկու թուղթով գրեցի ես

անոնք Խ. Գ. Աղային, որոց մէկը Միքայէլին միւսն ալ Իւթիւճեանին ձեռօքը ղրկեցի, և 2 ամիսէ ի վեր լռութիւն արհամարհութեան միայն պատասխան ընդունելէն զատ, Ամբրոսիոս վարդապետն ալ եկաւ յատկապէս ինծի ծանոյց որ Խ. Միքայէլ աղան հօրն առջին բառարանիս (1) տպուած թերթերը քննելով՝ պատուական գտաւ և խոստացաւ որ տպագրութեան համար իր բաժնին ինչ որ առաջարկենք՝ սիրով հատուցանէ։

Ահաւասիկ, սիրեցեա՛լ բարեկամ, ինծի պատահածները. — Ես ասոնք ձեզի կը գրեմ մտերմաբար, վասն զի Ռափայէլեան ոմն այս անգամ Պոլիսէն դարձած ատեն իբրեւ ի լրոյ հաւաստեաց՝ որ դուք ձեր գրասիրական նախանձայուղութեամբ ինծի համար ըսած էք եղեր թէ. «այն մարդուն ապրուստն ապա-

(1) Իր բազմաթիւ ձեռագիրներուն մէջ չտեսանք այդ բառարանը։ Մահուընէն ետեւ իր գործերը տեսնելու և զանոնք խարբալելու կարի՛ նախանձայոյզ պարոններուն վրայ՝ բաւական պատասխանատուութիւն կայ այդ ձեռագիրներու և ուրիշ յիշատակներու անամփոփութեան մասին։ Միսաքեան կշռադատ բառագէտ մըն ալ էր, բառեր ունէր որ բառարան կարժէին։ Գրագէտներու մէջ քանի մը տարի վէճ քշեց Պոլիս Թէ [illegible] բառին ի՛նչ ըսելու է, և այդ բառին համար այն ատրճան պիտակցուցին հայերէնի ոգին՝ որ մինչեւ [illegible] ըստ. գրագէտ եղաւ։ Միսաքեան շինեց յանկարծ՝ իր հաշտ մէկ վայրկեանին՝ [illegible] բառը, և ըստ ոչ իր սովորութեան բերանացի հաղորդեց քանի մը ծանօթներու։

հովելու է որ խաղաղ սրտիւ աշխատիս : Ահա մատուցուած ապրուստն ու խաղաղութիւնը . կողակիցս կուզեն որ էշ վարելու մանկունք հանէ իրենց : Իմ ազնուութեանցս երկունքն Իւթիւճեանին չե՛մ տար որ տառապեցունէ ու իր գրածներուն հետ ...ը ղրկէ : Կա՛մ միայուն և ընթերցանելի տպագրութեամբ կը հրատարակեմ գրածներս և կամ Պոլիս գալէս առաջ՝ օրագրաց մէջ հատուած հատուած ճարակ տալէս ետեւ , ամէնն ալ կրա՛կը կը դնեմ : Ի զուր գրեցի ապաշնորհներուն թէ՝ երաժըշտական ընթերցանութիւնն ազգին դպրոցաց մէջը մինչեւ հիմա մուտ գտած չէ . հա՛րկ է անոր սկզբունքն այբբենարան մը տարածել , և Նոր դրութեան նշանագիրները Պոլիս չգըտնըւելով՝ ես ափկայ Փարիզ միայն կըրնամ տպել : Ի զուր կը խնդրեմ և կըսպասեմ ծանօթ բանաստէրներն Ա.ի վրայ գրած երազիս , որ Հովիկեան խեղճ Նիկողոս աղային ներշընչութեամբը ծնած ըլլալուն , ընդ վայր ջանացի իր կենդանութեանն ատեն հրատարակելու , և ընդ վայր ջանացի յետոյ ալ իր յիշատակին նուիրելու :

Ի՛ս մտիկ ըրէք , ազնի՛ւ Ագաթոն , այս անգամ յոյս չի կա՛յ , ազգին առաջին համարեալ գերդաստանը գրականութեան և գրագէտին ասանկ օգնելէն ետեւ ես յանձն առած եմ և կուխտեմ յանուն Աստուծոյ ,

իրենց դրամն առջեւ մահաչկալի ծախել, և ո՛չ գրականութիւնն և ո՛չ գրագէտը գովել չնչութեամբ սուտակապատ գերի ընել։ Ե-րեք տեսակ մէկզմէկէ մեծ պզտիկ բոլոր գիր, երեք տեսակ նօտր գիր, ինը տեսակ ալ եր-կաթագիր այբուբէնի մայր պղինձ ունիմ, ա-մէն զուգագրօք և նշանագրօք հանդերձ։ Բոլորագրաց ինչպէս և նօտրերուն առաջինն, Ծան. Կարապետ վարդապետի տպած գիրքե-րուն գիրին նման է, երկրորդն այն գիրին ու Վենետիկի օրացոյցին գիրին միջակն է, որով դեռ ուրեք բան տպուած չի կայ. երրորդը, Վիէննայի մէջ Գուալղ. բառարանին մանր գրոց չափովը չինուած է, որ քերականութեանս (1) ու տրամաբանութեանս աղխւսակներուն տը-պագրուելուն համար ճարած էի, Վիէննայի վանքը մէկ մայրը կամ մաթուխն եօթը ֆրանք կուտայ, այն հաշուով իմ քովս եղած գիրերը որ կատարեալ տպարան մը կը կազմեն, հինգ վեց հազար ֆրանքի բան կըլլան. առաւելէն ետեւ ընել տրուած ուղղագրութիւններուն 2400ի մօտ եղած է. 2500 կըրնաք նէ ջանա-ցէք, չըլլար նէ, 2000 ֆրանքի ծախելու փոյթ ըրէք յանուն մարդասիրութեան և բա-րեկամութեան։ Խասգիւղցիք որ թատր հաւ-

(1) Այս ձեռագիր քերականութիւնն ալ անյայտ է, որ անշուշտ ամբողջ մըն էր միւս ամբողջ ձեռագիրներուն մէջ, Գ. Ծածո՛ւկ։

տատանելու. չափ յառաջադիմութիւն ունին, ան-շուշտ շատ չքշեր դպրոցին տպարան մըն ալ կը հաստատեն։ Իմ գիրքերս իրենց համար դիւրըմբռնելի ստացուածք մը կըլլան, և եթէ դուք ալ վաճառելու խնամք ընէք՝ մեծ շար-եաց և մեծ գայթակղութեանց խափանարար բարերարութիւն մը ըրած կըլլաք։..........

Թուղթիս պատասխանը գրել արժան համարէք նէ՝ ուղղակի փոստայով ինծի ղրկեցէք Ռիւ տիւ Ծօպուռ Մօնմառա 13... Ամենայն վստահութեամբ այս գործը ձեր ուղղասէր եղբայրասէր բարեկամութեան խնամոցը յանձնելով՝ մնամ միշտ բարեկամ

Խ. Գ. ՄԻՍԱՔԵԱՆ

Ասոնք այսպէս։ Եւ մենք՝ թերեւս քիչ մըն ալ տաղտուկ պատճառելով՝ փոխադրեցինք հոս այս մանրաբան նամակը, որպէս զի իր գործնական յօժարութեանց և ձեռնարկութեանց վրայ ինքնախօս գաղափարներ տուած ըլլանք։

Ֆրանսական ազատական ուղղամտութեանց և արձակ բերումներու մէջ սնանող Պուէտին այս յայտարարութիւններն՝ արդարեւ դառնապէտ իրաւացի են, նկատելով իրերը սոսկ վարժապետական կամ գրական հայեցուածէ, մանաւանդ նկատելով Փրանսաբնակ այդ հայեակներով։ Բայց միւս կողմէն պէտք է դի-

տել որ պանդուխտը՝ չէր գիտեր թէ այն ատեն Պոլիս զբաղիլ սկսած էր ուրիշ բանասիրականներով. Նորէն կը յուզուէր հինի նորի խնդիրը. Թուականն 1861ի կը փոխուէր. Իր առաջին համարած գերդաստաններն ալ հետզհետէ իյնալու վրայ էին ժամանակներու բերումով: Նորլեզուեաններու և հին գրաբառեաններու, գրերի և աշխարհականի կըռուըտուքներուն վրայ՝ եկած ուղխօրէն բարդած էին կանոնադրականներու և հակականոնադրականներու, լուսաւորեալներու և խաւարեալներու կուսակցական ուժգին վէճերը: Ֆրանսայէն դարձող նոր բանգէտները՝ գլուխ կեցած նոր երիտասարդութեան մը՝ վերոյիշեալ յարանուանութեանց ներքեւ հին բանգէտներուն հետ սկսած էին բախիլ նախ թերեւս հանրասիրաբար, ապա տակաւ անձնասիրօրէն և յաղթասիրաբար. Ճարճատուն ճառերու և գաղափարներու մը հետ մուտ կը գտնէին՝ կարի բարեմարդիկ և երկիւղած կաղապարներու մը վրայ ձուլուած հին վարպետ հայերուն մէջ՝ յախուռն գործունէութեան, կորովող թափով յառաջադիմութեան, հայրատեցութեան իսկ ձգտումներ ու արարքներ, որոնց կարի՛ թոյլտու աչքով նայեցան ժամանակին գործի գլուխ կեցող Լուսամիտները:

Այս Լուսամիտներուն գլխաւորներէն էին

Սերվիչէն էֆէնտին, Աղաթոն Գրիգոր էֆ.ն, Ն. Ռուսինեան Լայլն, որոնք՝ մանաւանդ Երուսաղէմի վանքին Gerukg դուrukgի կը-ռիւններուն առեն՝ կարդալով իրենց հին շու-ռակից Միսաքեանին Gerukgեան խաւարեալ-ներուն խելքը գովող գրուածները՝ դանակի պէս կտրուեցան և պաղեցան իրմէն. և թե-րեւս ատոր համար բոլորովին ալ երեսէ ձգե-ցին զինքը, մանաւանդ որ քանի մը հին մե-ծատուն ընտանեաց մէջ Միսաքեանի համար-ձակագործութիւններն ալ աղէկ անուն մը թողած չէին հինէն ի Պոլիս իր վրայով, և այդ ընտանիքները վրէժխնդի՛ր ալ էին իր-մէն։ Ասով՝ ժամանակին երկու ահագին կու-սակցութիւններէն՝ ո՛չ խաւարեալները կըր-ցան վերջին սէր մը ունենալ հին լուսաւոր-եալ Միսաքեանին վրայ, ո՛չ ալ լուսաւոր-եալները կըրցան իրենց առաջին ջերմ սիրոյն վրայ մնալ խաւարամէտ իրենց Միսաքեանին վերադարձումով։ Ասոնցմէ զատ՝ ունէր ի՛նք ալ թերեւս իր աւելի ծանր հին յանցանքնե-րըն և իւր մասնաւոր տրամաբանութեան հետե-ւանք պաղութիւններն՝ որ ազնուական շու-ռամիտներուն ցուրտ կը բերէին։ Կուսակցա-կան ծայրայեղութեանց մշուշին մէջէն ալ՝ անկարելի էր՝ հինով նորով բարեխառնեալ այդ մարդուն (ինչպէս կախորժինք ճիշդ կըշռա-տուած ըլլալ) ճիշդ ու բարեդէտ խորհուրդ-

ներուն միջին գիծը տեսնել. անկարելի էր նաեւ՝ Պոլսոյ միջավայրին ընթացիկ պտուտաւոր հոսանքին բռնուած դաս մը վարժապետներու գրագէտներու և բանասէր կեճափներու՝ աննախանձ դիտել զարգացած կարող և ազնուաշուք անձերու կողմէ Միսաքեանի ընծայուած տեսական բացառիկ յարգը. իրեն եղած պատուադիր յորդորները կըգչարեցունէին այդպիսիները. աւանդական ձեռնածիգ ընկերշակութիւններն ալ քիչ չէին խրտչեցուներ այդ աճայիպ մարդը, որ իր տրտակարգ աշխատութեանց մասնակից ո՛չ ոք կընդունէր: Քանի մը համեստ ու ամենայնիւ համակիր բանասէրներու փափագն ալ՝ չէր կրնար օժանդակել իր կարի վերացական ու բանաստեղծական իղձերուն: Գրականութիւնն ի հարկէ, մանաւանդ ի պատահմանէ, իրենց շահավաճառի գործիք ընող անփորձ այլ հնարագործ մարդիկ ալ՝ իրենց սովորեալ քսութիւններովը և քարընդոտնողութիւններովը՝ բոլորովին ձեռնթափ ու հմայաթափ կընէին այդ աննկուն գաղափարամարդը, որ յամառ ալ էր իր ծաղկաքաղ սկզբունքներուն մէջ:

Այսպէս, յիրաւի կամ յանիրաւի, լքուած և խաբուա՛ծ ալ իր Պոլսոյ բարեկամներէն. յուսահատ աջէն և չկրնալով դառնալ ձախին, խաբուած իւր վերացական խորագի-

տուժեամբն ու չկըրնալով խաբել իր կարգին՝ պանդուխտն իր ապրուստին համար կուտար ինքզինքը ձեռնարուեստական զբաղումներու. ա՛լ ոչ ինչ ունէր եկամուտ՝ բացի Կաճիկեան էֆ.ի կապած մէկ համակրական ամսականէն։ (1)

Լուսանկարի աշխատանոցի մը préparateurն եղած էր, և իր պարապոյ ժամերուն անշշուկ կը հետեւէր գրական մեծ շարժումներուն։ Վենետիկի ջոջերն ալ՝ գիտնալով իր բանաստեղծական արժէքն ու հայկաբան կորովը՝ կը պատուէին զինքն իրենց այցելութեամբ ու մտերմական յարաբերութիւններով։ Հ. Արսէն Հ. Եղուարդ և ուրիշներ՝ յաճախ բաց այցելութիւններ կուտային իր Փարիզի դիրքինեան սենեակը։ Իբրեւ ճաշակ այս պատուական յարաբերութեանց՝ • կուտանք հոս նաեւ Հ. Եղուարդ Հիւրմիւզի մեղմիկ գիրը, զոր ղրկած է Պուէտին՝ Վիրգիլիոսի հովուականին առաջին գլուխին ձեռագիր թարգմանութեանն հետ.

«Քրիստոսասիրի և սիրեցելոյ Պ. Մխաքայ Հայոց բանահիւսի, ի Քրիստոսի Նուաստ ծառայէ յԵղուարդայ Արքեպիսկոպոսէ խնդալ։

«Զցանկալի գիծս մատանց Ձերոց մատղիւր վերածութեամբ ընթերցեալ, զուարճա-

(1) Ըստ Վսեմ. Տօքթ. Մ. Խորասանճեան էֆ.ի։

ցաք ոչ սակաւ ընդ կիրթ ախորժակս Ձեր և ընդ զարգացումն բանասիրութեան ի մերազնեայ գրոհի, ածեալ զմտաւ զի եթէ առ մեօք քերթողահայրս մեր (1) վերակենցաղէր՝ ոչ եւս բողոք զանուսումնասիրութենէ համազգեացն հարկանէր: Այլ ի Ձեր թէպէտ և բարութիւն սրտի զանցեալ ի դրուատիսն՝ ի պատկանաւոր խրախուսանս անդ՝ առաւել քան զարժանն զանձնասիրութիւն մեր փայփայէ, որ հազիւ զթարգմանչի քերթողաց ոչ անճահապէս կրեմք զանուն՝ թերեւս ընաւ իսկ անծանօթի ի հայկազնեանն ի Պառնաս, սակայն շնորհ ունիմք սիրոյն որ զմեզ անդր վերընծայէ:

«Արդարեւ զօրինակ առաջնոյ հովուերդութեանն ոչ առ գերարգոյ Հ. Բագրատունի՝ այլ առ խնդիր քեռորդեկին մերոյ յղեալ էր, և հօր Բագրատունւոյ ի նմանէ զայն առեալ և ապա առ նա ինքն դարձուցեալ իցէ, և ոչ զանիրաւս առ ձեզ պատճառեալ. այլ մեք ահա զհաւասար նորին աստանօր յաւելումք առ ի լրումն ուսումնասիրիդ եւեթ ըղձանաց, զի մի՛ նախ քան զտպագրութիւնն հատուկտիր ինչ մեծի քերթողին տաղք ի ձեռս յածիցին:

«Ցանկալի և մեզ տեսութեանդ Ձերում հանդիպել, և եթէ ի գալստեան Ձերում չյաջողեալ՝ ի դարձին յուսամք թէ յաջողեսցի.

(1) Մովսէս Խորենացի։

այլ այժմէն իսկ զվստահ և զմեծարանս մեր արժանաւորիդ ընծայեալ՝ ողջ լինել Ձեզ մաղթեմք չնորհիւ Տեառն։»

Ի Հռոմ Հ. ԵԴ. ԱՐՔ. ՀԻՒՐՄԻՒԶԵԱՆ

Շիրակայ չնորհալեզու արքեպիսկոպոսին սիրահարն ու հետեւողն էր ինք ի հայկաբանութեան. Արքեպիսկոպոսն ալ հետզհետէ համակրեցաւ իրեն։ Խ. Գ. Միսաքեան՝ Հիւրմիւզեանի ծաղկեալ ու նրբաչնակեալ գրաբառին ջերմ պաչտօնեայ մը եղած էր, թէպէտ և ինք ունէր աւելի՛ ջղուտ գրաբառ մը արեւելեան։ Մանաւանդ իր ոտանաւորներուն մէջ՝ ամէնէն չատ մօտեցած է մեծ Թարգմանիչին վճիտ ոճին. անոր համար ալ յարգուած է միչտ փափկաճաչակ գրաբառագէտներէն։ Անգամ մը՝ երբ ի՛ր իսկ Գերպ. Հիւրմիւզի յանդիման կը կարդար իր ձեռագիր տաղերէն մէն, քերթող Արքեպիսկոպոսն ու իր փոքրաւոր հետեւողը խանդաղատանքով կը վկայեն՝ թէ ինք յաջողած է ամէնէն աւելի մերձաւորութեամբ մրցակցիլ հիւրմիւզեան գեղապարոյր ոճին. կը յաւելունք մենք ալ՝ թէ այդ փափուկ ոճին վրայ ինք աւելցուցած էր կարեւոր ինքնութիւն մը, իմաստներու աչխարհիկ տաստութիւն մը, սեղմութեամբ կչռուած, և կորով մը սեպհական՝ բաւական տարբեր հիւրմիւզեան տաղերու նմանութեանց և սեթեւեթեալ նազանքէն։

1861էն մինչեւ 1871 գրեթէ ոչինչ հրատարակած է. Փարիզի մէջ այդ տասը տարին իրեն համար լուռ աշխատութեան միջոց մը եղած է. գրել, կարդալ, լուսանկարել, դիտել, օրինակել, առաջնորդել երիտասարդութեան և առաջնորդուիլ Ֆրանսայի մեծերէն՝ համրապէս ասոնք եղած են իր զբաղումներուն բովանդակութիւնը: Այդ միջոցին Պոլիսի հետ իր կցորդութիւնքը կարի ցանցառած էին, և հին Պոլսեցիներուն տեղ անցած էին նորեր, որ կարի նոր և տաք խնդիրներով զբաղած՝ ա՛լ դուն ուրեք կրնային յիշել Նոր-հին Միսաքեանը: Փարիզի մէջ ալ բաւական շատցած էին Հայերն և կրնային Միսաքեանի կարօտը լեցունել իրենց զուարթ տեսութիւններովը: Իր մենարանն ալ հոն՝ ընդարձակ վերնայարկի մը սրահն էր, բաժնուած քանի մը արուեստական սենեակներու՝ խուակերտ զուարճալի անջրպետներով, որոնց մէջ էին իր մատենադարանը, իր աշխատանոցը, իր ճեմարանը, իր բաղնիս ու պարտէզն (1) և հաւնոցը:

Թռչուններու և հաւերու սիրող մըն էր ինք. իր ծանօթներէն մին կը պատմէ՝ որ օր մը տեսած է Միսաքեանը Փարիզի փողոցներուն մէջ տրտմագին և արտասուաթոր՝ որ

(1) Սրահին մէկ անկիւնը հողայատակեալ պարտէզ մը շինած էր։

մանրոյին տակն առած. մէկ հիւանդ իր հա-ւփկը, կը տանէր զայն յատուկ բժիշկի մը։ Ասոր նման շատ խանդաղատելի և զուար-ճալի մանրավէպեր կը պատմուին իր փարիզ-եան կենցաղին վրայ. հոն անցուցած է, կըսուի, Պոլսի երիտասարդական վարքէն բա-ւական տարբեր վարքով ալ կեանք մը։ Այդ մանրավէպերն ալ կը թողունք ուրիշի մը պատմել։

Միջոց մը էտ. Տիւլորիէի կողմէն կառա-ջարկուի իրեն հայ լեզուի ուսուցչութիւնը Քոլէժ տը Ֆրանսի մէջ. բայց այն ատեն Փա-րիզ գտնուող լեզուագէտ հայ քահանայ մը մէջ նետուելով՝ կառաջարկէ ինքզինքը։ Ա-սոր վրայ Միսաքեան կրա՛կ կտրած՝ ծանր գիր մը կը գրէ Պոլսի պատրիարքին, որուն մէջ կշտամբանքով յիշելով այս անիրաւ տըն-ձրգութիւնը՝ կը յայտարարէ թէ գիրքերը ծախելով Մարսիլիա և անկէ Եգիպտոս պիտի անցնի՝ ինքզինքն Եմպեդոկլի պէս հրաբուղ-խը պիտի նետէ։ Սրտնութի՜ւն ամենի՛ և արժանի՛ հոմերական դիւցազներուն։

Փիլիսոփայական հռետորական ու քիչ մըն ալ բժշկական և անդամահատական (որմէ չէր ախորժեր) դասերու հետեւած է իր պարապոյ ժամերուն, այլ նախընտրած ճիւղն եղած է միշտ հայ մատենագրութիւնն և բանաքննա-կան ու մատենագիտական արուեստն ալ հա-

սարակ։ Փարիզի պուրիթիդներուն մեծ մասը ճանչցած և ամէն շաբաթ ցանդորդած է անոնց Միսաքեան՝ պլպլող կրկող հետաքրքընութեամբ ու մատենամոլ շռայլութեամբ։ Կըսուի նաև թէ փայլած է ժամանակակից քանի մը Եւրոպացի նշանաւոր գրագէտներու բարեկամութիւնն ալ. թէ իր յորդորումովը Հ. Եդուարդ Հիւրմիւզ թարգմանած է մէկ քանի գրաբար հրաշակերտներ, մանաւանդ Պօղ Վիրգինէն, (1) թէ Հ. Սարգիս Թէոդորեանի 4 հատոր Մուրատեան վարժարանի պատմութիւնը տպագրուած է իր ձօնել տուած գիրերովը, թէ Փարիզցիք իր վարած մենիկ ու ինքնաբաւ կենցաղին արտակարգութեան համար՝ մատնանիշ կընէին զինքն «Ահա հա՛յ փիլիսոփան, հա՛յ Լամարդինն ըսելով», թէ.......

Բայց այս և ուրիշ շատ դրոյցներ, որ իբարու ներհակ բաներ ալ կ'առբերեն, չեն կրնար՝ գէթ նոր սերունդին՝ ներկայացունել մարդուն վճռական նկարագիրը, մինչև որ անձամբ չներկայանայ ինք մեզի իր բովանդակ երեւոյթներովը՝ տունին ու գրական։ Պէտք է Պոլի՛ս գայ Միսաքեան, որպէս զի տեսնենք շօշափենք զինքը, խօսի՛նք իրեն հետ, խօսի՛ մեզի հետ։

(1) Պէռնարտէն տը Սէն.Բիէռի այս սիրուն գոհարը թարգմանած է գրաբարի Վ. Ս. Իւթիւճեան ալ՝ դարձեալ Միսաքեանի թելադրութեամբն և սրբագրութեամբ՝ Հիւրմիւզեանէ շատ առաջ։ Մենք տեսած ու հաւնած ենք այդ ձեռագիրն ալ Կ. Պոլսեցի Թարգմանիչին քով։

## Գ. ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

*Տեւտոնեան պայքարը. — Միսաքեան պաշարեալ եւ հրանիւթի բռնուած. Ողբն ի Փարիզ.—1871ի ահաւոր անկումը եւ Պոլսոյ Հայոց վիճակը. — Ռուպէնս'ն ի Փարիզ, Ռուպէնս'ն ի Պոլիս. — Իր ընդունելութիւնն հոս.—Միսաքեանի զաւակները.—Մասիսի խմբագիրը.—Շուտ կիյնայ իր պաշտօնէն. — Իր Գորտամկնամարտը. — Փիլիսոփայ մարդուն պատկերը, մեր դպրոցը. —Թէոդորոս Զօրայեան փիլիսոփան.— Պուէ՛տը.—Իր Ա. դասը.— Հ. Եդուարդ Հիւրմիւզ եւ Անաքարսիս.—Աշխարհաբառէն դէպի գրաբառ.— Միսաքեանի ակադեմական մէթօտը.— «Ձե՛ն կարդար կը գըրեն, չգիտե՛ն դաս կուտան».— «Սկիւտարի հողն ու եռանդը տե՛ղ մը չիկայ».— Միսաքեան երեսփոխան եւ ատենապետ.— Իր կենցաղն 1885էն առջին.— Իր ժամադրավայրը.—Իր ապրանքն ու տարազը. —Միսաքեան Հաճի-աղայ.— Տեղական ու հոգեբանական պատճառադիտութիւններ.—Իր սրահն ու սեղանը.—Իր մարդատեցութիւնը.—Իր ծերութիւնը. —Իմ Տարուբեանականութեան յարած.—Հիւանդութիւնը.—Վախճանն եւ յուղարկաւորութիւնը. —Սկիւտարն եւ Սկիւտարցին. — Իր Պարթէնոպէն ու Պանթէոնը. — Վերջաբանական բուն տեսութիւններ :*

# Գ.

Կը հասնի վճռական թուականն 1870։ Տեւտոնեան հուրին նախկին պայթումէն իբր ամիս մը առաջ՝ Միսաքեան իր Նոր Բարե-ջանին հետ կը պաշարուի իր սենեակին մէջ՝ իր սիրական մատեաններովը, իւրակերտ բու-րաստանովը, թռչուններովը, հաւերովը. իր երազներովը, յոյսերովն և պատրանքովը։ Իբրև դիտող ու պատմագէտ մը չէզոք, ինք օրերով առաջ՝ հակառակ Ֆրանսացիներուն սկզբնական աղաղակներուն՝ կռահած էր այս աղխտաւոր պաշարումը. մինչ Փարիզցիները կրակ ու բոց կտրած ա պէ՛րլէն ա պէ՛րլէն կը գոչէին, ինք նախատեսելով առաջիկայ սովը՝ պաշարած էր բաւական ուտելիք, գլխաւո-րապէս օթեկ հացի կարմրած չորտեր ու թա-ճիճ ճէյվար՝ պատրաստուած դարակներուն վրայ։ Եւ անոնցմով էր որ շաբաթներով կը կերակրուէր՝ մինչ նքթեալ ամբոխն անսուրբ կատուներն եւ մուկե՛րն անգամ կը մաշէր կո՛յր կատաղութեամբ։ Բայց քիչ մնացած էր որ այդ պատմական պաշարումը տապալէր զինքն ալ ռումբերուն ներքև. վասն զի երկրորդ շաբթուն մէջ՝ ինկած էր իր քովի սենեակը խոշոր հրանիւթ մը, և կործանելով առաստաղը՝ ձգած էր բովանդակ յարկը ան

ու դողի մէջ։ Այս դէպքի մէջ դէպքն է՝ որ առիթ տուած է իրեն յօրինելու խոկոյն քերթուած մը, որուն մէջ կը նկարագրէ պաշարումին խստութիւնն և չուրջանակի աւերը բաբելական, իր դժբաղդ վիճակը ճակատագրեալ, Ֆրանսացիներուն զայրագին խուճապը, Փարիզի բնակից մոլութիւններն և փարիզցիներուն զեղծ վարքը՝ պաշարումէն առաջ. հո՛ն է՝ որ երբայեցի գուշակի չեշտերով կը կշտամբէ իր երբեմնի պաշտած յեղամիտ Ֆրանսացիները։ Գրեթէ բոլոր Հայերն ալ փախած էին Փարիզէն. սակայն ինք՝ Ֆրանսացիներուն զուարթ և երջանիկ օրերուն երեմն ուրախակից՝ կուզէ նաև աքիլլեան կարեկցութեամբ մը թշուառակիցն ըլլալ անոնց, և կը մնայ հոն՝ թերևս մեզի անծանօթ ուրիշ պատճառներով ալ։

Այսպէս պատեալ պաշարեալ Միսաքեանի ալ փարիզեան վերջին օրերը՝ գերմանական մուխերով աւելի կը մթագնին կը խաւարին, ամէն յոյսի հետ խորտակուելով հեղեղեալ խառնակութեանց մէջ, որոնցմէ ազատիլ չէր հնար բայց եթէ համբերութեամբ և պատեհական փախուստով մը։

Ամէն բան լմնցած էր 1871ին։ Այդ ահաւոր անկումէն ետքը՝ Միսաքեան սկսած էր նկատել գաղղիական հռչակեալ մեծութիւնն և զինուորութիւնը ճշմարիտ փիլիսոփայութեամբ մը,

առնկ մերկ աչքով, առանց խոշորացոյցի, առանց ակնոցի անգամ։

Տարիքը լեցած, իր հին բարեկամներէն ոչ ոք մնացած, իր հին ծրագիրներն յանկարծակիի եկած, հրապարակէն անձկացած՝ յետին ա՜խ մը կը փրթի ընկրկեալ սրտնեալ և ճարահատեալ պանդուխտին ներսէն, ու աչքն Արեւելք կը դարձունէ։ Ա՛լ դառնալու է Պոլիս։

1871ը Պոլսի հայերուն ամէնէն բեղմնաւոր տարիներէն էր. գործօ՛ն, խօսո՛ւն, սըրբագրեա՛լ, խարբալեա՛լ։ 1860էն ի վեր ամէն բան առած էր՝ տակաւ յառաջատութեամբ՝ նոր և աշխարհիկ գնացք. կերպացած էր խօսողներու կանոնաւոր շարք մը և խօսելու կանոնեալ լեզու մը. հին կռիւները, կուսակցական մռայլ ու տգէտ վէճերը՝ գէթ առերեւոյթս՝ խափուցուած էին հարթ համերաշխութեամբ մը. միայն ֆրանսական անկումով՝ բաւական ցնցած էր նմանող նոր երիտասարդներուն պատրալից խելապատակները; որ 10-20 տարիէ ի վեր դարիլ սովորած էին՝ ֆրանսական մատենագրութեանց ու փիլիսոփայութեանց տեսիլներուն հետ՝ ֆրանսական պոռոտագոյն անուրջներ խիզախ պարիկներ և յախուռն կիրքերու արդիւնք յախուռն սկիզբներ։ 1860ի առաջնորդող սերունդը՝ դեռ մասամբ գործի գլուխ կանգնած՝ կը

խրախուսէր նորահաս երիտասարդներն՝ իր ազդեցութեամբ ու չափազանց թոյլատուութեամբ (tolérance)։ Օրագրութիւնն՝ հիներէն ու նորերէն կը բանէր ժամանակին կարող ձեռքերուն մէջ, Մասիս, Փունջ, Օրագիր, Մանզումէ, Մեղու օրուան թերթերն էին, ու կը կարդացուէին ուրաքանչիւրն իր գոյնին մէջ՝ պահպանական, կղերական, համարձակ, զաւեշտական և այլն՝ մանրանմանութեամբ ֆրանսականին եթէ ոչ էութեամբը գէթ երեւութեամբը ճշգրտատիպ։ Եւ այս կեանքը ֆրանսակեաց Միսաքեանին ալ չսիրած բանը չէր։ Այդ նմանող զարգացումին ձայնը՝ մանաւանդ հեռուէն՝ շատ անուշ հնչած էր իրեն, անո՛ւշ այնքան, որքան դառնացած էին իր շուրջի որոտող ձայները։

1871ին վերջերն է՝ որ կը ժամանէ Մարսիլիայէն Պոլիս՝ նոյն պարզ և փիլիսոփայ տարազովը, որով կապրէր Փարիզի մէջ՝ հետն առած մինչև իսկ իր 24 տարուան ֆէսը. բա՛րք։ Երկու հազարի մօտ գիրք ու ձեռագիր բերած էր հետն և երկու կառքի չափ սարուփարթայ, որոնց ամէնուն անօրէնն ու խելք հասցունողն ի՛նք եղած էր ու ի՛նք պիտի ըլլար միշտ՝ ասեղէն մինչև թելը. ստուգիւ, կենցաղին նայելով, Ռոպէնսոն ի Փարիզ Ռոպէնսոն ի Պոլիս։

Նոյն օրը ժողով կար, կըսեն։ Ժողովա-

կաններէն իր ծանօթները գալուստն իմացածնուն պէս. կը փութան հետաքրքրութեամբ դիմաւորել զինք, և հարևանցի թօթուըտուքէ մը ետև՝ բերել ժողովին սրահը, ուր չնայելով իր նժդեհական արտաքինին, կընեն իրեն պատուալից ընդունելութիւն մը։ Երկրորդ օրն այցելութիւն մը կուտայ Օտեան Պօղոս աղայի բանաստէր որդիին. հոն կը գըտնուի նաև Գեր. Մկրեան Տ. Յովհաննէս հայրը։ Միսաքեանի մեկնելուն վրայ Օտեանի որդին 20 ոսկի Մկրեան հօր կուտայ՝ որպէս զի նոյն ժամուն Գուէտին յանձնէ ի ծախս իւր նախապատրաստութեանց։ Ճամբան հանրակառքին մէջ շատ կըստիպէ քահանան Միսաքեանն՝ որպէս զի ընդունի նուէրը, բայց անհնար կըլլայ իր հաճութեամբն ընդունել տալ. մինչև որ հարկ կըլլայ բռնի գրպանը լեցունել։

Այնուհետև իր համբաւն անդրադառնալով բաւական խորունկ ալքերէ, կըսկսի տարածուիլ մանաւանդ գրագէտ ըսուած դասին մէջ. «Տեսնե՛նք, ներկայանա՛նք, խօսի՛նք հետը» կը շշնջեն անկարծսիրաբար, բայց մեր նորեկն այն տեղուանքը չէ շատ։ Մէկ քանի շաբաթ հիւր կըլլայ Սկիւտար, Իճատիյէ, Իւթիւճեան Կարապետ էֆէնտիի տունը, մինչև որ իր ծնած թաղին եկեղեցապատկան պանդոկին մէջ կը պատրաստէ սենեակ մը, ուր և մնաց մինչև վերջը։

Խաչգիւղի կրակ ու գրագէտ երիտասարդութիւնէն, իր հին բարձրաստիճան աշակերտներէն, Պոլիսի հայ իմացականութիւնէն կարեւոր խումբեր հետզհետէ կայցեն կը տեսնեն ու կը շօշափեն փիւնիկ մարդը, որ անզգանազան (indifférent) պարզմտութեամբ կը տեսակցի ամէնուն հետ՝ դեռ բաւական վառ Փարիզի համարձակ տեսիլներուն և յիշատակներով, մինչև որ կը լուծուի իր ալ պատրանքը, մինչև որ կը խմէ բիւզանդական ջուրը։

Լուր կելնէ նաև իր ազգականներուն մէջ թէ Միսաքեան կարգուեր է, զաւակներ ունեցեր է, ու այդ զաւկըներուն եկեր է Փարիզէն (այս լուրն ինք հանած էր)։ Կերթան անձկութեամբ և կը հարցունեն զաւակները.
— Զաւակնե՞րս, ահաւասի՛կ։ Ու կըսկսի ցուցադրել իր բազմեղբայր գիրքերը։

Դարձեալ աղէկ չգիտենք՝ ի՞նչ խօսակցութիւններ տեղի ունեցած են Մասիսի հին խմբագիրին տունն և ի՞նչ եղած է գլխաւոր պատճառն՝ որ այնքան երկարամեայ բարեկամներ այնքա՞ն տարակարծիք գտնուեցան ապա իրարու և թշնամացա՞ն իսկ, մինչև որ այդ գրական ու անձնական քակտումն՝ եղաւ գլխաւոր պատճառ Միսաքեանի պոլսական ձախողուածներուն ալ։

Մասիսի խմբագիրը բաւական տխրած

ըլլալու է թարմ թարմ հրապարակ նետելու համար իր հին երէցը, որ մինչեւ ոտքը պընդած ու չէ զիջած՝ գէթ տարի մը հեռուէն ազգին վիճակին ուսումնասիրելէն ետեւ գործի սկսելու խորհուրդով։ Դարձեալ՝ Միսաքեան բաւական անշողոքորթ յանդիմանութիւններ ուղղած ըլլալու է, ըստ իր սովորութեան, Կ. Ս. Իւթիւճեանի՝ գրական քանի մը խնդիրներու և անձնական պարագաներու համար, որ բնական տարաձայնութիւն մը կը ձգէին քառորդ դար մը ամուրիաբար Փարիզի մէջ իմաստասիրողի մը և քանի տարի ամուսնական կենցաղով մը Արեւելքի Հռոմին մէջ գրողի և գործողի մը միջեւ։

Միսաքեանի պայմանադրած այդ տարուան պայմանաժամին՝ համառօտեցաւ, սակայն, բաւական ձախորդ կերպով։ Ժողովէն, օրագրութենէն, թաղերէն այդ անձն իրենց կողմը քաշելու համար բան չմնաց որ չընէին. սակայն ինքը դեռ ինկած չէր իր հին անմէջ չէզոքութենէն, ու թարմ և հզօր համբաւքին գիտակցութիւնը՝ բաւական ուժգնութեամբ անխախտ կը պահէր զինքն հոն։

Իր նախնի ծանօթներուն տեսական ազդեցութեան ու համակրութեան գաղափարը՝ դեռ հզօր կը պահէր իր Փրանսական անձնասիրութիւնը, իր համարձակ անձնավստահութիւնը, որ յաճախ ալ աններդաշնակելի հը-

պարտութիւն մը կը ջամբէին իր քիչ շատ փիլիսոփայական (իր իսկ բառով) միտքին։ Կայի՞ն այդ հին ծանօթներուն մէջ այնպիսիներ ալ՝ որ՝ քսան և չորս տարուան ծոյլ տարակացութեամբ՝ կը տարուբերէին Մխաքեանի իմացականին ու բարոյականին հակոտն վիճակի մը մէջ, ու ինք իրաւունք ունենալու էր անոնց շատ երես չընելու՝ որչափ ալ ջանային անոնք խմցունել իրեն իրենց ջուրերէն։ Որով պատճառ մը աւելի ունեցան զինքն ատելու։

Տարի մը՝ իր տարաշխարհիկ գործունէութեանց կոյս ոգին անդին չանցաւ քանի մը մտերիմներու տունը խորհրդակցական սահմանէն։ Հին կարաւն հրապարակով խօսեցունելու ոմանց հետաքրքրութիւնն՝ յաջողեցաւ վերջապէս նետել օրուան առեանը, բաւական ձախորդ պարագաներով, տարաբաղդ Մխաքեանը, որ արդէն ազդեցութեամբ մը «Առաջին անգամ այս պարագաներով հրապարակ ելնելս ինծի բարեգուշակ չը Թուխը» կը գրէր իր առաջին տողերով. երանի թէ մտիկ ընէր իր ներքին այդ թելադրութեանցն ու չգրէր դեռ։ Անհաւատալի այդ պարագաները. վա՛ց, կենդանի բառերուն վրայ ծագած էր տաք վէճ մը Մասիսի և Փունջի մէջ, որ կցորդուելով հին հաշիւներու և պրկումներու հետ և տակաւ աճելով՝ առաւ ակադեմական

դատարկամաղի երեւոյթ մը․ քառասարաններ, փառ-տարաններ, դատաստաններ յուզուեցան ամիս-ներով․ գրագէտ չմնաց որ բան չգրէր այդ դատերուն՝ լայնքին, երկայնքին, քղանցքին ու տառերուն վրայ․ գրեցին մինչեւ Ա․ Մ․ Պարտագաշեան ու Տէրոյենց ալ։ Եւ այդ գոր-ծամկեանեանեան էր՝ որ պարպեց Միսաքեանին անգամ իր լռութենէն ու գեղեցիկ պատ-րանքէն։

Համերաշկան այդ հսպառտ մակագիրով գը-րեց ի՞նչ ալ քանի մը հատուտորական յօդուած․ իր բարեկամները խանդով ողջունեցին զին-քը․ այլ, չիտա՛կը, բանը չէ՛ր արժեր ա՛յն-քան լեզու և ա՛յնքան դիցաբանութիւն և առասպելաբանութիւն սկրբթելու չափ։

Չէ՛ր արժեր որ այդ բառական ու անձ-նական վէճին համար՝ առաջին անգամ իր բովանդակ կծանող ըրջութեամբն հրապարակ նետուէր, վիճէր, մերթ աղայանար ու մերթ վարժապետանար, սուլուէր, հեծուկի մատ-նուէր՝ Փարիզի քաղաքն և հինգ տարուան փի-լիսոփան, որուն համար կայի՛ն աւելի կարեւոր գործեր։ Ցաւըողեցան, Յ․ Պարոնեանի ըստ-մին ըսէս, իրենց ծովը ձգել հին լուղորդը, և յանկողեցան քնկզմել իսկ զայն, վասն զի ի-րենց ընդդիմադարձ կը լողար և կը մարտ-նչէր զիրենք անխնա՛յ։

Ծատ տղայ էինք մենք այն ատեն, և Մի-

տաքեանը տեսնելէ ատաւ՝ տեսանք ու կար-դացինք իր գրուածները բացառիկ հետա-քրքրութեամբ. զմայլեցանք իր ոճին ու ճարտարախօսական ուժգնութեան վրայ կրթ-ուած նորանշան անձնասիրութեամբ, և ա-նողոք ճշմարտասիրութեամբ մըն ալ առած խրատուցիչ կերպարանք։ Կը բաղձայինք տես-նել փիլիսոփայ մարդը, կուզէինք մենք ալ տեսնել զինքը, դաս առնել իրմէն. մանա-ւանդ մեր մէջէն մէկն՝ որ կոյր տարփող մըն էր հին յիշատակներու հին լեզուներու և հին մարդերու։

Պոլիս գալէն տարի ու կէս ետքը պատա-հեցանք իրեն. անձրևոտ իրիկուն մըն էր երբ ներկայացանք անոր։ Պատուելին (վասն զի այսուհետև այս անունով պիտի անուանենք զինքը) Սէլամիյէի փուռնէն հաց կառնէր. միջահասակ, խարտիշամօրուք, առոյգ կազ-մով, կարմիր երեսներով և վառվռուն աչ-քով՝ վաթսուննոց մը կը ցուցընէր։ Արտաքին երևոյթը՝ փիլիսոփա ամզանէն ու անյարդ-ար մօրուքէն ու ֆեսէն զատ՝ չունէր կարգէ դուրս բան մը։ «Օ՛ բարև ձեզ» ըսաւ, և տաք ժպիտով մը քանի մը խօսք փոխանակելէն ետև՝ «Կերակուրիս ատենն է» կրկնեց և հե-ռացաւ։

Քանի մը օր ետքը՝ իմացանք որ մեր հո-գաբարձութիւնը մտադիր է եղեր դասախօս

դնել մեր դպրոցին Միսաքեանը։ Չէի՞նք ակնկալեր զայս. զի թո՛ղ որ շարունակեալ խառնաշփոթութիւններէ ետքը՝ մենք ալ ուսումէ յուսահատած՝ ինքզինքնիս տուած էինք խառնաշփոթ դպրոցական կեանքի մը, լսած ալ էինք որ Միսաքեան՝ հակառակ իր մէկ հին Վանմ. աշակերտային թախանձանքին՝ ըսած էր քանիցս թէ «Ես դասատուութիւն ա՛լ չեմ կրնար և չեմ ուզեր ընել»։

Մեր այս դպրոցն ունէր այն ատեն արտաքին կանոնաւոր երեւոյթ մը և ներքին անկանոն վիճակ մը. աշակերտներէն շատեր երես ելած էին, ու հասակաւորներն ալ՝ ինչպէս ըսինք՝ վարակուած խառնաշփոթութեանց ձեռնտուանքով։

Ուսումնական վիճակը՝ Ֆրանսերէնէն զատ՝ շատ յետնեալ ու դադարեալ իսկ էր։ Յաճախ հարկ կըլլար մեզի՝ դաս տալ մեր հայերէնի դասախօսին. յառաջադէմներն ու աչերնին բացուածները՝ հետզհետէ կելնէին դպրոցէն։ Քանի մը ընկեր էինք՝ որ քիչ մը սէր ունենալնուս համար հայ լեզուին՝ դեռ կը դիմանայինք հոն, և ինքնին՝ առանց առաջնորդի՝ կը կարդայինք օրուան բանաստեղծութիւնները ու գրաբառ խոշոր գիրքեր, Զարգացելոցն ու Իլիականը: Ունէի՞նք Տիգրանակերտցի կրօնախօս ու կրօնակեաց վարդապետ մըն ալ, որուն մատենադարանէն գրաբառ գիր-

քեր փոխ առնելով՝ անյագաբար կը կարդայի տարիքիս անմարսելի բաներ, մինչեւ իսկ Հ. Գաբրիէլ Աւետիքեանի Պօղոսի մեկնութիւնները և Օգոստինոսի Ցղ. Քաղաքին Աստուծոյն: Ունէինք նաեւ ծերուկ դաստիարակ մըն ալ, որ գլուխ ուռեցունելու աստիճան ժամերով կը պանծացունէր գրաբար լեզուին վսեմութիւնը. մոլեգնաբար ինծի կը խօսէր մեծ Հ. Արսէնի ու Հ. Եդուարդի վրայ՝ հին յոյն կէս իմաստուններուն նման ձեռքով ու-քով շարժումներով ոստոստելով: Ա.ը կը նմանցունէր Նարինջի և Բ.ը եղակի: Կարտասանէր տաղական չեշտով մը անոնց տաղաւորներէն ճոռոմագոյնները, զորս գոց ըրած էր. մերթ կը պոռար աստուածապարարկի մը պէս «Ցուկոմնքնե՛րդ ուտեմ, Հա՛յր Եդուարդ», մերթ լուռ մուռ հիացումով կարտասուէր՝ աչերն յառած իր մուսային (վստա՛հ զի ունէր տեսանելի մուսայ մըն ալ). արտասանած ամէն մէկ բառին նուիրուած ձեւերը կը կաղապարէր իր ալեծածան մարմինին վրայ՝ դերասանական շարժումներով և տաղտկացունելու աստիճան կրկնաբանութիւններով, այնպէս որ տղայոցմէ շատերն ա՛լ երես եղած էին: Կը խօսէր հին իմաստասէրներուն, մանաւանդ Սենեկայի վրայ, որուն ստոյիկ իմաստներուն սիրահարած էր՝ կարեւէր խաբ--ուէն եռեւ առանձին սիրոյ մէջ. կը խօսէր

աստուածաբանական ու փիլիսոփայական խորունկ նիւթերու վրայ, Բարիի եւ չարի ակիզբին, Նիւթին յաւիտենականութեան, իրաց վախճանին, Պիւթագորեանց ու Ճեմականաց վրայ՝ ճիշդ հին հայու մը և մանաւանդ Ա. Մանծոնիի գիտուն-իմաստակ Ֆէրրանտ զուարճալի խելքովը և տրամաբանութեամբ(1), և մենք՝ մանաւանդ ես՝ ժամերով մտիկ կընէինք ի յարգանս իր մաքուր ծերութեան այդ գէր վարժապետին ատենականները, որ շատ եպիսկոպոսացածներու աշխատակցած Տաղնազարեան ու Ներսէսեան վարժարաններուն դաստիարակած ու Ռ. Պէրպէրեանի ալ վարժապետած և Միսաքեանի ալ աշակերտակիցն եղած էր։ Այդ կարգէ դուրս առոյգ ծերունին՝ ցայնվայր դպրոցական յարկերուն տակ մեր տեսած միա՛կ իմաստասէր մարդն էր՝ որ նախկին բողբոջը մնոյց մեր մէջ ծաղկաքաղ փիլիսոփայութեան մը և համբերող առաքինութեան։ Այդ անձն էր Թէոդորոս Զօրայեան, ուտելիքն էր արմատ չաքարած պանիր և քաղցուեղէն. միս քիչ կուտէր։ Եւ մեռաւ իննըսնամեայ։

Այս Զօրայեանն՝ օր առաջ աւետեց մեզի Թէ Միսաքեան Պուէտը մեզի պիտի դասախօսէր. Ա՛հ, այդ Պուէտ անծանօթ մակդիրը

(1) Ա. ՄԱՆԾՈՆԻ Խօսեցեալք. Թրգմ. Հ. Եղ. Հիւրմիւզ. տպագր. Վենետիկ, 1875. հատ. Բ. էջ 451–454։

մանաւանդ՝ շատ կը հետաքրքրէր մեզ. արդ-եօ՛ք Գլատոնի կապպարէ՞ն կերած թէ Եղիա մարգարէին քղանցքի՞ն կտորէ՞ն ժառանգած մարդ մըն էր Գուէտը. առասպելային հմայք մը կար այդ պուէտ ձայնին մէջ, յոյժ տար-բեր և յոյժ գրաբառ ալ Ֆրանսական բոեղ-նա՛յ ձայնէն։

Անգամ մը իմ բացակայութեանս՝ այցած էր դպրոցն ու ախորժած մեր մէկ քանիին գրաբառի համար ունեցած տարփանքէն։ Իր երկրորդ անգամ և վերջնապէս հաստատուե-լու համար գալու որոշուած օրն՝ առաջին դասարանը կըսպասէինք 6-7 հոգի կրօնական լռութեամբ։ Հասաւ ակնոցաւոր մարդը [1], վրան ալ մալիբոյ մը. խոշոր ֆէս մը գլուխն և քանի մը գիրք ծրարած անութին ներքեւ։ Ու Ֆրանսական թեթեւ ոստումով մը բազ-մեցաւ իր աթոռին վրայ. չափ չունէր մեր ուրախութիւնը՝ մանաւանդ մենէ երկուքին։ Կըմտածէինք պատանեկան երկիւղածութեամբ՝ թէ 25 տարի Փարիզի մէջ անցունող մարդ մը, որ կը ներկայանար մեզի այդ պարզ հա-յու տարազով, անշուշտ փիլիսոփայ մը ըլլա-լու էր եթէ ոչ Գրոմեթէոս մը։ Կը դիտէինք իր յանկարծական շարժումները. Ֆօնօկրաֆի

[1] Իբրև մարմնական նշաններ՝ Միսաքեանի վրայ գիտուած է աչքին միոյն շեղութիւնն և մէկ ճկոյթին կար-·Գիւնը։

պէս կը քաղէինք իր բերնէն Թռած զգոյշ բառերը, զոր կարտասանէր իրեն սեպհական մե՛ղմ, յստա՛կ, քաղջոլո՛ր արտասանութեամբ։ Առատ քանի մը տեղեկութիւն մեր անցեալին վրայ և հարեւանցի քննութիւն մը ըրաւ մեր հայերէնին։

Քանի մը պատասխաններ տուինք Զարգացեղոցէն, որոց չհաւնեցաւ։ «Զարգացեղո՛ց ալ կը կարդաք, հէ՛. դուք ճիճ չեղած մարդ-դառնել կուզէք կոր։» Ոտանաւոր ալ կը գըրէինք այն ատեն. «Արձակի՛ աշխատեցէք, ըսաւ, ձեզի Հիւրմիւզի գործերը պիտի կարդացունեմ. Տեղեմաք և տրամաբանութեան ալ դասեր պիտի տամ»։ Քանի մը անգամ այսպէս փորձելով չարունակելուն վրայ՝ հետզհետէ կը փոխուէր մեր հայ ուսումին ընթացքը. Հոմերի Իլիականը տեղի տուաւ Վիրգիլի Ենէականին ու Ֆրանսերէնն ալ Հայերէնին, որուն վրայ մանաւանդ ե՛ս շատ ուրախացայ։ «Ես կուզեմ որ, ըսաւ, աղէկ սորվիք Հայերէնը, մինչեւ որ չհարստանաք գաղափարով՝ գրել չպիտի տամ ձեզի. Ֆրանսերէն ալ պիտի տամ՝ բայց հարիւրին իննսուն Հայերէ՞ն պիտի սորվիք։» Շանթի՛ պէս զարկաւ այս վճիռը մեր մէջէն մէկ երկու Ֆրանսամոլներուն, որ կը զարմանային լսելով այս յայտարարութիւ-
՞ը քառորդ դար մը Ֆրանսայի կաթը ծծողի
', բերնէն։ Երրորդ դասին հետը բերած էր

Հիւրմիւզի Տէլեմաքը, Անաքարսիսի Ա. հատորն ու Ֆրանսերէն հին տրամաբանութիւն մը, զոր թարգմանելով գոց պիտի ընէինք և օրինակէինք ալ. երբեմն Շարսալէն ալ գոց ընելով իբրև Ֆրանսերէն դաս, բայց ո՛չ իր ուզելովը: Վեց եօթն ամիս ինկանք ելանք այդ մէթոտով. աշակերտներուն մեծ մասը դժգոհ էին ու չէին հետեւեր այդ դասերուն՝ օգուտ քաղելով դպրոցին թոյլ գնացքէն. այլ կայի՛նք քանի մը հոգի՝ որ բոլորովին անմռունչ համակերպութեամբ և պատճառաւոր եռանդով, մանաւանդ ապագային մեծ դասեր կորզելու ակնկալութեամբ, կը հետեւէինք գոյի այդ չոր դասերուն, և ըստ իր թելադրութեան՝ գիշերներն ու պարապոյ ժամերը կը շարունակէինք կարդալ և օրինակել խակ՝ Ռոլէնի ու Անաքարսիսի ստուար հատորները, Ենէականն ու Ե. Հիւրմիւզի տաղերը: Ինք չհասած՝ գրաբարի մէջ (մի՞նչ պահեմ մեղքս) ես առած էի յատուկ զարգացում մը, պատճառով մը բնաւ գլուխ չունենալով Ֆրանսերէնի, և գրեթէ անսխալ կը գրէի Բագրատունիի ոճին կապիկ նմանութեամբ մը. գրած ալ էի Որիոն վերնագիրով ձմեռուան վրայ տաղ մը, որուն մէջ բախող և ողընդժնեայ բառերով ձմեռուան խստութիւններն իբրև թէ կը պատկերացունէի, քանի մը ձեւ ալ յարասելով Մշակականէն.

և կարդացի իրեն զայն ու ըսի թէ Վենետիկ. պիտի երթամ ու Հայր Արսէնին պիտի հանդիպիմ. ժպտեցաւ, և այնուհետև աշխատեցաւ վարպետ ձևերով առաջքն առնել այդ Վենետիկի գաղափարին, որ տղայական գաղափարներուս ամէնէն հաստատն էր և որ պիտի կըրնար միանգամ ընդ միշտ փրկել զիս....: Ինք Մխաքեան ձգել տուաւ մեզի վերջապէս Հ. Արսէնը, զոր յաճախ խծբծելու աստիճան կը քննադատէր, ու դարձուց մեր միտքերն Հիւրմիւզի նկարէն ոճին. ամէն համ Հիւրմիւզի ոճին մէջ էր, ըստ Պուէտին. ամէ՛ն գեղեցկութիւն, հայկաբանութի՛ւն, վայելչութի՛ւն, ճաշա՛կ, շնո՛րհ, մինչև Ս. Հոգի՛ անգամ. իր նախադասութիւններէ՛ն էր աս: Կըզմայլէր Անաքարսիսի վրայ. կըսէր ատէպ. «Հայերէն սորվելու համար ծայրէ ծայր գոցընելու է Անաքարսիսն և Աստուածաշունչը. չա՛ն պէս աշխատելու է»: Այս խստութեանց վրայ աշակերտներն սկսան ա՛լ աւելի խըրտչիլ իրմէն, որոնց մէջ կայի՛ն դասէն դուրս մարթանքով զինքն իրենց քաշող և օգտուողներ: Կրտսեր Դուրեան և իր մէկ ընկերը՝ ձգելով իրենց սիրելի Ծեմարանը՝ կուգային ունկնդիր ըլլալու մեր դասերուն և առնելու վարժապետական ճիւաններնին: Օր մը Դուրեան հրատարակած էր Փունջի մէջ արձակ քերթուած մը գեղեցիկ, զոր ես կարդացի

բարձրաձայն մեր Պատուելիին. մտիկ ընելէ ետեւ քաղցրութեամբ՝ դարձաւ Դուրեանին — «Եթէ յաջողիս, ըսաւ, գրել այդ իմաստն Հիւրմիւզի գրաբառովը, այն ատեն կըլլաս ճշմարիտ բանաստեղծ»։ Սակայն Դուրեան գլուխ չունէր գրաբառի. ցայնվայր կը գրէր գեղեցիկ թատրերգութիւններ ու բանաստեղծութիւններ աշխարհաբար. այնուհետեւ իբր ակամայ տուաւ յայտնապէս ինքզինքը գրաբառի՛ ալ։ Քանի մը անձերու այս կարեւոր դարձին՝ Պատուելիին հեղինակական յորդորներուն հետ՝ մե՛ր ալ եռանդը պատճառ մը աւելի եղաւ՝ որով իրենց հիմնաւոր ապագան պատրաստուեցաւ լրջագոյն յատակի մը վրայ։

Երբէք չէր յոգներ բան մը բացատրելու, տպաւորագոյն ընելու համար, այլ հեղինակօրէն «գացէ՛ք կարդացէ՛ք այս ինչ գիրքը» կըսէր. խորհուրդներ կուտար հեզնութեամբ խառնուած և գեղեցիկ հատուածներ կը կարդար ու կարդալ կուտար լայնարտութեամբ։

Զուարճախօսութիւնն ալ պակաս չէր մեր դասէն՝ մանաւանդ մէկ քանիներու թեւլադրութեամբը։ Ամէնէն կարեւորն էր տրամաբանութեան դասերնիս. ինք շատ հզօր խելամտութիւններով կը բացատրէր խորհելու արուեստին կանոնները, որ հիմայ (1898) վերցած են գրեթէ մեր ամէ՛ն դպրոցներէն՝ տեղի տալով ճարտարխօսութեան և բանաստեղ-

ծուլթեան, առաջինը դայեակ սուտին և երկ-րորդը մխիթարանք անյոյս երիտասարդներու։ Այդ տրամաբանութիւնն էր Ֆրանսերէն հին գրքոյկ մը, զոր մինչ ծածուկ կը պահէր և զոր հեղինակին իմանալու համար երբ օր մը գաղտ կը թղթատէի մէկուն թելադրութեամբն՝ ինք վրայ հասաւ, զայրացաւ, ու դատա-պարտուեցայ հեռանալ դպրոցէն ամիսի մը չափ....։ Այսպէս՝ շատ խիստ էր իր փոչոտ գաղտնիքներուն համար, և այդ խստութենէն աղէ՛կ կօգտուէին վարպետորդի սաները, որ կըրցան չողոքորթել զինքը։

Պոլիսի Հայերէն-Ֆրանսերէն դասատուներուն գրեթէ ամէնն ալ սկսած էին քրթմնջել իր վրայ, վասն զի անխնա՛յ կը դատափետէր անոնք. «Ձե՛ն կարդար, կը գրէն. չգիտե՛ն դաս կուտան» կաղաղակէր։ «Գաղափա՛ր, պատմութի՛ւն չունին, ծանծաղ ու թեթեւ-մարդիկ են»։ Մեր դպրոցէն միայն կառնէր 10 ոսկի ամսական՝ երկսեռ աշակերտներու Ֆրանսերէն ու Հայերէն դասախօսութեանց համար. այս պարագան բաւ էր իրեն դէմ հանելու կարգ մը դասատուներ, որ չունէին լաւ վիճակ մը։ Այդ քրթմնջիւններն ու նո-րանոր հնարքներ և իմաստակ դիմախօսու-թիւններ այնպէ՛ս ազդեցին իր վրայ՝ որ սկը-սաւ կասկածիլ մեր հաւատարմութենէն ալ։ Երբ դասէն դուրս բան մը հարցունէինք՝ կը

նսղարանէր կը փախչրանէր. «Դո՛ւք թելադ-րուա՞ծ էք» կը պոռար: Այդ կասկածոտ բնաւորութիւնն հետզհետէ այնպէս աճեցաւ մեր տղա՛յ երկայնամտութեան հետ՝ որ ալ մանուկի մը պէս մե՛նք կը գործածէինք զինքը, իր խօսքէն ու ակնարկութենէն դուրս չէինք ելներ: Կը ձեռնարկէինք իր պատուէրին անսալով օրինակել ամբողջ գիրքեր, և հակառակ թելադրութեան հոգաբարձուներուն՝ կուզէինք որ ամէ՛ն պարագայի մէջ՝ ի՛նք ըլլայ մեր ուսուցիչը: Ես՝ ութ-տասն ամիս այսպէս շարունակեցի իր կէս ակադեմական կէս ընտանեկան դասերուն, և ելայ դպրոցէն յarշի՜ . . . իբրև թէզ Գուալոյի Arnikus Բer-թողականին Ա. գլուխը թարգմանելով յանդաւոր գրաբար:

Մէկ երկու տարի ևս շարունակեց դաստալ այդ վարժարանին մէջ՝ բաւական անլուրջ յուզումներու ալ խաղացողն ու խաղալիկն ըլլալով՝ մինչև որ յաջողեցան հանել զինքը. չկրցաւ իր երկա՛ր մէթոտին վրայ հասցունել շատ աշակերտ. երեք չորս հոգի միայն կրցան օգտուիլ իրմէն՝ այն ալ իրենց իսկ յատուկ ճիգովն ու գիտնասիրութեամբ: Թերևս զղջա՛ց ալ դաստիարակութեան սկսելուն: Քիչ մը ատեն ալ դաս տուաւ Գատըգիւղի դպրոցն՝ առանց զգալի արդիւնքի. «Սկիւտարի հողն ու ճաշակը տե՛ղ մը չիկայ»

կ'ըսէր, վասն զի Սկիւտարցի երեք չորս սաներ՝ Ամրաոլցիներո՛ւն պէս կը հետեւէին իր խստապահանջ խորհուրդներուն։

Երգերն սկսած էր քանի մը տուներ ալ առանձին դասախօսութեան...։ Ու անգամ մը ժողովքին յուզուած մէկ Նիստին ատենապետ ալ եղաւ. փորձա՛նք կացութիւն, որուն վրայ Յ. Պարոնեան գրեց իր զաւեշտական կենսագրութիւնը՝ բաւական ճիշդ ու համով անէկտոդներով. սաստի՛կ զայրացաւ այդ կենսագրութեան վրայ և բերանն աւրեց ալ։

Ատեցող կը թուէր կուսակցական վէճերու, և յաճախ՝ յիշատակով իր հին բարեբաստիկ ու բարի ժամանակներուն՝ զզուանքով կը դատապարտէր Ընդհանուր ժողովին ընթացքը։ Կատէ՛ր, նորերուն հետ, հին կանոնադրականներն ալ, որոնք աղէ՛կ տեսած էր հեռուէն և որոց աշակերտներուն ամենի(1) ընթացքին ականատես մօտէն՝ կը մկրտէր տեսակ մը մակդիրով, որը չե՛նք կրնար յիշել։ Ա՛լ հետզհետէ իյնալու վրայ էր իր տրամաբանութեան անաչառ ոգին ալ. 1885էն անդին ա՛լ անկեալ կեանք մը կանցունէր՝ շատերուն անճշմարելի, իր հին անյողդողդ բնաւորութենէն բաւական բան ալ վերջապէս զոհելով իր միջակ շրջավայրին ու ինկած վիճակին պահանջումներուն, և այդ զոհերուն

(1) Իր բառն է։

ատեն՝ զինքը Փարիզէն ճանչցողներ, — բը-ժիշկ, բանասէր — «Ո՛ւր է ան Փարիզի Մի-տաքեանը, ստուե՛րը չէ մնացած հիմայ իր վրայ» կըսէին։ Եւ արդարե՛ւ, տարիներն ու ներհակներն ա՛լ սկսած էին յայտնապէս սպխա-ցունել իր խո՛ր ու անտե՛ս վէրքերը։ Իր հին նկարագիրէն իր վրայ կը տեսնէին դեռ իր անձնավստահութիւնն և անկարօտ օրինապա-հութիւն մը, զոր իբրեւ մինչեւ ի մահ, ամէն պարագայի մէջ, իր ետեւէն ընդ քարշ տա-նիլ կը ջանար։

Զբօսական ժամադրավայրն էր Սէլամսըզի Արթին աղա Թորգոմեանի սրճարանը, ուր ամէն երեկոյ ժամը 12էն մինչեւ $1\frac{1}{2}$ ներկա՛յ էր քանի մը բանասէրներու հետ։ Կը խօսէր ընդհանրապէս օրուան նիւթերուն վրայ՝ իրեն սեպհական որորուն պերճախօսութեամբ մը։

Կը կարդար մանաւանդ Վարդան փաշայի ու Ա. Մ. Գարագաշեանի գրածները. կը խօսէր մրգեղէններու, Փարիզի կենցաղին, Ամիրաներուն և Ճեմարանի ժամանակներուն, Ֆրանսայի մեծ անձնաւորութեանց և արուես-տական գիւտերու վրայ՝ հասուն բացատրու-թիւններով. կը պանծացունէր անգղիական գործնական հանճարը, կը խօսէր Գերմաննե-րու լուրջ յառաջդիմութեանց վրայ, մեծ յոյ-սեր և համակրութիւն կարտայայտէր Իտալա-ցիներուն վրայ. առիթ չէր փախցուներ կա-

*Թուրք Հաւատին դէմ խօսելու՝ գրեթէ միջ-
վանական մեկուսի մտածութեամբ մը վերջա-
ցունելով իր խօսակցութիւնները։*

*Տասը տարի չարունակ կերթայինք՝ իրիկ-
ունէ իրիկուն՝ չարշիի անշա՛հ և ապաշնո՛րհ
գործերու մը մէջ խոշտանգուած միտքերնիս
թափեցունել հոն իր տեսքովը ու խօսքովը,
որ ունէին մեր երիտասարդութեան համար
հմայք մը հոմերական։ Սակայն շատ ալ կա-
գանէր ու կը խաղար՝ հին հնարքներու մը
վրայ։ Երբեմն ալ ժամ մը լուիկ մնջիկ ան-
կիւնը նստած՝ մխքարշը բերնին՝ առնելէ ետք
գաւաթ մը ջուր, կը վառէր լապտերն ու
թեւաւոր ստուերի մը պէս կը մեկնէր սեն-
եակը։ Հետզհետէ թախծագին կերպարանք
մը առնելու վրայ եղող այս կեանքին կարե-
կիր, շատերը՝ գործերուն ներածին չափ՝ աշ-
խատեցան բարեկամաբար իրեն յատուկ օրա-
գիր մը հանել տալու, այլ ինք ի սպառ տար-
տամ խորտուցումով մը չհամարձակեցաւ. ա՛լ
ծեր էր վերջապէս։*

*Իր հին աշակերտներէն մին՝ մինչեւ ան-
գամ իր ոսոխներուն դէմ հրապարակով ստա-
նելու աստիճան յարեցաւ իրեն, որպէս զի
իրեն առնուելով՝ հաշտուի որոնց հետ հին
ւճուկներ ունէր. սակայն ի զուր։ Տարիքին
ս կանէր կասկածոտ ու մենաւոր բնաւո-
րութիւն մըն ալ, որ կը մթագնեցունէր և*

պատուաքին աշխարհին հետ անհաղորդ՝ կը պահէր իր իմացականը։

Միշտ կը կարդար, սակայն քիչ կը գրէր. գրածն ալ ընդհանրապէս ոտանաւոր էր. երկարոտ իմն և անօրած իմաստներով։ Տարիքին եօթանասունը կանցնէր և փորձառութիւնն ալ եկած լեցած էր՝ իր զուարթամտութիւնը փոխելու անյոյս ու անպատշաճաւոր զուարճախօսութեանց և հակադրական վարքի մը, որուն մենք՝ դժբաղդ պատահարներով՝ շատ չկրցանք ըլլալ ականջալուր և ականատես։

Հին բարքերու վեր ի վայր փոփոխութիւնը, հրապարակային կապիկ ու չանս կեանք մը, իր կարի ճշմարտասիրութենէն ու անձնասիրութենէն թելադրուած մարդատեցութեան մը հետ՝ ուծացուցած էին զինքն իր սիրածներէն անգամ. և Միսաքեան՝ կապտուած իր ախորժներէն ու փառաթափ՝ ա՛լ դարձած էր իր թաղին մէջ պարզ Հաճի աղայ մը՝ կենակից ու խօսակից անուսում մարդոց և մանուկներու, որ զինքը չհասկընալնուն համար՝ լինքն ալ ստիպուած էր խօսիլ անոնց հետ անո՛նց միտքովը ու լեզուով, որով այգհետեւակ միտքն ու լեզուն հետզհետէ ավրեցին իր վրայ ալ. անհնա՛ր է չպղծուիլ իր շուրջէն (1)։

(1) Ի. Թէն Շէքսբիրի վրայ ի պատմ. Անգղ. գրականութեան։

Այդ շուրջի անձերը կը դառնէին իր ներքինն իր փոշաա առատաքինէն ու ըստ այնմ կը բերուէին իր վերաբերումով. գիտցողներն ու զինք աղէկ ճանչցողներն ալ չէի՞ն խօսեր, ո՛վ գիտէ, ի՞նչ էր իր մեծ մեղքը: Մենք հոս կը ջանանք ըստ կարի՝ հոգեբանական և յայտնի պարզ պատճառներու և պատմական երեւոյթներու մէջ գտնել իր այդ այլակերպութեանց և այլակեցութեանց սկիզբը:

Ոչ մէկ կուսակցութեան չյարելու անորոշ հեգ մը՝ կուսակցական և խօսուն ժամանակի մը մէջ՝ ձգած էր զինքը շատ հեռուն հասարակաց կարծիք ըռուածէն. Թերեւս՝ զի հասած էր կարգ մը անողոք ճշմարտութեանց սահմանագլուխները, որ ճակատագիր կանուանենք, կամ զի իր մեծսրտութիւնը ունեցաւ մարդախոյս ներանձնութեան խորունկ պատճառներ, զորս չկրցաւ չքացունել իր գիտցած փիլիսոփայութիւններէն և ոչ մէկն: Եկած հասած էր այնպիսի ժամանակի մը, ուր հին բարքերն՝ իրենց անսաչ պարզութեամբն իսկ՝ կը մաքառէին դեռ զիրենք եղծանող նոր շրջումներուն հետ: Այդպիսի շրջան մը կանցունէին Հայերը 15-20 տարիէ ի վեր. այդ շրջանին մանաւանդ՝ շա՛տ դժուար է ապրիլ փիլիսոփայաբար. հոն հանգստասէրներն ու օրէնքի այնչափ կարեւորութիւն չտուողները՝ կը թուլնան իրենց լաւութիւններէն, իսկ օրի-

Նապահներն ա՛լ աւելի կը խստանան, որով երբեմն իրենց պնդութեամբ աւելի ու աւե-ցող ալ կըլլան։ Պատուելին ալ՝ իր հին բար-քին հետ՝ հինէ նորէ խառնուած կենցաղակա-նոն մը ունէր, որ շատ քանին չէր գար ժամա-նակին մարդոց և շրջում մեքենայող յառա-ջընթացներուն. և ինք ալ փորձառու այդ շրջումներուն, ա՛լ գիտակից որ չպիտի կըր-նայ ապրիլ այդ մարդոց մէջ իր գիտցած փի-լիսոփայութեամբ, և դառնացած ճարակող նորութիւններէն (զոր ինք կանուանէր ապա-կանութիւն)՝ չափէ՛ն աւելի գժդմինած երե-ցաւ իր խօսքերուն և տարազին մէջ. չափէ՛ն աւելի խստացաւ, և խորշեցուց իրմէն գրե-թէ ամէնն ալ։ Շատերն համարեցին զինքն հասարակ տեղիով մը՝ Դիոգինէս, այլ ինք իր խստասիրութեամբն ու գիտութեամբ համե-մատելի էր աւելի Տիմոնի. իր անհամբոյր բարքովը ու անաչառ դատումովը, անո՛ր պէս կուռեցաւ իր ժամանակակիցներուն հետ, որ մոռնալով իր անցեալ արժէքը՝ մարդատ-եա՛ց ըսին իրեն ու մարդատեա՛ց ալ ըրին։ Ասոնց վրայ՝ ունէ՛ր այդ մարդատեցութիւնն առանձին պատճառներ ալ։ Իր վերջին տա-րիներուն ո՛չ միայն բարեկեցիկ չէր, այլ կա-րօ՛տ ալ էր. շատ սատակ կուտար գիրքի, ո-րով ստիպուած էր բնակիլ անշուք տնակի մը։ Կերակուրն ալ ինք կեփէր հոն, կա՛մ

ալ ինք կը կարէր. ամէ՞ն գործ ի՞նք կր կատարէր այդ չորս կանգուն սենեակին մէջ, ուր շատ քիչերու ներուած էր մտնել և ականատես ըլլալ ստայնանկեան ամօթի մը, խորապէ՛ս զգացուած հպա՛րտ ամօթի մը: Այսպէս ապրող կամ այսպէս ապրիլ ուզող մարդ մը՝ ինչպէ՞ս չըլլար յաճախ դառնախօս և դառնագործ ալ: Վերջապէս ի պաշտօնէ սուրբ մը չէր ինք:

Այդ իր ստայնին ալ՝ Եէնիմահալլէի իջեւանին անկիւնր 5-6 մէդր մեծութեամբ սրահ մըն էր՝ տախտակեղկով մը բաժնուած երկուքի: Դուրսի դուռնէն ներս մտնելուդ՝ դէմդ կելնէր Պատուելիին խոհանոցն ու բակը, մէկը ձախ միւսն ալ աջ կողմէն, բակը մանաւանդ շատ խառնաշփոթ էր. չորս դիէն դարակներ՝ շիշերով և պտուկներով լեցուած, տանամաններ, կրակարան, ջրաման, աղտոտն և մաքուրն իրարու քով. սակայն միշտ անջրպետուած՝ խելքո՛վ մը: Ներսէն աւելցած գիրքերն ալ շարուած էին այդ բակը, որուն առաստաղէն կը կախէր ձմեռները պտուղներ սերկեւիլ կամ խաղող և այլն: Երկրորդը՝ բուն սենեակը՝ աւելի խորն էր, և հոն էին իր անկողինը (երկու պարզ եռոտանիներու վրայ) կարծրացած բազմոց մը, որ տարիներուն հետ կը ծերանար և կաղատէր և որուն վրայ կը գտնուէին ընդհանրապէս

քանի մը կտոր նորատիպ Ֆրանսերէն գիրք։ Մնարը կը հսկէր իր աւանդական ձէթի կանթեղը, զոր ամէն գիշեր կը վառէր, վասն զի «կը վախնար գիշերն անլոյս արթուննալէն»։ Անկողինէն դէպ ի իր փողոցի դուռը կը ձգէր չուան մը, զոր կը գործածէր հիւանդացած ատենը՝ — պառկած տեղէն բանալու համար այդ խորհրդափակ մուտքը։ Մեծկակ պաշար մը ունէր անուշեղէնի. ունէր նաեւ պատուհանէն կախուած քանի մը վանդակ թռչուն, որոնք ազատ արձակեց ետքի տարիներուն։ Իսկ գետինն՝ անհամար ձեռագիր ու տպեալ կտորներ, որ քիչ մը կարգի դրուեցան մահուընէն ետքը, և որոց ամէնէն աննշանին արգիլուած էր դպչիլ իր կենդանութեան ատեն։ Այդ խշտեակին վրայէն լսած ենք շատ անգամ՝ կատակ թեթեւ ու անհարթ խօսքերու հետ՝ ներշնչական գեղեցիկ խօսքեր ալ, որ իր նուազուոր արտասանութեամբը կառնէին քնարական ձեւ։

Քսան տարի այդ խցիկներուն մէջ ճգնեց Պատուելին՝ ռամիկ պանդուխտներու դրացնութեամբ, ու հետզհետէ ընկճուած համակերպութեամբ։ Չէ՛ր ընդուներ հոն շատ մարդ։ Իր սակաւաթիւ աշակերտներէն մէկ քանին ու քանի մըն ալ հին բարեկամներ կրնային մտնել հոն. դուրսի դրանը համար ալ շինել տուած էր անլոյծ կղպանք մը յատուկ։ Հո՛ն

էին նաև իր լուսանկարի գործիքը. հո՞ն էր ի՞նչ իր լուացարարը, ի՞նչ իր խոհակերը, ի՞նչ իր ծառան, ի՞նչ իր տէրը: Շատ կը կարդար մանաւանդ Իտալերէն ու Ֆրանսերէն մատենագրութիւնէն. իր սիրած լրագիրներն էին Թանն և Ժուռնալ տէ Տէպան: Վերջերը սէր առած էր Թուրքերէնի ալ, և Ահմէտ Վէֆիք փաշայի Տելեմաքը բաղդատելով Հայերէնին հետ՝ կուսումնասիրէր:

Ունէր նաև հաղուադէպ բնաւորութիւն մը. իր առանձնական խօսակցութեանց մէջ՝ ինչպէս նաև իր գրուածներէն շատին մէջ՝ քիչ անգամ իր շրջավայրին տարածէն վեր կը հողանէր իր կարողութիւնը, քիչ անգամ կը նշմարէիր իր բուն լայնութիւնն ու խորութիւնը, մանաւանդ պատմականի ու բանասիրականի մասին. ատոր համար՝ արժանիքով իրմէ շատ վա՛ր այլ գլուխ – ցցուող (poseur) գրագէտներու չա՛փ ալ չպատուուեցաւ իր ժամանակակիցներէն. իրար քարընդոտնելով իրար բամբասելով և յաչաղելով յառաջ անցնողներուն մէջէն՝ ո՛ր անծանօթ մատին հարումով՝ ետ մնացողներուն դասն էր ինք, ուր ապրիլը դժուար և ուրկէ շատ դիւրին էր, սակայն, արձակել ճշմարտութեան պողպատի ձայնը. աւելի՛ այդ ձայնէն քան իր անձէն էր՝ որ կը խորշէին զինքը մարդատեաց անուանողներն ալ: Այդ յետամնացու-

թեան մէջ անգամ՝ կը ձգտէր միշտ իմացական կերտուածին առաջակողմը, ուր կը տեսնէր շատ անարժաններ. որով կարգ մը իրերու և անձերու հետ՝ դառնապէ՛ս տարածեց իր արհամարհանքն ա՛յնպիսի իրերու և անձերու վրայ ալ, որոնք արհամարհելն՝ արհամարհե՛լ է աշխարհ, որչափ ալ խորունկ համոզումէ մը յառաջ եկած ըլլայ այդ. և մարդատեացն հուսկ ապա ատելի՛ եղաւ մարդերուն։ Ու հասարակ ա՛ս եղած է երևելի բանաքննողներու և ամուրիներու վարքը։

Մինչև 1890՝ իր տարիքին հետ աճեցաւ հետզհետէ այս փոխադարձ արհամարհութիւնը. իր աշակերտներն ալ՝ առած իրենց կարևոր բաժինները՝ Թողուցին զինքը, այնպէս որ Պատուելին իր կարած և լուացած ցնցոտիներուն մէջ դատապարտուեցաւ անցունել չղջիկանի կեանք մը։

Յաճախ՝ անկարծ տեղուանք՝ դէմդ կելնէր իր գորշ գրգլեակովը, բեռնաւորուած տետրերին պաշարներով. ձեռքը պնակ մը ծածկոցով կամ տոպրակ մը և կամ ծրար մը բռնած՝ աջ ուսը վեր ցցած, վայրահակ՝ կարծես հին կարաւանէ մը մոլորած ստուեր մը, որ իր շփոթ քայլերուն իսկ մէջ դէպ ի յառաջ՝ կուզէ անգամ մըն ալ ետ նայիլ, այլ կամըչնա՞յ գլուխը դարձունելու.... Այս ոգին կը տիրէ նաև իր վերջին գրուածներուն մէջ։

Այդ վերջալուսական անկեցութեան ատեն՝ եղած էր խառնակրօն քանքարաթագոյց մը. եթէ բան մը հարցուէր իրեն՝ շատ քիչ անգամ կը պատասխանէր ուղղակի կամ լրջօրէն. և գրեթէ միշտ խօսքն ուրիշ նիւթի՝ ուտելիքի, ապրանքի, օրուան լուրի վրայ դարձունելով կը փախցընէր. Արդէն իր բովանդակ կեանքին մէջ շատ բան դժուարութեամբ ուսած ըլլալով՝ կուզէր ուսուցանել դժուարութեամբ. Իր ծերութեանն ու դեգութեան հետ՝ աճած ծառացած էին իր կարի՛ երկմտութիւնները, կասկածները, մարդկային ըսուած հաւատքին բացակայութիւնը, կիր խնայողութիւն մը և աշխատութիւն ցանցիր ու տարտամ. որով չէ՛ կրցած ալ իր գործերուն գէթ վերջին կնիք մը. Գրեթէ բնաւ հաւատք չունէր բժիշկներու շատին վրայ, այլ պարզ և բնական կենցաղով կը ծերատածէր ինքզինքը՝ բուսական դեղերու և գլխաւորապէս քափուրի տալով մեծ կարեւորութիւն. Հին խօսքերու և հին լեզուներու հետ՝ շատ կը սիրէր հին գինին հին գիրքերն ու հին տուները. Կըսուի նաև թէ վերջերը թելադրութեամբ մը յարած էր Տարուինականութեան, և ա՛լ սկսած էր իրեն համար՝ յօգնած լարուած պատարուն միտքի մը այն անդուլ խարբալումը սեւեռել նոր գաղափարի մը վրայ. ուրկէ զառամ հոգին՝

մէկ կողմէն հանդիսատես իր լայն անցեալին
միւս կողմէն որորուն համառօտ գալիքի մը
առջեւ՝ կարծեալ ու տարտամ յոյսերով, այդ
համառօտութիւնն երկարելու իր գիտուն ճի-
գերովը, ինչպէս ներհակներովը, տրտակար-.
գութիւններովը՝ ա՛լ անհասկնալի կը դառնայ
իր ծանօթներուն անգամ։

Ա՛լ ցնդեր է կըսէին, ինչպէս մահուընէն
առաջ տարէց բղեաշխ բժիշկ մըն ալ մեզի
յայտնեց՝ թէ Գուէտը Բարիզէն դարձէն քիչ
առաջ կէս-յիմար ապրեցաւ. միայն՝ կըսեն՝ իր
երեկոյեան պտոյտներուն ատեն կըզգենուր իր
հին զուարթութիւնը։ Շատ կախորժէր Քուզ-
կունճուքի ողիմպական հրուանդանէն ու Գիզ-
մարքի խմած պիւայէն։ «Մէկ վայրկեան մը
աւելի ապրելու համար՝ ամբո՛ղջ ունեցածս
կուտամ, կը գոչէ եղեր. պիտի ապրիմ մինչեւ
91 տարու, իմ ծնած տարիս 91 տարեկան
մեծ անձնաւորութիւն մը մեռած է, ես ալ
պիտի ապրիմ մինչեւ 91 տարիս.» եւ իր բժիշկ
աշակերտին դառնալով՝ «Անկէ անդին նայէ՛
կըրնա՞ս ապրեցունել զիս»։

Բայց այդ 91էն շատ առաջ հասաւ 1891ը։
Սիրտի հին հիւանդութիւն մը շատոնց բոյն
դրած էր այդ կորովի մարմինին մէջ. հոկ-
տեմբեր ամսուն՝ իր սովորականին հակառակ՝
քանի մը օր իրարու վրայ պտոյտի չէր ելած,
իր նախնի աշակերտներէն մէկ քանին մատ-

տանջութեան մէջ իյնալով՝ կերթան առ կառա-նեն սենեակին դուռը. կը բացուի, և կը տես-նեն այդ խուցին հին շահապետը՝ պառկած իր կարծր անկողինին վրայ, ուռեցած էին ոտուըները, տագնապը բաւական ծանր էր։ Կերթան Տօքթ. Ստեփան փաշան կը բերեն, որ կը հրամայէ շուտով փոխել սենեակը։ Կը փոխադրեն զինքն իբր ակամայ՝ մօտաւոր թաղ մը մաքրիկ սենեակ մը. քովն ալ կը դնեն հսկող կին մը։ Ըստ վկայութեան քանի մը ծանօթներու՝ վեց ամիս կը խնամուի հոն հոգածութեամբ մանաւանդ Մանուկ և Նշան Տ. Ցակոբեան-Սեբաստեան եղբայրներուն, որոնք կը սիրէր զաւակի պէս և որոնք ալ զինքը սիրեր են հօր պէս, ու կերակրեր են անուշեղէններով այդ դառնացած մարդը։ Այդ վեցամսեայ հիւանդութեան միջոցին՝ շատ քիչ անգամ կարեւորութիւն տուեր է բժըշ-կական խորհուրդներու. ցուցեր է յոյսեր վե-րակենդանանալու և այդ հաւատքով ալ քիչ մը շատկէկ փախուցեր է զինին, և խաղալիկ եղեր է Նոյեան այլակերպութեանց։ Այս և նման պարագաներ գործիս ընթացքին մէջ չխնայեցինք հրապարակել՝ որպէս զի ընթեր-ցողները կարենան ամէնակողմանի գաղափար մը տանել իր վրայ, որուն նկարագիրն՝ սկիզ-բէն վախճանն՝ անկարելի էր բովանդակել մեզի մանրամասնաբար. մե՛նք ալ ունինք մեր ցաւերն ու պակասները։

Մահուընէն երեք օր առաջ՝ վերջին տխուր վճիռն արձակեր է Տօքթ. Թորգոմեան, ու- յնք իր կամքովը Հաղորդուելով ալ՝ պատ- րաստուեր է մեռնելու ոչ այնչափ վրդովուած։ Մինչեւ վերջին օրերը ձեռքէ չէ ձգած Շնոր- հալիին Ընդհանրականը, զոր պաշտած էր տղ- այ հասակէն. հուսկ օրին ուզեր է տեսնել իր բազմակայ ծանօթներէն երկուքը, որոնցմէ մին հիւանդ էր նոյն միջոցին։ Մեռնելէն քա- նի մը ժամ առաջ ճակատը շփելով՝ ըսեր է իր կրտսեր աշակերտին իր ունայնութի՛ւն ու- նայնութեանցը – «Հո՛ս, հո՛ս մարգարիտի պէս շարուած են գրուելիք և ըսուելիք ա՛յն- չափ բաներ, որ ո՛չ ըսուած են և ո՛չ ալ պիտի ըսուին. ելնեմ նէ պիտի սրբագրեմ բոլոր գրածներս»։ Երանի՜ թէ նորէն փո- խադրէին իր սենեակը՝ մաքուր վիճակի փո- խարկելով զայն. գէթ քիչ մը աւելի կապրէր։

Վերջին գիշերը՝ մինչեւ ժամը 1 հանդարտ հակումէ մը ետեւ՝ աւանդուեր է ձիւնալից օր մը ձիւնփառ հասակի մը մէջ։ Իր աշակերտ- ներն առաքինաբար ու եռանդով հրապարա- կեցին իր մահուան բօթն Սկիւտարի մէջ, և պատրաստեցին բաւական վայելուչ յուղարկ մը, որուն ներկայ էին իր ծերութեան բարե- կամները, եկեղեցականներու մեծ մասը, ե- րիտասարդ աշակերտներն ու Ճեմարանի շրջա- նէն մնացած գիտուն քահանայ մը և գիտուն բժիշկ մը փաշայ։

Այսպէս՝ քառորդ դար մը Բարիզը սերտող Սկիւտարցին՝ մինչեւ վերջը չզատուեցաւ իր համեստ քաղաքէն. իր կեանքին վաստակաբեկ երեկոյին՝ հո՛ն, Սկիւտարի մէջ, կարծես կը հասկընար իր բուն տունին մէջ երեկոյանալու գինն և քաղցրութիւնը։ Սկիւտարի համար մոռցաւ չա՛տ բան, հոն ձգեց չա՛տ բան ու խօսք, ինչպէս ձգեց հոն իր 2000ի չափ մատեաններն ու հարիւր յիսուն ոսկիի չափ դրամ։ (1)

Հռովմայեցիի՛ մը չեշտով «Սկիւտարցի՛ եմ» կը պոռար յաճախ իր նեղ օրերուն. Սկիւտարի՛ մէջ ապրեցաւ իմաստասէրի փառածածուկ կեանքն անյարդար, Սկիւտա՛րն էր իր Պարթենոնն և Սկիւտա՛րն եղաւ իր հո՛ղ Պանթէոնը։



(1) Այդ դրամը ուսանողք հանգանակած և իրեն տուած էին՝ հրատարակելու համար իր քանի մը ձեռագիրները։ Եւ ինք իր կարօտութեանց մէջ անգամ չէր խորած զայն. մահուընէն ետք՝ գտեր են այդ դրամը իր սենեակին անկիւնը՝ դրուած քրչեայ ծրարի մը մէջ և կապուած աթոռակի մը տակին... Այնչա՛փ երեսը տուին այդ հանգանակութեան պարագան որ . . . . . .

# ՎԵՐՋԱԲԱՆ

Ժամանակակից բանիբուն ծերերու և գըրականութեան անգիր պատմութեան՝ այս աւձեան ու ի հարկէ հատակոտոր ասուերներուն աւելի խոր և հանրական գիծերն ալ՝ կարծէ՛ որ կցենք հոս իբրև վերջաբան։

Բացի վարժապետական ու բանասիրական իր կեանքէն ու արարքէն՝ Միսաքեան Թուրքահայ գրագէտներուն գրեթէ միա՛կն է՝ որ կըրցած է, դարուն երեք քառորդին մէջ, ընծորդել իր նեղ սահմանումէն իսկ՝ իր արտակարգ անձին վրայ՝ հին ու նոր հայու նկարագիրն ու գաղափարները, անշո՛ւշտ ոչ սակաւ աններդաշնակութեամբ մը, զոր հարկաւոր կընէ իրերու հանրական ուղղութիւնը, անշուշտ դարձեալ ոչ սակաւ հոգեկան և մարմնական ճիգերով և զղջական այլայլութեամբք, զոր չենք կըրնար պատկերացունել ճշդիւ՝ վասն զի զուրկ ենք ալեւոր հոգիին մը խորերը մտնելու կարողութենէն, զո՛ւրկ նաև աւելի ներքին ու անընդհատ ծանօթութիւններէ, զորս ծածկելու կողմէն բաւական ճարտա՛ր ալ էր ինք։

Որչափ կրցած ենք կշռադատել՝ իր հան-րական նկարագիրը և Ի՛ր իսկ գիտակից անձնատուութեամբը՝ կը գտնենք զինքն իբրև բանաստեղծ-փիլիսոփայ մը՝ իր ապրած շրջա-վայրերուն և ժամանակներուն ներած չափով։ Իբրև բանաստեղծ՝ չէ՛ր պակսեր իրեն եռանդ ու տաղանդ, բայց կը պակսէր տիրապէս համ-ճա՛ր ըսուած սուր հոգեկանութիւնը. կամ թէ՝ ըսենք՝ իր գրաբարեան հին կաղապարին ու յանգամոլիկ ձևերուն մէջ՝ կընկրկէր ու կը խափանուէր հոգիի այդ աղամանդեայ հանգամանքն հատու, որ ընդհանրապէս հաշտ չէ՛ արուեստի հետ։ Տաղաչափական արուես-տին մէջ՝ քիչերը կրնան համեմատուիլ իր հետ 19րդ դարու նախնեաց լեզուով գրող քերթողներէն. իր ամէնէն հարևանցիկ տա-ղերն իսկ ունի՛ն միշտ՝ լեզուի կողմէն՝ առ-նական ներդաշնակութիւն մը և՝ ձևի կող-մէն՝ Ծիոդդոյի (O)[1]ին արագ ու սահուն ոլորքը։

Ինք Հ. Արսէն Բագրատունին ու Հ. Եղուարդ Հիւրմիւզ անգամ՝ ետ կը մնան իր-մէն ճկունութեան յանգի ճոխութեան ու մերթ իմաստի լիութեանց մասերուն մէջ։

---

(1) Ծիոդդոյ մեծանուն նկարիչ իտալացի՝ որ ինքնեկ ճշգրտութեան վայրկեանի մը՝ մէ՛կ գիծով յանկարծ գը-ծած էր կլորակ մը յաւիտենապէս ճշգաբոլոր քան կար-կինով քաշուածը, որ և առիթ տուաւ «Ծիոդդոյի (O)ին պէս կլոր» առածին։

Ունի՛ ոտանաւորներ, որ Հ. Արսէնեան ուժգնութիւնն և Հ. Եդուարդեան փափուկ ներդաշնակութիւնը միացած կը ներկայացը-նեն բնական ծանրութեամբ, մանաւանդ ա-նոնք որ Ֆրանսայի մէջ գրուած են. ու ա-նո՛նց մէջ է՝ որ կը տիրէ զուարթ պերճու-թիւն մը, ինչպէս դարձեալ Ֆրանսայի ար-ձակ գրուածներուն մէ՛ջ է՝ որ կը ցոլայ յս-տակ և ճարտարախօս բարձրութիւն մը։

Իսկ իբրև փիլիսոփայ՝ աւելի քան կար-ծիքով կրնանք ըսել որ ինք, իր քանի մը արձակներուն մէջ շողացուցած տրա՛մաբա-նական ու իմաստասիրական նրբութիւններէն զատ, չունէր դրական ու տեսական յատուկ փիլիսոփայութիւն մը։ Իր փիլիսոփայութիւնն աւելի գործնական՝ այսինքն իր վարած ա-զատ ու անյարդար կեանքին մէջն էր, ուր ջնականէ բաւական տարբեր թեթև անհո-գութիւն և պատշաճից անտեսութիւն մը կե-րևէր՝ իր ամուրիական անմաքրութեամբն ու արտակարգութեամբ։ Մտերիմ խօսակ-ցութեանը մէջ ալ՝ յաճախ կը շողացունէր այդ երանելի փիլիսոփայութեան կծու կա-տակներն ու հնարաբանութիւնները, որ կը ցոլացունէին հին Պոլսահայերուն հանճարը՝ մա-տենագէտ ու Ֆրանսիկ փայլով մը օծուած։ Իր արձակներուն մէջ ևս շատ տեղ կերևէին այդ դառն իմաստասիրութեան պտուղ հետ-

քը՝ խառնուած յաճախ անձնազոհութեամբ, այլ ո՛չ մնապարծութեամբ, ընկճող տրամաբանութեամբ և հաստահարող ճարտարխօսութեամբ։ Իրեն շատ մօտ ապրողներն ու իր հինաւուրց վարպետութեանց ծանծաղուտը խորագիտօրէն նշմարողները՝ չէին տեսներ ալ իր վրայ՝ ոչ իր ապրած շրջավայրերուն խորե՛րը խորութիւն խելքի, ո՛չ իր հիւսած արձակներուն և ոտանաւորներուն տեսական բարձունքն ալ՝ բարձրութիւն միտքի. Թերևս հա՛րկ ալ էր այսպէս ըլլալ. արտակարգ մարդոց մեծութիւնը կամ բարձրութիւնն իբրեւ միշտ աննշմարելի եղած է անոնց, որ կապրին շատ մօտերը։ Այլ կայի՛ն համակիր ու միամիտ թափանցողներ ալ՝ թէ ինք մասամբ մը առած էր, չգիտենք ե՛րբը, հոգեբանական դժուարիմաց պատահումով մը կամ ածանցաբար ընթերցումի միջոցով՝ այն ներշնչական յայտյանդիմանութիւնը (intuition), որ բընութիւնը պահած է գինքը սիրող ամէն մարդոց և որուն օժտուած էր իրե՛ն ալ միտքին լարուածը։ Իր Քավուռը կարդացողները կըրնան կռահել զայդ։

Բայց այդ լարուածը՝ ներգործութեամբ իր այլայլիկ բնաւորութեան ու սիրայած թըռիչներուն՝ չէ՛ր նաև պէտք եղածին չափ հարուստ և հաստատ, այլ ստէպ ենթակայ էր բանաստեղծական անկայ թեթեւութեան մը։

Հոգեբանական այդ ազնիւ սեւեռումը, որուն վրայ մահացուներէն շատ քիչերուն տրուած է անխախտ և անաղտ մնալ, յաճախ տեղի կուտար իր զուարթ բնաւորութեան լծորդ դիցաբանական պատրալից նախապաշարումի մը և վարժապետական հին կողմնահայեցութեանց, որ զոյգ չէին երթար լո՛ւրջ ազնուակա՛ն և կորովի՛ գաղափարներու։ Անոր համար իր սկզբունքն և գաղափարները, ընտի՛ր տեսակի մասին ու առա՛տ քանակով, չէին խարսխած ու անայլայլ. անոր համար մի՛շտ իր ետեւէն երթալը կը բերէր անփորձներուն ծանր տոյժ մը. անոր համար ալ վերջերը չկրցաւ դիմանալ, և յանձնառու եղաւ այնպիսի պզտիկութեանց, զոր կը դատապարտէր կամ դատապարտել կը ցուցընէր առաջ. անոր համար դարձեալ՝ իր Ննջուածներն ալ աւելի՛ անձնական վրէժի քան գաղափարի յառաջդիմութեան թելադրութեամբը կըլլային, և նետուողները կը զոհուէին մամնական նկատումներու. անոր համար նաեւ չէ՛ կրցած գլուխ կենալ ո՛չ մէկ մեծ գործի և չէ՛ ձգած գրեթէ ո՛չ մէկ գլուխ գործոց։ Իր ամուրիութիւնն և անոր հետեւորդ առանձնութիւններն ալ՝ կրնանք ասոնց գլխաւոր պատճառներն համարել։

Բարքի կողմէ ալ՝ կցէր պահպանողականութիւն մը դը՛րապէս ու թեթեւ ազատու-

թիւն մը տե՛սապէս՝ կը յօրինէին զինքն (որպէս զի այսպէս ըսենք) հակառակ անձնեւութիւն մը. և իր անուրանալի բուն արժանիքն ալ տղա՛յ նախանձոտութեամբ և, ըսե՛նք, սո՛ւր խստութեամբ մը կանհամէր։ Նուազեա՛լ բանաստեղծութեամբ թո՛յլ զուարճաբանութեամբ և անտեղի՛ օրինասիրութեամբ չաղուռուած ծերութիւն մը, որ հսկայի՜ ճիգերով կաշխատէր տակաւին խաղալ երիտասարդութեան խաղերը, չատերուն խրտուցիչ ըրաւ իր սքողեալ վաղեմի ինքնութիւնն և չատերէն ալ համարուեցաւ անհպատակ ու անիմաստ ապրող մը. որով կարողներէն անօգնական՝ անաւարտ ձգեց գրեթէ իր ամէն ձեռագիրները, ու չկրցաւ իմաստութեամբ աւարտել իմաստութեա՛մբ մը ապրած կեանքը։ Վկա՛յ են ասոր իր վերջին աշակերտներուն և բարեկամներուն աւանդած ներհակ ու անհաշտ գաղափարները, ու իր ձգած բազմաթիւ ձեռագիրներուն անյար կցկտուր կոյտը, որոց մէջէն արիադնեան թելո՛վ ալ չես կըրնար ելնել։ Զենք կըրնար ճշգրտիւ դատել թէ ո՛վ էր այդ ձախողակներուն պատճառը. ի՞նք թէ զինքն այնպէս լքուն վերջալոյսի մը մէջ սուզողները։ Սա կըրնանք յայտնել վըստահաբար՝ որ Միսաքեան Պոլիս գալէն ետև ունեցաւ մեծ անկում մը, կամ բնական օրէնքով կամ իր չուրջի հնարագործութեանց պատճառով։

Գիտակից Թէպէտև իր հին կարովլին համբաւին և հմտութեանց՝ լաւ կընէր, սակայն, եթէ յարատեւելով արուեստակցական ազնըւութեան մը մէջ՝ անխնայ չդատափետէր իրմէն անժառանգները. քիչ մը հաշտ երթար իր նմաններուն հետ, մէկդի դնէր քէնն ու ոխը տղայական և քիչ մըն ալ աննախանձ ու խնայող ակիզըներով վարուէր յետնորդներուն և կայր սիրով իրեն հետեւողներուն հետ ։

Ծայրայեղ բարեկամութեան ու ատելութեան մէջ՝ կարծես կապրէին իր ներսը չատ տեսակ մարդիկ. երկխուղած մարդը, մերթ համդարտ և յաճախ անհամդարտ ու ամեհի մարդը. քիչով լուրջ մարդը չատով կատակաբան մարդուն դէմ և տրամաբանող մարդն հաւասարապէս երեւակայողին քովը ։ Այսպէս՝ գրեթէ իր բովանդակ կատարելութեան մէջ՝ ապրած է խիզա՛խ երիտասարդութեան մը ներհակ գնացքովը և յեղյեղուկ ձեռնարկներով, մերթ բաւական ալ հեռու այն լուրջ կեդրոնէն, որ խարիսխն է ծանր ու ակադեմական նկարագիրներու ։

Այլ ըսե՛նք վերջին բառն ալ ։ Երեք չորս ակադեմական ունէինք, ի՛նք ալ մէկն էր անոնցմէ. թերեւս չատ անաչառութեամբ դատեցինք զինքն՝ իր իսկ անաչառ քննադատութեան համեմատ. մեր ծանօթութեանց տեսակէտէն ա՛յսչափ կըրցանք կշռել ։

Մնացածը՝ թող ըսեն ու կշռեն անո՛նք, որ կը ճանչնային զինքն ուրիշ շատ կողմերով ալ և որ ունին աւելի լայն սիրտ մը և լայն պարագաներ։



# ՏՊԱԳՐԱԿԱՆ

## ԿԱՐԵՒՈՐ

| էջ | տող | ՎՐԻՊԱԿՔ | ՈՒՂՂԵԱԼՔ |
|---|---|---|---|
| 8, | 11, | Գէորգ Միւհէնտիսեան | Յովհաննէս Միւհէնտիսեան |
| 11, | 27, | պարմանք | պարծանք |
| 29, | 10, | բարձրաբանչ | բարձրագանչ |
| 29, | 15, | խաչաբաղխաւ | խաչաբաշխաւ |
| 34, | 6, | տուած էին | տուած էր |
| 37, | 8, | փետեւետեալ | փերեւետեալ |
| 42, | 8, | կրնանք | կըրնանք |
| 46, | 8, | Պուէտէն | Պուէտին |
| 48, | 14, | ուղեկիցներուն, | ուղեկիցներովը, |
| 51, | 11, | ի բերան ի բերան, | բերան ի բերան |
| 51, | 24, | ճետը | ճետըն |
| 61, | 5, | պատաւորին | պատարանին |
| 69, | 13, | ի լռութիւն | ի լրութիւն |
| 69, | 21, | զմտաւ | ըզմըտաւ |
| 70, | 1, | բժիշկին | բժշկին |
| 71, | 4, | ձկուենան խորովեցիմք | ըզձըկուենս խորովեցեմք |
| 71, | 19, | ի՛ւ | իւր |
| 74, | 3, | յարեգզերի | յարեգչերէ |
| 95, | 2, | պէս. | պէս՝ |



